Ինչ ցնորք էր քեզ թվում դեռ երեկ՝
Տվեց լենինյան հաղթանակը քեզ:
Ունեիր երկիր մի բազմակեղեք՝
Դարձար դու քեզ տեր:–

Ե. Չարենց

*Հավերժ փա՜ռք ձեզ,*

*Նոյեմբերյան հեղափոխության*

*մարտիրոսնե՛ր,*

*լենինյան վսեմ գաղափարների*

*անձնուրաց սերմնացաններ:*

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**










# ԱՅԳ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ

## I

Հազար ինը հարյուր քսան թվականի նոյեմբերի 29-ին, անդնդի եզրին կռթնած Հայաստանի վրա ապատաբեր Հոկտեմբերի արևը ճառագեց: Ապստամբած աշխատավորությունն իր շահերի միակ պաշտպան Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ու Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնությամբ՝ բուրժուական նորաթուխ իշխանության անարգ լուծը թոթափեց, երկրում սովետական կարգեր հաստատեց: Դա հայ ժողովրդի սոցիալական ազատագրման և ազգային վերածնության ըղձալի օրն էր, դարերով, անրջած այն հուսաբեր օրը, երբ, իր ճակատից երկթև ճորտության կնիքը սրբելով, նա ազատագրվող աշխատանքի, սոցիալիստական հանրակարգի ու սովետական պետության հունը բռնեց:

Նոր ու բերկրալի դարագլուխ բացվեց մեր հայրենիքի համար:

Հիրավի, մարդկային պատմության մշտահոլով երթում անցած հիսուն տարիները սոսկ մի ակնթարթ են, որոնք, սակայն, լի են եղել հասարակական-քաղաքական մեծ իրադարձություններով. իմպերիալիզմի հոգեվարքի սաստկացմամբ, գաղութային սիստեմի փլուզմամբ, նորաստեղծ սոցիալիստական աշխարհի հզորացմամբ և ծաղկմամբ, կեղեքումից ձերբազերծված սովետական սոցիալիստական ազգերի ստեղծարար խոյանքների բազմապատկմամբ, ֆաշիզմի ջախջախման մարտերում ցուցաբերված կանգվածային հերոսագործություններով, սոցիալիստական լագերի վերընթացով, կոմունիստական հասարակության կերտման նոր բնագծերի նվաճմամբ, ատոմի «գաղտնիքների» ընկալմամբ, տեխնիկական հեղափոխությամբ և տիեզերքի նվաճման մարզում ձեռք բերած վիթխարի հաջողություններով և այլն:

Մարդկության այս աշխարհասասան երթում Հայաստանը մասնակից եղավ, որովհետև, անսալով Հայկոմկուսի բախտորոշ կոչին, մեծ Հոկտեմբերի ուղին ընտրեց: Արձագանքելով կեղեքվող մարդկությանն ազատություն բերող լենինյան կենսաբեր կանչին, տակավին նոյեմբերյան հեղաբեկումից առաջ, կոմունիստ Վահան Տերյանն ազդարարում էր իր ժողովրդին, թե *համբերելու ժամն անցել է արդեն:*

*Այս դառն օրերի մթնում մահաբեր,*
*Արնոտ խնջույքի այս սև ընդանում*
*Դավաճան է նա, ով լռում է դեռ,*
*Մատնիչ է, ով իր սուրը չի հանում...*

Հարազատ պոետի այս կանչով հայ ժողովուրդը պատմության փրկարար ընթացքի մարտակոչին էր ընդառաջում, կանչ, որը, տոգորված լինելով սոցիալիզմի գալստյան հուզումնալի պաթոսով, այլևս շեփորելու էր հայրենի երկրի կեղեքվածներին, ասելով.

*Արթնացիր, երկրի դարավոր մշակ,*
*Վառեցեք, ջահեր, փողեր, հնչեցեք,*
*Շողա, նոր կյանքի արյունավառ ծեգ,*
*Ծածանվիր ազատ, կարմիր դրոշակ...*

Եվ այն ծածանվեց կամոք կոմունիստների, ըմբոստ բանվորների ու տնանկ գեղջուկների հաղթական գոյամարտով: Այդ օրից նոյեմբերը դարձավ հայոց պատմության այն լուսավառ էջը, որը կոչված է գալիք սերունդներին մեկնելու հնամյա և արարչագործ մեր ժողովրդի իրական փրկության, նրա վերջնական հարության խորիմաստ գաղտնիքը. այն բախտորոշ ճշմարտությունը, որ, ընթանալով Հայհեղկոմի դրոշի ներքո, Սովետական Հայաստանը մեկընդմիշտ ազատագրվեց իմպերիալիզմի գաղութարարներից և նրանց կամակատար դաշնակցական խմբապետներից:

Պատմական այդ ակտով սկզբնավորվեց հայ ժողովրդի անկաշկանդ կենսագործունեության նոր դարագլուխը:

Չենք տարակուսում, որ հայ ժողովրդի սովետական այգաբացի անաչառ պատմագիրը, գոհունակությամբ դրվատելով սոցիալիստական հասարակարգի իրական առավելությունները, հատկապես կիմաստավորի և այն իրողությունը, որ սովետների հաղթանակը Հայաստանում օրինաչափ արգասիք է տակավին դարասկզբից լենինյան կուրսով ընթացող Հայաստանի բոլշևիկների տևական մաքառումների ու բազմաթիվ զոհերի:

Կանգնելով ՌՍԴԲԿ առաջավոր դիրքերում, հայ ազգի ամենահեռատես և խորիմաց զավակները հանձինս կոմունիստների՝ հարելով լենինյան հոսանքին, կարողացան ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրման ճիշտ ելքը գտնել: Ձուլվելով ցարական ինքնակալության դեմ մարտնչող ռուսական հեղափոխության բոլշևիկյան գնդերին, նրանք բարձր պահեցին ճնշվածներին ազատություն բերող լենինյան դրոշը: Գործելով այդպես, Հայաստանի լենինյանները նոյեմբերյան պատմական հաղթանակը կոփեցին:

Դարավոր կեղեքումից արյունաքամ եղած հայ ժողովրդի վերածնության միակ ելքը համարելով ազգերի փաստական հավասարության, նրանց կատարյալ ինքնորոշման, ինքնիշխանության ու եղբայրության լենինյան ծրագիրը, Հայաստանի կոմունիստները նոյեմբերյան հեղափոխությամբ ապացուցեցին.



որ լոկ սովետական կարգերի շնորհիվ երկրում հաստատվեց ազատագրված աշխատանքի թագավորություն, ժողովուրդների ինտերնացիոնալ միասնություն ու աշխատավորության կամքն արտահայտող բանվորա-գյուղացիական իշխանություն:

Գալիք ժամանակների խորիմաց պատմագետն իր ստվարածավալ հատորներում անպայման կհիշատակի այն էական եղելությունը, որ, սոցիալիստական հեղափոխության կամ նոյեմբերյան այգաբացի շնորհիվ և սոցիալիստական արտադրահարաբերությունների վերափոխիչ մթնոլորտում թրծվելով, երեկվա բուրժուական հայ ազգը վերաճեց սոցիալիստական ազգի, որը կարողացավ ստեղծել նոր պետություն, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա, պլանային սկզբունքով վարվող սոցիալիստական տնտեսություն և շատ այլ հասումներ կենսագործունեության բոլոր մարզերում:

Անշուշտ, նոյեմբերյան հեղափոխության պատմաբանը չի վլանա մեր հետնորդներին բացատրելու, թե ինչու հավատարիմ լենինյան, Հայաստանի հեղկոմի նախագահ Սարգիս Կասյանը դաշնակներին կնքեց որպես *«քաղաքական ծծկերներ»*, որոնք նույնիսկ կործանման օրերին, հավատարիմ իրենց ծապլվարական ու հակահեղափոխական խառնվածքին, շարունակում էին հոխորտալ, թե *«տաճիկը չէ մեր թշնամին, այլ ռուսը»:* Կործանարար այս մտածելակերպի ու վարքագծի տրամաբանական ավարտը Ալեքսանդրապոլի տրխրահռչակ պայմանագիրը հանդիսացավ: Անդրադառնալով մեր ժողովրդի նվաստացման և ազգուրացության այդ գողգոթային, մեր պատմաբանը, հարկավ, կհիշատակի և այն, որ նոյեմբերյան լուսաբացով մեր երկնակամարից չքացան ոչ միայն այդ «քաղաքական ծծկերները» կամ, ինչպես հանճարեղ Չարենցը կասեր՝ «արշինի երկրպագուները», այլև հօդս ցնդեց ժողովրդին այնքան ցավեր պատճառած քաղաքական արկածախնդրության՝ հայ փանջունիականության ողորմելի մտայնությունը:

Ի դեպ, այս առնչությամբ հարկ է նկատել հայ ժողովրդի պատմական գոյավիճակի յուրահատկություններից մեկը՝ պետության հարատև չգոյությունը, որն իր բացասական դրոշմն էր դրել նրա ազգային նկարագրի վրա և զգալիորեն թուլացրել ներքին ու արտաքին կեղեքիչներին դիմակայելու նրա կարողությունը: Մի իրողություն, որը ցցուն դրսևորվեց դաշնակցության դիկտատուրայի օրերին, երբ Երևանի քաղաքային դուման վճռեց քաղաքը հանձնել թուրքական նվաճողների ողորմածությանը:

Լենինի հռչակած ազգերի ինքնորոշման իրավունքը, թուրքահայաստանի ինքնորոշման վերաբերյալ Սովետական Ռուսաստանի ժողկոմխորհի դեկրետը, Անդրկովկասի ազգային պետությունների սուվերենության ճանաչումը Ռուսաստանի կողմից և, վերջապես, Լեգրանի միսիայի վարած բանակցությունները հօգուտ հայ ժողովրդի փրկության (որն այնպես պերճախոս ապացուցում է ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը մեր ամսագրի սույն համարում վետեղված իր արժեքավոր հուշերում), քամահրվեցին ու մերժվեցին Անտանտին հավատարիմ դաշնակցության կողմից:

Հայ ժողովրդի վիճակի ողբերգականությունն այդ տարիներին սաստկացավ և այն բանի իսկությամբ, որ դաշնակ արկածախնդիրները ներտել էին Գրիգոր Նարեկացու լոկ այն էջը, որում հանճարեղ քերթողը հասկանալի պատճառներով հայ ժողովրդի փրկությունը հայցում էր արարչից՝

*Եվ ջնջի՛ր, սրբիր դու մեր դեմքերից արցունքն ողբագին*
*Եվ հեծեծագին հառաչանքները մեր սրտերից հա՛ն:*

Սակայն նրանք երբեք չէին յուրացրել *Մատյան ողբերգության* այն էջը, ուր հեղինակը ճշմարտացի ազդարարել է, թե այս աշխարհի իշխողներն ու կայսրերը՝

*... ճարտար են միմիայն մահվան ու ապանության*
*Արվեստների մեջ, ոչ թե կյանք տալու:*

Պատմության մատերիալիստական կռահման ցոլքն այս, ավա՜ղ, մերժվել է դաշնակցության «քաղաքագետների» կողմից: Բանն այնտեղ հասավ, որ ազգային ջոջերից մեկը լուրջ տոնով խորհուրդ տվեց հայերի փրկությունը աղերսել ճապոնական միկադոյից: Իսկ «փրկչապետ» Ս. Վրացյանը դեռ 1921 թ. գրեց, որ իրենց հարաբերությունները տաճիկների հետ լավ են և հույս ունեն մնալու բարեկամներ: Միակ վտանգն այժմ,— գրում է նա,— հյուսիսից է գալիս:

Այսպես է ընթացել մեր ժողովրդի անագորույն պատմությունը մինչև նոյեմբերյան այգաբացը:

Իսկ ա՞յժմ: Սովետական Հայաստանի աշխատավորության հետ միասին, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները պատշաճ շուքով նշում են լենինյան շնչով վերածնված հայ ժողովրդի ազգային մեծ տոնը:

Կե՞ս դար. ընդամենը հիսուն տարի է անցել այն կենսառաք օրից, երբ մեր ամպածրար լեռներին ալ դրոշը ծածանվեց: Ոդեգրվելով սովետական ազգերի համերաշխ ընտանիքում, Սովետական Հայաստանն արդ, խրոխտ ու հպարտ կեցել է պատմության արագընթաց նավակայմին՝ ազգային պետական իր դրոշով, հիմնով, գերբով և մայրենի լեզվով: Եվ այսօր շարունակվում, անվերջ բարգավաճում է նրա ստեղծարար կյանքը: Հիմա նա հպո՜ր է, հպոր՝ ՍՍՀՄ ազգերի անշահախնդիր բարեկամության անսասանությամբ, լենինյան իր մտածելակերպով ու սովետական ապրելակերպով:

Ահա թե ինչու հիմք ունենք ասելու, որ մեր ժողովրդին պարգևած սովետական կենսալի բարիքներից է և այն, որ սոցիալիստական հեղաբեկման շնորհիվ միայն հիմնովին վերափոխվեց մեր ժողովրդի հասարակական հոգեբանությունը, որն անցյալում մերթ աղարտվել էր խեղճության և քրիստոնեամտության տարրերի առկայությամբ: Մինչդեռ սովետական պետության և ազգային սովետեն իշխանության հաստատմամբ, վինված լենինյան գաղափարաբանությամբ և պրոլետարական ինտերնացիոնալիզմի աշխարհըզգացմամբ, սովետահայը դարձել է անհամեմատ ինքնավստահ ու համարձակ, խոր հայրենասեր ու երախտագետ, քաղաքականապես շրջահայաց և ձեռներեց, այլոց կարողությունների ու արժանիքների կգաստ գնահատող և քաղաքացիական ու ազգային իր արժանավորության նախանձախնդիր: Սոցիալիստական հեղափոխության խոր ներգործության շնորհիվ կատարված սույն բարերար փոփոխությունը մեր ժողովրդի կավակները ցուցահանեցին թե՛ սոցիալիզմի կառուցման և թե մեծ Հայրենականի ծանր տարիներին: Դա ապացուցվում է և այն աշխարհաշեն հասումներով, որոնցով այժմ իր ազգային տոնն է նշանավորում մեր ժողովուրդը:

Ակներև է, որ սովետական տարիներին աշխատավորության հոգևոր կյանքում կատարված որակական մեծ փոփոխությունները, որոնք սովետական կըրթության և լենինյան դաստիարակության արգասիք են, անշուշտ, վճռական դեր խաղացին հանրապետության վերընթացում:



## II

Իսկ ի՞նչ տվեց Հայաստանի աշխատավորությանը նոյեմբերյան հեղափոխությունը:

Նախ, Արևելյան Հայաստանի ժողովուրդը փրկվեց ֆիզիկական կոտորածանումից, նաև հոգևոր այլասերումից: Պատմական այդ թռիչքով նա հնարավորություն ստացավ դառնալու ինքնիշխան և իր նոր, կենսունակ պետականությունն ստեղծելու: Այդպիսով, իրականացավ նրա դարավոր երազը:

Հայաստանի աշխատավորությանը հեղափոխության պարգևած բարիքներից է անշուշտ և այն, որ սովետական կարգերի շնորհիվ հայ ազգն կգալիորեն կրճատեց իր անցնելիք տառապալի ուղին և կարճ ժամանակամիջոցում թևակոխեց պատմության մեջ երբևէ եղած ամենապրոգրեսիվ սոցիալիստական հանրակարգը:

Բացառելով մարդու կեղեքման որևէ ձև, սոցիալիստական հասարակարգը եկավ հավերժացնելու աշխատավորների ջանքերով ստեղծվող հանրային սեփականությունը: Մկրտվելով սոցիալիստական հեղափոխության նորաշեն, կենսատու ավազանում, մեր ժողովուրդն ընդամենը 50 տարում մի քանի հարյուրամյակի տարածություն կտրեց՝ վստահ ընթանալով սովետական եղբայրական ժողովուրդների համագործակցության վերասլաց ընտանիքում:

Արտադրաուժերի բուռն ու հարատև կարգացում, սոցիալիստական արտադրահարաբերությունների բացարձակ տիրապետում և մշտական կատարելագործում, շահագործման վերացում և կոմունիստական գաղափարայնության արմատավորում կյանքի բոլոր ոլորտներում: Սրանք այն վիթխարի հասումներն են, որոնք իրենց հերթին նոր և հուժկու լիցք հաղորդեցին ժողովրդի հոգևոր ու էմոցիոնալ աշխարհին, սովետական քաղաքացուն օժտեցին քաղաքացիական և աշխատանքային կենսալի սխրունակությամբ, յոթմղոնյա քայլերով առաջ մղելով մեր կյանքը:

Եվ ահա, խարսխված արտադրամիջոցների, բոլոր ձեռնարկությունների ու հողի ազգայնացված համակարգին, նորաստեղծ սովետական պետությունն ի դեմս Սովետների բանվորա-գյուղացիական իշխանության՝ երկրում դեմոկրատիկ կարգեր հաստատեց, կարգեր, որոնք պատմության մեջ առաջին անգամ հնարավորություններ ընձեռեցին նրան բուն իսկ ժողովրդական սկզբունքներով տոգորված սահմանադրությամբ, ազգային-պետական դեմոկրատիկ հաստատություններով կառավարելու երկիրն աշխատավորների միջոցով՝ հանուն նրանց բարօրության:

Հանրահայտ է, որ սովետական տարիներին արագընթաց աճել է հանրապետության բնակչությունը: Հիշենք, որ 1920 թվականին Հայաստանն իր արդի տերիտորիայում ուներ ընդամենը 780 հազար, իսկ այս տարվա հունվարի 15-ի տվյալներով՝ 2493,4 հազար մարդ: Նախորդ մարդահամարից մինչև այս տարվա հունվարը Հայաստանի բնակչությունն ավելացել է 730,3 հազար մարդով (41,4 տոկոսով): Երկարակեցությունը դարձել է բնորոշ հատկանիշ հանրապետության աշխատավորության լայն զանգվածների համար: Առավել գեղեցկացել ու պարթևացել է նոր սերունդը:

Անցած հիսուն տարիների ընթացքում էական փոփոխություններ են կատարվել ազգաբնակչության սոցիալ-ժողովրդագրական կառուցվածքում: Երեկվա գեղջկական Հայաստանն այսօր ունի ավելի քան 800 հազար բանվոր-ծառայողներ, որոնցից արդյունաբերության մեջ զբաղված են 262 հազարից ավելի մարդ: Այս բազմահազար սովետական աշխատավորների մտքի ու բազկի

եռանդով են ստեղծվում հարաճուն ազգային եկամուտը, մեր երկրի օրավուր ավելացող նյութական բարիքները:

Այն իրողությունը, որ վերջին տասնամյակում հանրապետության բանվոր-ծառայողների թիվն աճել է 193 տոկոսով, որ դեռ անցյալ տարի Հայաստանն արտադրել է 5408,0 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, որ 1960 թվականի համեմատությամբ երկրի արտադրանքի ընդհանուր ծավալն աճել է 2,37 անգամ, արտադրամիջոցների արտադրությունը՝ 2,44, սպառման առարկաներինը՝ 2,25 անգամ, խոսում է այն մասին, որ Սովետական Հայաստանի իրական առաջընթացը կոմունիստական կուսակցության վարած լենինյան կուրսի արդյունավետության անկապտելի ապացույց է: Բավական է նշել, որ վերջին տասը տարում աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճել է 38, իսկ շինարարության ոլորտում՝ 68 տոկոսով: Այս ոգևորիչ իրական տվյալների հիման վրա են ծաղկել հանրապետության 23 քաղաքները, 28 քաղաքատիպ ավանները և անընդհատ բարգավաճող գյուղերը:

Ինդուստրիալ Հայաստանի կերպարը թերի կլինի, եթե անտեսենք անգնահատելի այն հսկայական եռանդը, որով հանրապետության տեխնիկական ինտելիգենցիան, մերվելով նոր ու կրթված բանվոր-ծառայողների հսկա կոլեկտիվին, մեծագույն բարիքներ է ստեղծում: Հիսուն տարի առաջ Հայաստանում ապրող ու գործող սակավաթիվ ինժեներներին մատով էին ցույց տալիս: Իսկ այժմ հանրապետությունն ունի մոտ 19 հազարից ավելի դիպլոմավոր ինժեներ, որոնք, գործակցելով երեք տասնյակ հազարից ավելի տեխնիկների հետ, ապահովում են սահմանված պլանների կատարումն ու գերակատարումը, առաջ մղում հայրենի տեխնիկան: Մե՜ծ, անչա՜փ մեծ հաջողություն է Հայաստանի համար, որ այժմ հանրապետության մասնագետներից ավելի քան 80 հազարը բարձրագույն կրթություն ունեն:

Սովետական կարգերի մեծագույն հասումներից պետք է համարել կանանց լիակատար ազատագրումը, որի շնորհիվ նրանք, ահա, կես դար է, ինչ անդուլ մասնակցում են կոմունիզմի կառուցման վեհ գործին: Վաղուց ի վեր կանայք իրենց արժանավայել տեղն ունեն կուսակցական, պետական, հասարակական կազմակերպությունների և կուլտուր-տնտեսական բոլոր մարզերում: Անցյալ տարվա հունվարյան տվյալների համաձայն, հանրապետության բանվոր-ծառայողների 41 տոկոսը կանայք են:

Թե որպիսի ստեղծարար սխրանքներով և արիությամբ Հայաստանի կանայք բազմապատկեցին մեր մեծ հայրենիքի փառքն ու համբավը, դա երևաց, հատկապես, ֆաշիզմի դեմ մղվող ծանր կռիվների տարիներին: Բացի այդ, ամբողջ կես դար, ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների իրենց քույրերին համաքայլ Հայաստանի անձնվեր կանայք ընթացել են սոցիալիզմի հաղթության համար մղվող պայքարի բոլոր ճակատամասերում: Մի՞թե նվազ հատկանշական է այն հանգամանքը, որ անցյալ ուսումնական տարում 29.973 ուսուցիչներից 17.446-ը (58,2 տոկոսը) կանայք են: Հանրապետության բժիշկների 63 տոկոսը ևս կանայք են:

Այս մի քանի թվերում սևեռված է լենինյան գաղափարների անվիճելի ճշմարտացիությունը, կոմունիստների կամքի ու գործի ներդաշնակությունը, նոր կյանքն առաջ մղելու նրանց կամեցողության անկասելիությունը:

Ո՞ր մեկը թվենք, երբ կես դարի ընթացքում ազատագրված կանայք մեր երկրում ծավալած իրենց հանրօգուտ գործունեությամբ լիովին հերքեցին բուրժուական գաղափարախոսների բարբաջանքները կանանց թերմարդ լինելու վերաբերյալ:



# III

Սովետական տարիներին հանրապետության պատկառելի հաջողություններն առավել ցայտուն դրսևորվում են երկրի էկոնոմիկայի՝ բնակչության բարօրության այդ գլխավոր հաստարանի բուռն վարգացման մեջ: Նորօք մեր հայրենիքն այժմ որպես առաջավոր ինդուստրիալ երկիր, 2—3 օրում թողարկում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան մեկ տարում արտադրվում էր 1913 թվականին: Ահա ձեզ հակոտնյա սիստեմների և տարբեր դարաշրջանների սոցիալական այն վիհը, որը զնալով խորանալու է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման համընթաց: Արտադրության զարգացման տեմպերի տարեկան միջինը՝ 14 տոկոսը, հնարավորություն ընձեռեց Հայաստանին՝ ուժգին ցատկով վեր ելնելու և կանգնելու ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների առաջավորների շարքերում:

Հիրավի, նոր գաղափարների ջահակիր բոլշևիկները մեր ժողովրդին բերին և նոր եղանակով աշխատելու, նոր ձևով ապրելու, բոլորովին նոր ոճի գործելակերպ: Հացի ու խաղաղ ապրուստի սաստիկ կարոտ մեր ժողովուրդը մեկ մարդու պես լծվեց երկրի քայքայված տնտեսության վերականգնման դժվարին գործին: Աշխատավորական կանզվածների շաբաթօրյակներով և աշխատանքային գիտակից կարգապահությամբ, էկոնոմիկան ուժգին թափ առավ:

Ուշագրավն այն է, որ պատերազմներից հողմածեծ և ազգամիջյան վայրագ բախումներից հյուծված Հայաստանը փյունիկի պես վեր հառնեց. նա հասավ այն բարձրության, որ մեր երկիրն այսօր երկու և կես անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան ցարական ողջ Ռուսաստանը:

Այս ամենը բնականոն է մեզ համար, որովհետև ազատագրված մարդկային աշխատանքը մշտապես ունակ է կանզվածային խիզախումների: Արդյո՞ք պակաս ուշագրավ է վիճակագրական պատկառելի մատյանում սևեռված այն հաղորդումը, թե դեռ 1968 թվականին հանրապետության արդյունաբերությունը (1940 թ. համեմատ) իր արտադրական ծավալով աճեց 17 անգամ, մի աճ, որը հաստատուն հիմք եղավ բնակչության կենսամակարդակի բարձրացման և ազգային եկամտի ավելացման համար:

Հետպատերազմյան տարիներին հանրապետության արդյունաբերությունն, իրոք, դարձավ բազմաճյուղ: Հաջողությամբ շարունակելով գունավոր մետալուրգիայի, թեթև, սննդի, քիմիական արդյունաբերության, ինչպես և շինանյութերի արտադրության ընդլայնված վերարտադրությունը բարձր տեմպերով, հանրապետությունը վերջին քսանհինգ տարիներին հարստացավ մեքենաշինության, սարքաշինության, էլեկտրատեխնիկական, ռադիոէլեկտրոնային, ավտոմոբիլային, հաստոցագործիքային, ավտոմատացման հզոր ու արդիական տեխնիկայով հագեցած արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններով:

Եվ ինչպե՞ս չուրախանալ, երբ, հիսուն տարի առաջվա հատուկենտ արդյունաբերական խղճուկ ձեռնարկությունների փոխարեն, մեր ծաղկուն հայրենիքն այսօր ունի 678-ը, վինված նորագույն գիտության ու տեխնիկայի պահանջներին համեմատ: Ուստի բնական է, որ Սովետական Հայաստանի 150 արտադրատեսակներ արտահանվում են աշխարհի ավելի քան 70 երկրներ:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից շատերի արտադրանքը վաղուց ի վեր համապատասխանում է համաշխարհային ստանդարտի մակարդակին: Վերջին տասնամյակում մեր մակնիշի արտադրանքները մեծ պահանջ են հարուցում աշխարհի տարբեր երկրներում:

Էլեկտրահաշվիչ մեքենաների, շարժական էլեկտրաշարժիչների, ճշգրիտ հաստոցների, կաուչուկի, գորգերի, կոնյակների և բազմաթիվ այլ արտադրանքների արտահանվող նմուշները ողջ աշխարհով մեկ տարածում են սովետական հայրենիքի բարի համբավը:

Հայաստանի ժողովրդական տնտեսության հարատև վերելքի ակնբախ ցուցանիշներից է կենդանի աշխատանքի էներգազինվածությունը, որն արդյունաբերության մեջ 1968 թվականին (1940 թ. համեմատ) աճել է մոտ երկու անգամ: Իսկ վերջին երեք տասնամյակներում յուրաքանչյուր բանվորի արտադրողականությունն արդյունաբերության մեջ ավելացել է ավելի քան 3,5 անգամ: Այս հուսալի հիմքերի վրա 1968 թ. 30 տոկոսով աճել է ազգային եկամուտը (1965 թ. համեմատ), իսկ բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով՝ 22 տոկոսով:

Մեր հանրապետությունն աչքի է կարնում իր ծավալուն շինարարությամբ: Նրա գալիք պատմության գրքերում մեծ տեղ է հատկացվելու մեր ժողովրդի կառուցողական «մոլության» բացահայտմանը: Անցած տարիներին Սովետական Հայաստանում մեծ թվով քաղաքներ, քաղաքատիպ ավաններ, գործարաններ, ֆաբրիկաներ, դպրոցներ, հիվանդանոցներ, ինստիտուտներ, թանգարաններ, թատրոններ, կինոսրահներ, վարչական շենքեր և շատ այլ կառույցներ են կանգնեցվել: Սովետական իշխանության տարիներին Հայաստանում շահագործման է հանձնվել 23 *մլն քմ* բնակելի տարածություն:

Եթե հիշենք, որ 1928 թվականին հանրապետության բոլոր շինարարները հազիվ 6 հազար մարդ էին, մինչ այժմ նրանք 75 հազարից ավելի են, ապա կառուցվող Հայաստանի պատկերի վեհությունն ավելի հրապուրիչ և իմաստալի կլինի: Միայն վերջին չորս տարիներին շահագործման է հանձնված 4.802.000 **քմ** բնակելի տարածություն:

Սոցիալիզմի կառուցման տարիներին, երբ իրագործվեց մանր ու փոշիացած գյուղացիական տնտեսությունների կոոպերացման ՍՄԿԿ պլանը, Հայաստանի գյուղական աշխատավորները, ներգրավվելով սոցիալիստական արտադրահարաբերությունների անմիջական գործող ոլորտը, հիմնովին վերափոխվեցին, դառնալով նոր հասարակության կառուցման ակտիվ մասնակիցներ, որոնց կոլեկտիվ տնտեսություններն անընդհատ ամրապնդվում ու առաջավոր են դառնում: Հսկայական կապիտալ ներդրումներ են կատարվել հանրապետության գյուղատնտեսության մեջ:

Անշեղորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները՝ Հայաստանի կոմունիստները երկիրը պատել են ոռոգման լայն ցանցով:

1920 թվականի համեմատությամբ, այժմ 4 անգամ ավելի է ոռոգվող հողատարածությունը, որը կազմում է 255 հազար հեկտար: Միայն պտղաբուծության և խաղողագործության տարածությունը հանրապետությունում հիսուն տարում ավելացել է 12 անգամ: Կիրառվող տասնյակ հազարավոր ժամանակակից մեքենաները հնարավորություն են ընձեռել հանրապետության աշխատավորներին գյուղատնտեսության հիմնական պրոցեսները վարելու մեքենայական եղանակով:

Գյուղատնտեսության մեջ ներդրված (1920—1970 թթ.) 1,3 *մլրդ* սովետական ռուբլիները մեծապես նպաստել են գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացմանը, նրա քիմիացմանը, էլեկտրիֆիկացմանը, առավել մեքենայացմանը, անասնաբուծության և հողագործության կուլտուրայի բարձրացմանը:

Այս ամենի շնորհիվ անհամեմատ բարձրացել է կոլտնտեսային բնակչության կենսական ու կուլտուրական մակարդակը, անէանում են գյուղի ու քաղաքի տարբերությունները: Երեկվա բահի ու գերանդու գեղջկական աշխատանքը սովետական գյուղում տեղի է տվել տրակտորների, կոմբայնների, ավտոմոբիլների և հարյուրավոր այլ մեքենաների արդյունավետ գործունեությանը:



Սովետական հայրենիքի բարգավաճումը հայրենադարձության բուռն ձըգտումներ հարուցեց տարաբախտ սփյուռքահայության լայն շրջաններում: Ընդառաջելով աշխարհի տարբեր ծեգերում դեգերող հայ աշխատավորության բաղձանքին, սովետական իշխանությունն առ այսօր 220 հազար հայրենադարձներ է ընդունել մայր հայրենիքի հողի վրա, ապահովելով նրանց աշխատանքով, բնակարաններով և սովետական քաղաքացու բոլոր իրավունքներով:

## IV

Անցած հիսուն տարիներին Հայաստանը դարձավ կուլտուրապես առաջավոր երկիր. անգրագիտության վերացմամբ, ժողովրդի, մանավանդ մատաղ սերնդի դաստիարակության և կրթության՝ պետական մասշտաբներով կազմակերպմամբ, երկիրն ընթացավ կուսակցության կանխագծած կուլտուրական հեղափոխության ուղիով: Սոցիալիզմի կառուցման համար մղված քաղաքական և աշխատանքային բուռն պայքարում, գաղափարապես և հոգեպես առնացավ մեր երբեմնի նկած ժողովուրդը, ծաղկեց նրա սոցիալիստական կուլտուրան, որը գնալով ավելի է մերձենում սովետական մյուս ժողովուրդների սոցիալիստական մշակույթին:

Այժմ մեր երկիրն ունի 1500 ընդհանուր կրթական դպրոցներ՝ 634 հազար աշակերտներով, 32 հազար ուսուցիչներով. 90 հազար մանուկներ դաստիարակվում են մանկապարտեզներում ու մսուրներում: Հանրապետության 12 բուհերում սովորում են 53 հազար ուսանողներ: Առ այսօր այդ բուհերը երկրի համար պատրաստել են ավելի քան 80 հազար մասնագետներ: Եթե սրան ավելացնենք այն, որ տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական դպրոցներում այժմ սովորում են 45 հազար երիտասարդներ, ապա հաջողությունների մեծությունն ավելի ակնառու կլինի:

Ահա թե ինչ տվեց սովետական իշխանությունը մեր ժողովրդին: Ի դեպ, սովետական կարգերի հաստատումից դեռ մեկ ամիս չէր անցել, երբ ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ, Երևանում կազմակերպվեց պետական համալսարանը՝ հանրապետության գիտության այդ առաջավոր օջախը: Գիտակրթական իրենց մակարդակով ու կարողությամբ, հանրապետության բուհերն այժմ կարողանում են պատրաստել հիմնական մասնագիտություններին տիրապետող տասնյակ հազարավոր աշխատողներ: Բնորոշ է, որ երիտասարդության մեծաթիվ խավեր ձգտում են տիրապետելու նորագույն գիտությունների հետ առնչվող՝ բարդ և երկրի համար խիստ անհրաժեշտ մասնագիտությունների: Հանրապետության համալսարանն ու բուհերը միաժամանակ հանդիսանում են հայրենի գիտության կարգացող հաստատություններ, երիտասարդ գիտական ուժեր պատրաստող հուսալի օջախներ:

Առաջավոր գիտության և կուլտուրայի մեր երկրում վաղուց ի վեր գործում են հարյուրից ավելի գիտահետազոտական հաստատություններ, ավելի քան 11,5 հազար գիտական աշխատողներով: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան իրավամբ համարվում է ՍՍՀՄ առաջավոր գիտության այն պատկառելի հաստատություններից մեկը, որն իր մեծարժեք լուման է մուծում սովետական գիտության հարուստ գանձարանը: Հայաստանի աստղագետների տիեզերասույզ միտքը, երկրաբանների հետախույզ ջանքերը և հարյուրավոր տաղանդավոր գիտնականների հետազոտությունները էապես նպաստում են նորոգ հայրենիքի գիտատեխնիկական և սոցիալ-կուլտուրական վերընթացին:

Անկասկած, սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը ՍՍՀՄ գի-

տության ու կուլտուրայի ծաղկման համար ավելի ընդարձակ նյութական բազա ապահովեց, որի հիման վրա բողբոջեց և սքանչելի պտուղներ տվեց աշխատավորության ստեղծագործական ներթաքուն հանճարը: Մի՞թե դրա ապացույցը չեն սովետահայ գրականության, երաժշտության, ճարտարապետության, նկարչության, կերպարվեստի, թատրոնի և օպերայի, կինոյի ու կիրառական արվեստի, հրատարակչական գործի, պարբերական մամուլի աննախընթաց վարգացումն ու ծաղկումը:

Հանրապետության բազմաձայն ու միլիոնավոր ընթերցողներին սպասարկող ավելի քան 1254 գրադարանները՝ 10 մլն գրաֆոնդով, տպագրվող 1200 գրքերը (տարեկան)՝ 10 մլն տպաքանակով, 95 ամսագրերն ու պարբերականները՝ 8 մլն 350 հազար տպաքանակով և 91 լրագրերը՝ տարեկան 170 մլն-ից ավելի տիրաժով, այս բոլորը սոցիալիստական հայ ազգի հոգևոր մշակույթի ծաղկման ակներև ցուցանիշներն են:

Մեր աշխատավորության կուլտուրական վերընթացին հարատև նպաստում են հանրապետության 14 թատրոնները, 1110 ակումբները, 29 թանգարանները, հարյուրավոր կինոդահլիճները և բազմաթիվ այլ հաստատություններ, որոնք իրենց հայրենանվեր գործունեությամբ շարունակում են ծառայել նոր մարդու դաստիարակության պատասխանատու գործին:

Կուլտուրական հեղափոխության լենինյան ըմբռնումը ներառնում է նաև անցյալի հոգևոր ժառանգության յուրացման պրոբլեմը: Կեսդարյա սովետական պրակտիկան Հայաստանում փայլուն կերպով ապացուցեց, որ մարդկության կուլտուրայի օրինավոր և սրտացավ ժառանգները կոմունիստներն են:

Մեր ամսագրի սույն համարում զետեղված ՀԳԱ թղթակից-անդամ Լ. Ս. Խաչիկյանի արժեքավոր հոդվածը հարուստ փաստական նյութերով աշխարհին ցուցադրում է սովետական իշխանության տարիներին Հայաստանում ծավալված վիթխարի գործունեությունն անցյալի կուլտուրական ժառանգության յուրացման մարզում: Ո՛չ միայն Մաշտոցի անվան գիտահետազոտական ինստիտուտի, այլև հնությունների պահպանության կոմիտեի, տարբեր հրատարակչությունների (հատկապես գիտությունների ակադեմիայի ու «Հայաստան» հրատարակչության), շատ ինստիտուտների, պետական համալսարանի, ճարտարապետների միության, հնէաբանների ջանքերով խոշոր գործ է կատարված մեր ժողովրդի վաղեմի գանձերի հայտաբերման, հավաքման, վերագնահատման և ըստ արժանվույն օգտագործման բնագավառում:

Չկա կենսագործունեության որևէ բնագավառ, որտեղ սովետահայ գիտնականները չպեղեն և ժողովրդին չվերադարձնեն այն ողջ արժեքավորը, ինչ ստեղծվել է դարեր ի վեր մեր նախորդների տառապանքներով: Եվ այսօր, վերածնված Հայաստանը սովետական կարգերի շնորհիվ իր անմեռ գանձերով մտել է համամարդկային կուլտուրայի թանգարանը ո՛չ միայն նորաստեղծ, այլև վերստեղծված բազում արժեքներով:

Սովետական իշխանության հաստատման օրից աշխատավոր բնակչության բուժման գործը դարձավ մեր նոր պետության հոգատարության ոլորտներից մեկը: Շատ շուտով վերացնելով երկրում տեղ գտած համաճարակները, սովետական մարմիններն ընդամենը մի քանի տարվա ընթացքում ապահովեցին ողջ բնակչության անվճար բուժսպասարկման գործի վարգացումը:

1920 թվականի 235 հիվանդանոցային մահճակալների փոխարեն, Հայաստանն այսօր ունի 20 հազար մահճակալներով 265 հիվանդանոցներ: Հանրապետության 24.603 մարդուց բաղկացած բուժաշխատողների կոլեկտիվը պատվով է կատարում իր հույժ պատասխանատու պարտականությունները:



V

Այսօր, երբ հանրապետության համայն աշխատավորությունը ցնծագին ոգևորությամբ և աշխատանքային պատկառազդու արդյունքներով է դիմավորում իր ազգային մեծ տոնը, նրա սիրտը լցվում է ազգային հպարտության այն խոր զգացումով, որ ինքն էլ իր ծանրակշիռ լուման է մուծել լենինիզմի հաղթության վեհ գործում: Այո՛, հանրապետության երախտագետ աշխատավորությունը, հայրենասիրական հպարտությամբ լի, խորապես գիտակցում է վեհությունն այն դարակազմիկ ճշմարտության, որ իր ազատագրումն ու բարվոք գոյության բոլոր հասումները կռված են այն ամեհի զոտեմարտերում, որոնք երբևէ վարել է Հայկոմկուսը, ՍՄԿԿ հավատարիմ ջոկատը:

Հայտնի է աշխարհին, որ Հայաստանում գործող բոլշևիկյան անձնուրաց մարտիկներն իրենց արյան գնով անջնջելի էջեր են գրել ՍՄԿԿ պատմական հաղթանակների տարեգրության մեջ: Հպարտանալով բարոյա-գաղափարական այս անգնահատելի կապիտալով, հայ ժողովուրդն իր փառավոր տոնի օրերին մի անգամ ևս հրապարակավ հայտարարում է, թե երբևէ չի մոռանա այն ճշմարտությունը, որ միայն սովետական կարգերի հաստատմամբ խպառ չքացավ նրա գլխին կախված յաթաղանի սարսափը: Զինվորագրվելով լենինյան անպարտ բանակին, Ստեփան Շահումյանն ու Սուրեն Սպանդարյանը, Բոգդան Կնունյանցն ու Իսահակ Լալայանցը, Սարգիս Կասյանն ու Դանուշ Շահվերդյանը, Ալեքսանդր Մյասնիկյանն ու Սարգիս Սրապիոնյանը (Լուկաշին), Ալեքսանդր Բեկզադյանն ու Անաստաս Միկոյանը, Ասքանազ Մռավյանն ու Սիմոն Տեր-Պետրոսյանը (Կամո) և բազմաթիվ անվեհեր բոլշևիկներ, մեր ժողովրդին առաջնորդեցին դեպի այս պայծառ լուսաբացը:

Ահա թե ինչու մեր օրերի սերունդն ի փառս սովետական հայրենիքի, ստեղծագործ եռանդի արդյունավետ գործադրմամբ հավերժացնում է Նոյեմբերյան այգաբացի նահատակների հիշատակը, հավատարիմ մնալով մեծ Լենինի կուսակցության իդեալներին: Այս տոնական օրերին մեր աշխատավորությունն իր սրտի խորքից երախտապարտության տուրք է հատուցում նաև այն բոլոր կռիվների հիշատակին, ովքեր ընկան մեծ Հայրենականի խրամատներում և իրենց սխրանքներով անսասան պահեցին կարգերը սովետական:

Հայ ժողովրդի բազմադարյա պատմության մեջ առաջին անգամ է, որ բանող ու դատող զանգվածներն իրենց շահերի պաշտպան քաղաքական կուսակցություն ունեն, կուսակցություն, որն իր գոյավորման օրից դավանում է մարքսիստական աշխարհայացք, ունի հստակ և գործնական կյանքի առաջավոր պահանջներին համապատասխան ծրագիր և գաղափարական համախոհների կուռ կազմակերպություն: Ուստի, բնական է, որ Հայաստանի սոցիալ-դասակարգային և ազգային-ազատագրական մաքառումների վառ դրվագները ներհյուսված են այդ կուսակցության հեղափոխական գործունեության հետ:

Իրականում, Հայկոմկուսի երկարամյա մաքառումների պատմությունը՝ դա աշխատավորության լիակատար ազատության և բարօրության համար թափված վիթխարի ջանքերի պատմությունն է: Թեժ պայքարի, ստեղծագործ որոնումների և արգասալի գործունեության հիսուն տարիներին, Հայկոմկուսն առնացել է գաղափարապես, քաղաքականապես և դարձել լենինիզմին նվիրված 130 հազար համախոհների հեղինակավոր կազմակերպություն: Նա է, որ կես դար վարում է մեր ժողովրդի բախտի անիվը:

Իր հիսնամյա գործունեության ընթացքում Հայաստանի կոմունիստական

կուսակցությունը, անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ վարած գլխավոր գիծը, հետևողականորեն պայքարել է տրոցկիզմի, աջ և «ձախ» օպորտունիզմի, բուրժուական նացիոնալիզմի և հակալենինյան այլ խմբավորումների դեմ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության հիսնամյա հասումներում առանձնահատուկ ուշադրության է արժանի նրա գաղափարական-քաղաքական լայնածավալ գործունեությունը հանրապետության աշխատավորական բոլոր խավերի շրջաններում: Հպարտությամբ պետք է շեշտել, որ սերունդներ են դաստիարակվել լենինիզմի ոգով. հարյուր-հազարավոր մարդիկ տիրապետելով այդ ամենազոր ուսմունքին, աննախընթաց անձնուրացությամբ նոր հասարակարգ են կերտել: Գաղափարական այդ ղեկավար զործոնի դերը կոմունիզմի կառուցման ասպարեզում, անգնահատելի է:

Ակներև է, որ աշխարհում չկա որևէ քաղաքական կուսակցություն, որը գաղափարաբանության սիստեմատիկ զարգացման ու պրոպագանդման մարզում կարողանա համեմատվել Լենինի ստեղծած կուսակցության հետ: Ինչպես սովետական կարգերի հաստատումից առաջ, այնպես և դրանից հետո, Հայկոմկուսի առօրյա հոգատարության առարկան է եղել մարքսիզմ-լենինիզմի դասականների ու առհասարակ մարքսիստական արժեքավոր երկերի հրատարակման գործը: Արդ, գոհունակությամբ պետք է հիշատակել, որ Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի գլխավոր երկերի, Վ. Ի. Լենինի 45 հատորների, Ս. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի, Ա. Մյասնիկյանի, Բ. Կնունյանցի և առհասարակ ականավոր մարքսիստ տեսաբանների աշխատությունների հրապարակումը մայրենի լեզվով, մեծ տպաքանակով, հիրավի, խոշոր նվաճում է:

Հաղթահարելով լեզվագիտական, տեխնիկական և թարգմանչական բնույթի բազմաթիվ դժվարություններ, այսօր հասել ենք նրան, որ մարքսիզմ-լենինիզմի մեծարժեք երկերը դարձել են միլիոնավոր մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորման ու հարստացման անմիջական աղբյուր: Բավական է ասել, որ անցած 52 տարիներում Լենինի աշխատությունները հայերեն լույս են տեսել 364 անգամ, ավելի քան 2 միլիոն տպաքանակով: ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ մոտակա տարիներին մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը պատրաստելու է հրատարակման Լենինի Երկերի լիակատար ժողովածուն՝ 55 հատորով: Գաղափարական-քաղաքական այս մեծ գործի հաջողությունը պարտական ենք Հայկոմկուսի գործադրած հսկայական և համառ ջանքերին:

Ամենայն հանդիսավորությամբ նշելով իր հիսնամյա հոբելյանը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման փառավոր տոնը, Հայկոմկուսը լի է վճռականությամբ՝ շարունակելու իր պայքարը ՍՄԿԿ ծրագրի անշեղ կենսագործման համար: Ընթանալով դեպի ՀԿԿ XXV և ՍՄԿԿ XXIV համագումարները՝ Հայաստանի կոմունիստները ոչ մի ջանք չեն խնայի երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական և տեխնիկական մեծ պրոբլեմները լուծելու համար:





*Ա. Մ. Սաքանյան*

# ՓԱՌԱՎՈՐ ՀԻՍՆԱՄՅԱԿ

## I

*Լրացավ Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման ու գործունեության հիսուն տարին: Կես դար առաջ նրա անմիջական ղեկավարությամբ տանջահար աշխատավորական զանգվածները, լենինյան ալ դրոշին փարած, Հայաստանում սովետական կարգեր հաստատեցին: Հայկոմկուսի պատմությունը, դա մարքս-լենինյան գաղափարախոսությանն անսահման նվիրված, մեր ժողովրդի պատաբաղձ և ամենապրոգրեսիվ առաջամարտիկների՝ բոլշևիկյան հսանքի, սոցիալ-դասակարգային մաքառումների փառավոր պատմությունն է: Հայկոմկուսի աշխարհաշեն պայքարի ու անկապտելի նվաճումների այս տոնը, որը զուգադիպում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման հիսնամյակին, պատմական օրինաչափություն է և այդ իրողության փայլուն հաստատումը, որ ցարական Ռուսաստանի կեղեքվող ազգերի վերջնական ազատագրումը հնարավոր էր միայն սոցիալիստական հեղափոխության հաղթությամբ, որի ղեկի մոտ կանգնած է եղել մեծ Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցությունը: Նմանապես օրինաչափ է, որ Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորմանը և սովետական սոցիալիստական հանրապետության ստեղծմանը նախորդել է Հայաստանի կոմունիստների ակտիվ մասնակցությունը Ռուսաստանի բոլշևիկների կուսակցության մղած քաղաքական բուռն պայքարին:*

*Ավելի քան յոթանասունամյա իրենց ժողովրդանվեր գործունեության ընթացքում Հայաստանի կոմունիստները հավատարիմ են մնացել լենինյան այն հիմնարար գաղափարին, որ սոցիալիստական հեղափոխության հաղթության միակ առհավատչյան բանվոր դասակարգի մարքսիստական կուսակցության ստեղծումն ու ամրապնդումն է, կուսակցություն, որը կարող լիներ տապալելու*

վերերողների իշխանությունը և ղեկավարելու կոմունիստական աշխարհի ստեղծման բարդ գործը: Հետևողական և անհաշտ պայքարելով ռևիզիոնիզմի ու օպորտունիզմի բոլոր երանգների դեմ՝ Լենինն ստեղծեց այդպիսի՝ մարքսիստական նոր տիպի, պրոլետարական ինտերնացիոնալիզմով տոգորված կուսակցություն, որը, գլխավորելով Հոկտեմբերյան դարակազմիկ հեղափոխությունը, սովետական սոցիալիստական կարգեր հաստատեց Ռուսաստանում:

Այժմ, երբ Հայաստանի աշխատավորությունը լի խանդավառանքով իր ազգային վերածնության և հարազատ կոմունիստական կուսակցության կազմավորման կեսդարյա հոբելյանն է նշում, արժե հետադարձ մի հայացքով վննել ու վերագնահատել նրա մղած քաղաքական պայքարի ու ստեղծարար ազգումների արգասալի ուղին:

Մարքսիզմի գաղափարների տարածումը, լենինյան իսկրայական խմբակների ստեղծումը Անդրկովկասում արմատական շրջադարձ հանդիսացան երկրամասի հասարակական-քաղաքական կյանքում: Դեռ XX դարի սկզբներին Հայաստանի աշխատավորները ներգրավվեցին ցարիզմի դեմ մղվող համառուսաստանյան պրոլետարիատի պայքարի մեջ:

Արտասահմանում և Ռուսաստանում, տակավին մեր դարի սկզբից, հայ ուսանողները, ընդգրկվելով մարքսիստական խմբակներում, ուսումնասիրում էին մարքսիզմը, ձեռք բերում ընդհատակյա գործունեության հարուստ փորձ: Վերադառնալով Անդրկովկաս՝ նրանք այստեղ կազմակերպում էին նման խմբակներ, հեղափոխական գաղափարներ պրոպագանդում աշխատավորների շրջանում: Բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչներ Բ. Կնունյանցը, Ա. Զուրաբյանը, Ս. Ավետիսյանը, Հ. Տեր-Օսիպովը, Ի. Լալայանցը և շատ ուրիշներ ուսանողական տարիներից հարում են սոցիալ-դեմոկրատական շարժման բոլշևիկյան հոսանքին, դառնում Լենինի հավատարիմ զինակիցները:

Հայաստանում առաջին մարքսիստական խմբակը 1899 թվականին, Ջալալօղլիում (այժմ Ստեփանավան) կազմակերպեց Թիֆլիսի ռեալական ուսումնարանի ուսանող Ստեփան Շահումյանը: Այնուհետև սոցիալ-դեմոկրատական խմբակներ ստեղծվեցին Երևանում, Ալեքսանդրապոլում, Կարսում, Հաղպատում և այլուր: Դրանք հիմնականում ունեին լենինյան «Իսկրայական» ուղղություն: Այդ խմբերի անդամներն ուսումնասիրում էին մարքսիստական գրականությունը, տարածում լենինյան «Իսկրան», մասնակցում աշխատավորների հեղափոխական ելույթներին, գլխավորում դրանք:

Հայ իրականության մեջ չափազանց կարևոր իրադարձություն էր 1902 թ. Թիֆլիսում Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյանի կողմից «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» ստեղծումը: Միությունն իր Մանիֆեստում առաջ էր քաշում սոցիալիզմը բանվորական շարժմանը միացնելու, օպորտունիստական հոսանքների դեմ պայքարելու անհրաժեշտությունը, պաշտպանում հեղափոխական մարքսիզմը և իրեն համարում ՌՍԴԲԿ կազմակերպություն:

Վ. Ի. Լենինը ողջունեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» երևան գալը և բարձր գնահատեց Մանիֆեստի դերը հեղափոխության արմատական հարցերը ճիշտ գնահատելու գործում:

Հեղափոխական փոթորիկների արշալույսից մինչև մեծ Հոկտեմբերի հերոսական օրերը բանվորական շարժման ավանգարդում էին հայ ժողովրդի լավագույն զավակները: Լենինյան գվարդիայի աննկուն մարտիկներից էին Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ալ. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Ա. Բեկզադյանը, լեգենդար Կամոն և շատ բոլշևիկ



հեղափոխականներ, որոնք փառավոր էջեր գրեցին կոմունիստական կուսակցության տարեգրության մեջ: Հայ կոմունիստները պաշտպանում էին բոլշևիկների կուսակցության ծրագրային, կազմակերպական ու տակտիկական գիծը, հայ ժողովրդի փրկությունը տեսնում ռուսական բանվորական շարժման հաջողության, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի մեջ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը բախտորոշ նշանակություն ունեցավ տիրող կարգերի դեմ բոլոր ճնշված ու հարստահարված ժողովուրդների մղած պայքարի գործում: Այն ոգեշնչման աղբյուր էր նաև Հայաստանի աշխատավորների համար: Բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ նրանք հերոսական պայքար ծավալեցին սովետական իշխանության հաստատման համար: Սակայն, բուրժուա-ազգայնական դաշնակցական կուսակցությունը, օտարերկրյա ինտերվենտների աջակցությամբ, զավթեց իշխանությունը և ահաբեկմամբ ու հալածանքներով փորձում էր խեղդել բանվոր դասակարգի ու գյուղացիության հեղափոխական շարժումը, հայ ժողովրդին մեկուսացնել ռուսական հեղափոխությունից:

Դաշնակցականների անփառունակ տիրապետությունն առանց այն էլ քայքայված Հայաստանը կանգնեցրեց անկման եզրին. արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ 1919 թվականին կրճատվեց 12 անգամով: Լիակատար անկում էր ապրում նաև գյուղատնտեսությունը: Սովն ու համաճարակն ամենուր հազարավոր զոհեր էին խլում ժողովրդից:

Դաժան հաշվեհարդարների ու անլուր հալածանքների պայմաններում Հայաստանի աշխատավորները շարունակում էին իրենց պայքարը դաշնակցականների հակաժողովրդական քաղաքականության դեմ: Ամենուրեք տեղի էին ունենում բանվորական քաղաքական գործադուլներ, մասսայական ցույցեր ու միտինգներ, գյուղացիների զինված ելույթներ: Այդ ամենը վարում էին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները, որոնք աստիճանաբար աճում ու ամրապնդվում էին, քաղաքականապես հասունանում, խորացնում իրենց ազդեցությունը բանվորների և աշխատավոր գյուղացիների շրջանում:



Հեղափոխական շարժումների վրա բարերար ազդեցություն ունեցավ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների միավորումը, որը տեղի ունեցավ 1919 թ. սեպտեմբերյան խորհրդակցությունում: Խորհրդակցությունն ընտրեց կուսակցական ղեկավար կենտրոն (Արմենկոմ): Միավորումն ավարտեց 1920 թ. հունվարին հրավիրված առաջին կոնֆերանսը: Այդ ժամանակ կուսակցության մեջ հաշվվում էր 22 կազմակերպություն: Կոնֆերանսն ընտրեց ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե հետևյալ կազմով՝ Ս. Ալավերդյան, Ս. Կասյան, Ա. Մռավյան, Դ. Շահվերդյան, Հ. Կոստանյան, Ղ. Ղուկասյան, Ա. Նուրիջանյան, Դ. Տեր-Սիմոնյան, Ս. Մարտիկյան, Ա. Գոգունց, Ս. Գրիգորյան: Կոնֆերանսը մշակեց հետագա պայքարի կոնկրետ ծրագիր և Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց սովետական իշխանության հաստատումը՝ դաշնակների տիրապետության տապալմամբ:

Հայաստանի բոլշևիկյան կուսակցական կազմակերպությունները օր-օրի ակտիվացրին իրենց գործունեությունը. տպագիր օրգանների միջոցով և կազմակերպական եռուն գործունեությամբ նրանք աշխատավորներին նախապատրաստում էին հետագա գոտեմարտերին: Աստիճանաբար աճում էր բոլշևիկների հեղինակությունը, ստվարանում էին նրանց շարքերը: 1920 թ. ապրիլին արդեն կուսկազմակերպություններում հաշվվում էր 3000 կոմունիստ: Հայաստա-

նի աշխատավոր մասսաները ընթանում էին կոմունիստական կուսակցության հետևից: Դրա ցայտուն վկայությունը մայիսյան հերոսական ապստամբությունն էր, որն ընդգրկեց գրեթե ողջ Հայաստանը:

Հայաստանում հեղափոխական շարժումների զարգացմանը էապես նպաստեց սովետական իշխանության հաղթանակը Ադրբեջանում: Հայաստանի աշխատավորների 1920 թվականի մայիսմեկյան ցույցերն ամենուրեք տեղի ունեցան բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, Սովետական Ռուսաստանի, Սովետական Ադրբեջանի հետ համերաշխության, Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների շուրջը համախմբվելու, դաշնակցական արկածախնդիրների դիկտատուրան տապալելու կոչերով:

Մայիսմեկյան ցույցերն ամենուր պատմական մայիսյան ապստամբության սկիզբը դարձան: Այդ ցույցերին հաջորդեցին աշխատավորների զինված ելույթները: Ալեքսանդրապոլի կայազորի զորամասերը, «Վարդան զորավար» զրահագնացքի անձնակազմն անցան բոլշևիկների կողմը: Մայիսի 10-ին արդեն քաղաքն ապստամբների ձեռքում էր: Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեն, որն ստեղծվել էր մայիսի 7-ին, ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեի, Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի և Ղարաքիլիսայի կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցությունում, Հայաստանը հռչակեց սովետական: Կոմունիստական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ ապստամբության դրոշ պարզեցին նաև Երևանի, Կարսի, Սարիղամիշի, Նոր Բայազետի, Շամշադինի, Զանգեզուրի աշխատավորները: Ամենուրեք նրանք ցուցաբերում էին անձնազոհության ու հերոսության վառ օրինակներ: Սխրանքներ կատարողների առաջին շարքերում կոմունիստներն էին:

Սակայն, այդ ժամանակ հայ ժողովրդին վիճակված չէր հաղթանակելու: Մայիսյան ապստամբությունը պարտվեց, դաշնակցականները դաժան հաշվեհարդար տեսան նրա ղեկավարների ու մասնակիցների հետ: Երկրում ծայր առավ մասսայական տեռորը: Հերոսի մահով ընկան կոմունիստական կուսակցության ականավոր գործիչներ Ս. Ալավերդյանը, Բ. Ղարիբջանյանը, Ս. Մուսայելյանը, Հ. Սարուխանյանը, Ղ. Ղուկասյանը, Ա. Փանյանը, Ե. Մկրտումյանը, Ե. Սևյանը, Բ. Բատիկյանը և հեղափոխության անվեհեր շատ մարտիկներ:

Մայիսյան ապստամբությունը քաղաքական մեծ դաս էր Հայաստանի կոմունիստների համար: Այն ցույց տվեց, որ դաշնակցականների տիրապետության հիմքերը լիովին խարխլվել են, ժողովուրդն այլևս չի ուզում հաշտվել գոյություն ունեցող կարգերի հետ և վճռական պայքարով հնարավոր է հաղթական վախճանի հասցնել հեղափոխությունը:

Մայիսյան ապստամբության հերոսների թափած արյունն իզուր չանցավ, այն նոր, վճռական գոտեմարտերի կոչեց աշխատավոր մասսաներին՝ հանուն իրենց երկրի ազատագրության ու անկախության:

Հեղափոխական շարժման զարգացման ու թշնամու դեմ հաղթանակն ապահովելու գործում բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորումը: 1920 թ. հուլիսին ծնունդ առավ Հայկոմկուսը, որի ղեկավար կազմում ընտրվեցին Ա. Մռավյանը, Ա. Բեկզադյանը, Ս. Կասյանը, Դ. Շահվերդյանը, Ի. Դովլաթյանը, Հ. Կոստանյանը, Հ. Պողոսյանը, Դ. Տեր-Սիմոնյանը և ուրիշներ: Հայկոմկուսը հոկտեմբերի սկզբին աշխատավորությանը կոչ արեց զինված ապստամբությամբ տապալել



դաշնակցականների իշխանությունը, երկրում հաստատել սովետական կարգեր: Նոյեմբերին արդեն կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ Հայաստանի քաղաքներում ու գյուղերում ծավալվեցին հեղափոխական, մասսայական նոր շարժումներ, որոնք ընդգրկեցին նաև դաշնակցական կայազորների զինվորներին: Դաշնակցության դեմ շատ շրջաններում գյուղացիները բացարձակ զինված ելույթներ էին կազմակերպում, զինվորները լքում էին դիրքերը: Նոյեմբերի 5-ին Ալեքսանդրապոլի բոլշևիկներն ստեղծեցին հեղկոմ և քաղաքը հայտարարեցին սովետական:

Իջևանի և Դիլիջանի աշխատավորները, հերոսական 11-րդ Կարմիր բանակի աջակցությամբ, 1920 թ. նոյեմբերի 29-ին վճռական հարված տվեցին թշնամուն: Այդ հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչը Հայկոմկուսի Կենտկոմն էր: Նույն օրը կազմվեց Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտե՝ Սարգիս Կասյանի գլխավորությամբ: Հեղկոմի հրապարակած դեկլարացիայում ասված է. «Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով ու ցանկությամբ՝ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցությունն այսօրվանից Հայաստանը հայտարարում է Սոցիալիստական Խորհրդային Հանրապետություն: Այսօրվանից Խորհրդային Հայաստանի կարմիր դրոշակը պաշտպանելու է նրա աշխատավոր ժողովրդին ճնշողների դարավոր լծից»:

Վ. Ի. Լենինը, որն ամենայն ուշադրությամբ հետևում էր հայ ժողովրդի հեղափոխական պայքարին, Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեի նախագահի անունով հղած հեռագրում ողջունեց իմպերիալիզմի կեղեքումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին:

## 2

Սովետական իշխանության հաստատման առաջին օրից կատարվեցին սոցիալական արմատական վերափոխումներ. ազգայնացվեցին հողը, արդյունաբերությունն ու առևտուրը, բանկերը, տրանսպորտն ու կապը: Այդ ժամանակ, սակայն, հանրապետության աշխատավորների ուժերը չէին ներում սեփական ուժերով հաղթահարելու ժողովրդական տնտեսության վերականգնման դժվարությունները: Հայաստանին օգնության ձեռք մեկնեցին ռուս ժողովուրդը, Սովետական Ադրբեջանը:

Վ. Ի. Լենինի՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի և Լեռնային Հանրապետության կոմունիստ ընկերներին» հղած նամակը դարձավ նոր կյանքի կառուցման, Հայաստանի կոմկուսակցության, հանրապետության ողջ աշխատավորության ամենօրյա գործունեության մարտական ծրագիրը: Հայկոմկուսի Կենտկոմը մոբիլիզացնում էր կուսկազմակերպությունների և աշխատավորների ուժերը՝ քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար: Այդ տեսակետից կարևոր քայլ էր ՀԿ(բ)Կ Կենտկոմի 1920 թ. դեկտեմբերի դիմումը՝ ուղղված հանրապետության բոլոր կուսկազմակերպություններին: Դիմումում ընդգծված էին հանրապետության տնտեսական ծանր վիճակը և նրա վերականգնման գործում կուսկազմակերպությունների կոնկրետ խնդիրները:

1925 թ. (նոյեմբեր-դեկտեմբեր) տեղի ունեցած Հայկոմկուսի IV համագումարը, հանրագումարի բերելով հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնման արդյունքները, ընդգծեց, որ կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականությունը մեր երկրում ապահովեց տնտեսական վերելք: Ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին

հանրապետությունում գործարկվեցին մի շարք նոր ձեռնարկություններ, վերակառուցվեցին հները, ստեղծվեցին արդյունաբերության նոր ճյուղեր, կառուցվեցին էլեկտրակայաններ ու ջրանցքներ: Հաջողություններն ակնառու էին արդյունաբերության, պետական առևտրի, կուլտուրական շինարարության ասպարեզներում: Նշանակալիորեն ավելացավ բանվոր-ծառայողների թիվը:

Տնտեսական շինարարության հաջողություններին զուգընթաց բարելավվում էր կուսակցության սոցիալական կազմը, համալրվում էին նրա շարքերը: Համագումարի նախօրյակին Հայկոմկուսի կազմում հաշվվում էր 6130 կոմունիստ, որոնց 31 տոկոսը բանվորներ էին: Աճել էր կուսկազմակերպությունների (բջիջների) թիվը և հասել 445-ի:

ՌԿ(բ)Կ XIV համագումարը խոշոր նշանակություն ունեցավ մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա վերելքի ու հզորացման համար: Համագումարը նշեց Սովետական Միությունում սոցիալիզմի կառուցման հիմնական ուղին և ժողովրդական տնտեսության ինդուստրացման հաստատուն կուրս վերցրեց:

Կուսակցության XIV համագումարի պատմական որոշումները մեծ խանդավառություն առաջացրին երկրի կոմունիստների ու ողջ աշխատավորների շրջանում: ՀԿԿ ղեկավարությամբ Հայաստանի աշխատավորները ձեռնամուխ եղան սոցիալիստական շինարարության նոր, բարդ պրոբլեմների լուծմանը, հուժկու թափ հաղորդեցին ինդուստրիայի նոր ձեռնարկությունների կառուցմանը:

Հայկոմկուսի V համագումարը (1927 թ.) որոշեց, հանրապետության արտադրաուժերի հարաճուն վերելքի ապահովման և ինդուստրացման խնդիրների լուծման նպատակով, ամեն կերպ զարգացնել գունավոր մետաղների, քիմիական նյութերի, հանքային հանածոների և շինանյութերի արտադրությունը, ծավալել հանրապետության էլեկտրիֆիկացիայի, տեղական արդյունաբերության ու տնայնագործական կոոպերացիայի ձեռնարկությունների շինարարությունը: Զինված ինդուստրացման վերաբերյալ կուսակցության պատմական որոշումներով՝ Հայաստանի աշխատավորներն ուժգին պայքար ծավալեցին ժողովրդական տնտեսության ինդուստրիալ շինարարության համար:

Ամփոփելով սոցիալիստական շինարարության հաջողությունները՝ Հայկոմկուսի VI համագումարը (1929 թ.) քննարկեց ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը և սահմանեց այն իրականացնելու գործում հանրապետության կուսկազմակերպությունների կոնկրետ խնդիրները:

Ծանր ինդուստրիայի զարգացման ամենագլխավոր նախադրյալը էլեկտրաէներգիայի արտադրությունն էր: Ուստի էներգետիկ տնտեսության զարգացումը դարձավ հանրապետության կուսկազմակերպությունների հոգածության առարկան: Հնգամյակների տարիներին շահագործման հանձնվեցին մի շարք հիդրոէլեկտրակայաններ, աճեցին արդյունաբերության կապիտալ ներդրումները: Երկրորդ հնգամյակում ինդուստրիայի առաջատար ճյուղը դարձավ քիմիական արդյունաբերությունը:

ՀԿ(բ)Կ Կենտկոմը 1933 թ. քննարկեց Երևանում սինթետիկ կաուչուկի գործարան կառուցելու հարցը: Կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում էր արդյունաբերական նոր ձեռնարկությունները ժամանակին գործարկելու հարցը: Կարևոր նշանակություն էր տրվում արդյունաբերության տեխնիկական զինվածությանը: ՀԿ(բ)Կ IX համագումարը որոշեց 1934 թվականը դարձնել նոր տեխնիկայի խոր յուրացման տարի: Նախապատերազմյան հնգամյակների տարիներին հանրապետությունում շահագործման հանձնվեց



200-ից ավելի արդյունաբերական խոշոր ձեռնարկություն: 1940 թ. արդեն էլեկտրաէներգիայի արտադրությունը Հայաստանում հասավ 395 միլիոն կվտ/ժամի՝ 79 անգամով ավելի, քան 1913 թվականին:

Ժողովրդական տնտեսության ինդուստրացման կուրսն իրականացնելու շնորհիվ, Հայաստանն ագրարայինից դարձավ ինդուստրիալ-ագրարային երկիր:

Այդ ժամանակամիջոցում Հայաստանի կոմկուսակցության կյանքում տեղի ունեցան լուրջ փոփոխություններ: Գործարկված ձեռնարկություններում ստեղծվեցին կուսկազմակերպություններ: Մեծացավ բանվոր կոմունիստների տեսակարար կշիռը:

ՀԿ(բ)Կ VI համագումարը, ելնելով ՀամԿ(բ)Կ XV համագումարի որոշումներից, նշեց Հայաստանի գյուղատնտեսության զարգացման հիմնական ուղղությունը: ՀԿ(բ)Կ Կենտկոմի 1929 թ. նոյեմբերյան պլենումը, քննարկելով կոլտնտեսային շարժման հետ կապված մի շարք կարևոր ու հրատապ հարցեր, կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման վերաբերյալ կուսակցության քաղաքականության հետևողական իրականացման վրա: Կենսագործելով լենինյան կոոպերատիվ պլանը՝ Հայաստանի կոմկուսակցությունը գլխավորեց գյուղի սոցիալիստական հեղաշրջումը: Ստեղծվեցին հզոր տեխնիկայով զինված կոլտնտեսություններ ու սովխոզներ, ընդարձակվեցին ցանքատարածությունները, ոռոգելի հողերը, գյուղատնտեսությունը հետզհետե մեքենայացվեց, մշակվեցին արժեքավոր տեխնիկական կուլտուրաներ:

Հայկոմկուսի VIII համագումարը (1932 թ.) Կենտկոմի հաշվետվության առթիվ ընդունած բանաձևում նշեց. «Կուսակցության հիմնական գծի կիրառումն ապահովեց չքավոր ու միջակ գյուղացիների ներգրավումը կոլտնտեսությունների մեջ: Հաշվետու շրջանը հարուստ է այն բազմակողմանի պայքարով, որ մղել են Հայաստանի կուսկազմակերպությունները գյուղի սոցիալիստական վերակառուցման համար, գյուղական մանր, անհատական տնտեսությունները, խոշոր, մեքենայացված, հանրայնացված տնտեսությունների ռելսերի վրա փոխադրելու համար»:

Առաջին հնգամյակի վերջին տարում գյուղական տնտեսությունների 37,9 տոկոսն ընդգրկվել էր կոլտնտեսություններում: Նրանց տրամադրության տակ էր գտնվում ցանքատարածությունների 40 տոկոսը: 1940 թ. արդեն Հայաստանի գյուղական տնտեսությունների 98,3 տոկոսն էր ներգրավվել կոլտնտեսություններում: Մշակվող հողերի 92 տոկոսը պատկանում էր սոցիալիստական սեկտորին: Այդ նվաճումները գյուղի սոցիալիստական վերակառուցման մարզում Հայաստանի կոմկուսի գործադրած վիթխարի ջանքերի ու համառ պայքարի, գյուղում սոցիալիզմի հաղթանակի փայլուն վկայությունն էին: Գյուղում կատարված մեծ վերափոխումներն արտացոլում գտան կուսակցության որակական կազմում: Նրա շարքերն ընդունվեցին կոլտնտեսային աշխատավորները: 1940 թ. կուսկազմակերպություններում կար ավելի քան 10 հազար կոլտնտեսական կոմունիստ:

Սոցիալիզմի վերջնական հաղթանակի շահերը հրամայաբար թելադրում էին մեծ վերափոխումներ իրագործել նաև գիտության ու կուլտուրայի, ժողովրդական կրթության ու առողջապահության, գրականության ու արվեստի ասպարեզներում:

Սովետական իշխանության հաստատման առաջին օրերից սկսած՝ Հայաս-

տանի կոմկուսը մշակեց ու իրականացրեց բազում միջոցառումներ՝ երկրի դպրավոր հետամնացությունը հաղթահարելու համար: ՀԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ դեռևս 1921 թ. դեկտեմբերին բացվեց Երևանի պետական համալսարանը, 1923 թ.՝ պետական կոնսերվատորիան: Կուլտուրական հեղափոխության ամենագլխավոր հարցը անգրագիտության վերացումն էր: Նախահեղափոխական Հայաստանի բնակչության 90 տոկոսն անգրագետ էր: 1914 թ. դպրոցներում կար ընդամենը 30 հազար աշակերտ: 1940 թ. գրագիտության տոկոսը հասավ 74-ի, աշակերտների թիվը՝ 326.617-ի, ստեղծվեց բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների լայն ցանց: 1940-ին նրանցում սովորողների թիվը կազմեց 18.426 մարդ:

ՀԿ(բ)Կ XIII համագումարը (1940 թ.) հանրագումարի բերեց արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրական հեղափոխության ասպարեզներում Հայաստանի կոմկուսակցության նվաճումները: Հավատարիմ ՍՄԿԿ վարած գծին, Հայաստանի կոմկուսը նախընթաց տարիներին իրականացնում էր կուսակցության գլխավոր գիծը, պայքար մղում տրոցկիզմի, «ձախ» և աջ օպորտունիզմի ու բուրժուական նացիոնալիզմի, հակալենինյան բոլոր խմբավորումների դեմ, պաշտպանում կուսակցության շարքերի միասնությունը:

3

1941 թ. հունիսի 22-ին, ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ հարձակվեց մեր երկրի վրա: Ընդհատվեց սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը: Կուսակցության կոչով հայրենիքի պաշտպանության համար ոտքի ելավ նաև հայ ժողովուրդը: Միայն 1941—43 թթ. Հայաստանի կոմկուսի 36.849 անդամ-թեկնածուներից 20 հազարը մեկնեց ռազմաճակատ: Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված կռիվներում ցուցաբերած խիզախության ու արիության համար՝ 67 հազար հայ մարտիկներ պարգևատրվեցին Սովետական Միության մարտական շքանշաններով ու մեդալներով, 103-ն արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման: Նրանց թվում կային հարյուրավոր կոմունիստներ, որոնք կռվել էին Հայկոմկուսի մարտական շարքերում:

Հայկոմկուսը գլխավորում էր աշխատավորների մղած պայքարը՝ սովետական պետության ռազմական պատվերները ժամանակին կատարելու, արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքն ավելացնելու ասպարեզում: Հանրապետության աշխատավորները կարողացան համեմատաբար կարճ ժամանակամիջոցում էկոնոմիկան համակերպել ռազմական նպատակներին: Պատերազմի տարիներին մեր արդյունաբերությունն իրացրեց ռազմաճակատի համար խիստ անհրաժեշտ ավելի քան 270 տեսակի արտադրանքի թողարկում:

Աշխատանքային խիզախումների հիանալի օրինակներ ավեցին նաև կոլտնտեսային աշխատավորները: 1940 թ. համեմատությամբ հանրային տնտեսությունների ցանքատարածությունը պատերազմի վերջին տարում ընդարձակվեց 17,7 հազար հեկտարով: Հանրապետության կոլտնտեսություններն առաջնություն շահեցին համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացան Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշին:

Թիկունքում կատարած անձնուրաց աշխատանքի համար հանրապետության 376 հազար աշխատավորներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով: Նրանց զգալի մասը կոմունիստներ էին:

Հետպատերազմյան ժամանակաշրջանը նշանավորվեց աշխատավորների աշխատանքային ու քաղաքական նոր վերելքով: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ձեռնարկեց մի շարք միջոցներ՝ հանրապետության արտադրաուժերի առնախընթաց զարգացման համար: Մեծ չափերով աճեցին կապիտալ ներդրումները, առավել արդյունավետ օգտագործվեցին տեղական հումքային ու աշխատանքային ռեսուրսները, ամենուրեք ապահովվեց արդյունաբերության առաջընթացը: Ծնունդ առան արդյունաբերական նոր, խոշոր կենտրոններ՝ Բաջարանը, Ազատավանը, Հրազդանը, Արթիկը, Չարենցավանը, Աբովյանը, Սպիտակը, Ստեփանավանը: Ստեղծվեցին էկոնոմիկայի նոր ճյուղեր՝ ճշգրիտ մեքենաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրոնիկան ու ռադիոէլեկտրոնիկան, ավտոմոբիլաշինությունը և այլն: Երբեմնի առաջին անհրաժեշտության ապրանքներ ներմուծող Հայաստանն այժմ դարձել է մեքենաներ ու սարքավորումներ արտահանող հանրապետություն: Հայաստանի մակնիշներով բազում արտադրատեսակների պատվիրատուներ են դարձել արտասահմանյան տասնյակ, այդ թվում զարգացած երկրներ: Հայաստանի ինդուստրացման ցուցանիշներից է բանվոր դասակարգի և տեխնիկական ինտելիգենցիայի նկատելի աճը: Նրանք գիտատեխնիկական առաջադիմության առաջամարտիկներն են:

Արդյունաբերության աննախընթաց զարգացմանը համընթաց վերելք է ապրում գյուղատնտեսությունը: Նախապատերազմյան տարիների համեմատությամբ նկատելի չափերով ընդարձակվել են պտղատու և խաղողի այգիները, ոռոգելի հողատարածությունը, բարձրացել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացել անասնապահական մթերքների արտադրությունը:

Հայաստանի կոմկուսակցությունն առանձնակի հոգատարություն է ցուցաբերում գիտության ու կուլտուրայի, ժողովրդական կրթության ու առողջապահության, արվեստի ու գրականության զարգացման նկատմամբ: Մեծ առաջընթաց է ապրել Սովետական Հայաստանի գիտությունը: Հայաստանի գիտությունների ակադեմիան այժմ միավորում է 28 գիտահետազոտական հիմնարկություն: Հանրապետության 100 գիտահետազոտական հիմնարկություններում աշխատում են 11,6 հազար գիտության գործիչներ:

Հայաստանի կոմկուսակցությունը կեսդարյա փառավոր ուղի է անցել: Նրա ղեկավարությամբ հանրապետության աշխատավորները վիթխարի նվաճումներ են ձեռք բերել էկոնոմիկայի ու մշակույթի զարգացման բնագավառներում, ապահովել սոցիալիզմի հաղթանակը, խոշոր առաջընթաց քայլ կատարել կոմունիստական հասարակարգի կառուցման ճանապարհին: Հայ ժողովուրդն իր նվաճումներով, իր առավել երջանիկ ապագան կերտելու համար ծավալած ստեղծագործ պայքարով հավերժացնում է հիշատակը բոլոր նրանց, ովքեր իրենց կյանքը նվիրաբերեցին «պարկված ու զրկված» Հայաստանի, նրա բազմաչարչար ժողովրդի ազատագրման ու անկախության արդարացի գործին, ապահովեցին Նոյեմբերյան հեղափոխության հաղթանակը:

Առաջնորդվելով լենինյան ցուցումներով՝ Հայաստանի կոմկուսակցությունը կուտակել է քաղաքական ու կազմակերպական աշխատանքի բազմահարուստ փորձ, իր կեսդարյա գործունեության ընթացքում աճել ու դարձել մի հզոր բանակ, ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը: Այժմ Հայաստանի կոմկուսակցությունը միավորում է 4556 սկզբնական կազմակերպություն, որոնց շարքերում հաշվվում է ավելի քան 129,5 հազար կոմունիստ: Նրանք բանվորներ են ու գյուղացիներ, արանց ծոցից դուրս եկած մտավորականներ:

Փառավոր հիսնամյակի ընթացքում հանրապետության կոմունիստների, նրա բոլոր աշխատավորների ձեռք բերած մեծ նվաճումները լենինյան գաղափարների կենսագործման արգասիքն են, նրա սեփական կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության հաղթանակի վառ ցուցադրումը։

Անցած հիսնամյակը Հայաստանի համար եղել է ժողովրդական տնտեսության բուռն վերելքի, գիտության ու մշակույթի ծաղկման, կոմունիստների, բոլոր աշխատավորների անձնուրաց պայքարի ու հաղթանակի ժամանակաշրջան։ Այդ բոլոր նվաճումներն անխզելիորեն կապված են եղել մեծ առաջնորդի և նրա ստեղծած կուսակցության անվան հետ։ Լենինյան կենսահաստատ ուսմունքը եղել է և կմնա ուղեցույց աստղ՝ կոմունիզմի կառուցման համար հայ ժողովրդի մղած հերոսական պայքարում։

Յուրաքանչյուր հոբելյան նշելիս՝ սովորաբար հանրագումարի են բերվում նախընթաց ժամանակաշրջանի գործունեության արդյունքները և մոբիլիզացվում են բոլոր հնարավորություններն ու ռեսուրսները՝ դրանք բազմապատկելու, հետագա առաջընթաց քայլն անելու համար։ Իր բախտն արդեն կես դար ինքնուրույն տնօրինող հայ ժողովուրդն այսօր, իր վերածննդի փառապանծ տարելիցի օրը, օրինական հպարտությամբ ցուցադրում է նոր կյանքը կերտելու, կոմունիզմի նյութատեխնիկական բազան ստեղծելու լուսաշող ճանապարհին ձեռք բերած իր մեծ նվաճումները, որոնք մեր կոմկուսակցության XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի վերջին տարիների պլենումների պատմական որոշումների անշեղ կենսագործման անմիջական արգասիքն են։

Առաջիկա հնգամյակը, հիրավի, վերածնված ու բարգավաճող Հայաստանի համար լինելու է պայծառ հեռանկարների ու վիթխարի կանխագծումների իրականացման ժամանակաշրջան։ Հայաստանի կոմկուսակցության վերջին XXIV համագումարը նախանշեց մեր հանրապետության հետագա բուռն վերելքի ուղին, առաջադրեց նոր, բարդ խնդիրներ ու պրոբլեմներ։ Զինված համագումարի որոշումներով՝ հանրապետության կուսկազմակերպությունները, բոլոր կոմունիստներն ու աշխատավորները վճռականորեն ու անդուլ պայքարում են ՍՄԿԿ Կենտկոմի մշակած տնտեսական քաղաքականությունը հետևողականորեն իրագործելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, արդյունաբերության ու գյուղատնտեսության տեխնիկական զինվածության բարձր մակարդակ և աշխատանքի արտադրողականության աննախընթաց աճ ապահովելու համար։

Այդ մեծ ու բարդ խնդիրների ու պրոբլեմների լուծմամբ նշանակալիորեն կբարձրանա մեր հանրապետության աշխատավորների կենսամակարդակը, արագ կերպով կզարգանա նրա նյութական ու հոգևոր կուլտուրան։ Դա կլինի մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մի վառ դրսևորումը ևս։

Հայաստանի կոմկուսակցությունը, հանրագումարի բերելով հայ ժողովրդի վերածննդի, սոցիալիզմի հաղթանակի և կոմունիզմի կառուցման համար մղած իր կեսդարյա պայքարի արդյունքները, մոբիլիզացնում է հանրապետության աշխատավորների ողջ ուժերը՝ ձեռք բերած նվաճումները բազմապատկելու, հնգամյակը հաջողությամբ եկրափակելու, ՍՄԿԿ XXIV համագումարն արժանավայել գործերով դիմավորելու համար։







Լ. Պ. Ղարիբջանյան

# ՆՈՐՈԳ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ

## I

Հայաստանի աշխատավորությունը, մեր հայրենիքի եղբայրական ժողովուրդների հետ, հանդիսավորությամբ նշում է շատ նվիրական ու նշանակալից մի տարեթիվ՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակը։

Ազգային իր այս մեծ տոնը մեր ժողովուրդը դիմավորում է օրինական հպարտությամբ, որովհետև անցած հիսուն տարիներում կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ, հանրապետությունը մեծ նվաճումներ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության, գիտության, մշակույթի, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ ժամանակամիջոցում մեր երկրի ու ժողովրդի կյանքում կատարված արմատական փոփոխություններն ամենից ակներև ու վառ մարմնավորում է վերածնված Հայաստանի նորոգ մայրաքաղաքը։

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրվանից Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ու կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրել մայրաքաղաքի զարգացման հարցերին, անսահման հոգատարություն ցուցաբերել Երևանի աշխատավորության նկատմամբ։

Երևանի կուսակցական կազմակերպությունը Հայկոմկուսի Կենտկոմի ղե-

կավարությամբ մոբիլիզացրել է քաղաքի աշխատավորության ուժերը կոմունիստական կուսակցության առաջադրած քաղաքական ու տնտեսական խնդիրների հաջող լուծման համար։

Սովետական Հայաստանի 50-ամյակը և Սովետական Միության կոմունիստական կուսակցության առաջիկա հերթական XXIV համագումարը, ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր նվաճումներով են դիմավորում նաև մայրաքաղաքի աշխատավորները։

## II

Հասարակության պատմությանը հայտնի են շատ իրադարձություններ, որոնք բախտորոշ նշանակություն են ունեցել մարդկության ճակատագրի համար։ Սակայն դրանցից և ոչ մեկը չի կարող համեմատվել Հոկտեմբերյան հեղափոխության հետ, որը վճռական նշանակություն ունեցավ նաև հայ ժողովրդի կյանքում։

Հայաստանում սովետական իշխանության հաղթանակով սկիզբ դրվեց ազգային, քաղաքական, տնտեսական և մշակութային մի նոր, փառավոր շրջանի։

Դարեր առաջ իր պետականությունը կորցրած Հայաստանը պատմության ընթացքում շատ մայրաքաղաքներ է ունեցել՝ Տուշպա, Արմավիր, Երվանդաշատ, Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Դվին, Կարս, Անի և այլն։ Օտար հեղինակները հաճախ Հայաստանն իրավամբ անվանել են «Թափառող մայրաքաղաքների երկիր»։ Մեր մայրաքաղաքներն ավերել են երկիրը ներխուժած նվաճողները։ Իր գոյությունը մի կերպ փրկած Երևանին վիճակվեց դառնալ Սովետական Հայաստանի հաստատուն մայրաքաղաքը։

Երևանն այժմ մեր հանրապետության արտադրաուժերի, գիտության ու մշակույթի բուռն զարգացման կենտրոնն է և իր գոյությամբ նշանավորում է ազգային վերածննդի պատմական իրողությունը։ Ահա ինչու, հոբելյանական այս օրերին, խոսելով հայ ժողովրդի մեծ նվաճումների մասին և գնահատելով մեր անցած ուղին, առանձնապես շեշտում ենք Երևանի աշխատավորության և նրա կուսակցական կազմակերպության եռանդուն գործունեությունն ու դերը։

Սովետական իշխանության տարիներին մեր մայրաքաղաքն աճել ու դարձել է Սովետական Միության արդյունաբերական ու մշակութային խոշոր կենտրոններից մեկը, արդիական ինդուստրիալ քաղաք։ Աննախընթաց են Երևանի արդյունաբերության զարգացման տեմպերը։ Արդյունաբերական արտադրանքն աճել է մի քանի հարյուր անգամ։ Այսօր Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները մեկ օրում տալիս են այնքան արտադրանք, որքան ամբողջ 1928 թվականին (իսկ 1928 թվականին 7,4 անգամ ավելի են արտադրել, քան 1919 թվականին)։ 1941—1945 թվականների Հայրենական պատերազմի տարիներին Երևանը սովետական բանակի թիկունքային կարևորագույն բազաներից մեկն էր, որի արդյունաբերությունն արժանահիշատակ ներդրում կատարեց ահեղ թշնամու՝ ֆաշիստական Գերմանիայի ջախջախման գործում։

Երևանի արդյունաբերության համակողմանի զարգացումը նոր թափ ստացավ վերջին մեկուկես տասնամյակում։ 1950 թվականի համեմատությամբ ո՛չ միայն 8 անգամ աճել է նրա արտադրանքի ծավալը, այլև արդյունաբերության մեջ կառուցվածքային լուրջ փոփոխություններ են կատարվել։ Բազմաթիվ նոր ձեռնարկությունների գործարկումը, գործող ձեռնարկություններում գիտատեխնիկական նորությունների կիրառումը, արդի տեխնիկայով հների վերա-



կառուցումը, նրանց կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը մեծ չափով նպաստեցին Երևանի, որպես արդյունաբերական խոշոր կենտրոնի, դերի հետագա բարձրացմանը։

Դեռևս նախապատերազմյան շրջանում ստեղծված գլխավոր ճյուղերի՝ քիմիայի ու մեքենաշինությանը զուգընթաց, բուռն զարգացում ապրեցին ճշգրիտ մեքենաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան, էլեկտրամեքենաշինությունը, սարքաշինությունը, գունավոր մետալուրգիան, ավտոմոբիլաշինությունը։

Մայրաքաղաքի մեքենաշինության համեմատաբար նոր ճյուղերից է հաշվիչ մաթեմատիկական և ժամանակակից էլեկտրոնային սարքերի արտադրությունը, որտեղ մեծ չափերով կիրառվում են կիսահաղորդիչներ և ժամանակակից այլ նյութեր։ Եթե Սովետական Միությունում էլեկտրամեքենաշինական արդյունաբերության արտադրանքով (Ռուսաստանի Ֆեդերացիայից և Ուկրաինայից հետո), Հայաստանն այսօր գրավում է երրորդ տեղը, ապա դրանում վճռական դեր է խաղում Երևանը։ Մեր մայրաքաղաքում են արտադրվում հանրապետության թողարկած ճշգրիտ սարքերի չորս հինգերորդը և ռադիոտեխնիկական արդյունաբերության արտադրանքի մեծ մասը։ Հատկանշական է, որ այդ արտադրանքի բազմաթիվ տեսակների կոնստրուկցիան ու տեխնոլոգիան մշակվում են Երևանում՝ նրա գիտահետազոտական ինստիտուտների ու լաբորատորիաների աշխատողների ջանքերով։

Երևանում արդյունաբերության աննախադեպ զարգացման մասին է վկայում այն փաստը, որ 1969 թվականին նրա համախառն արտադրանքը կազմեց ավելի քան 1 միլիարդ 400 միլիոն ռուբլի։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի ավելի քան 60 տոկոսն այժմ թողարկում են Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները, չնայած միանգամայն ճիշտ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության ջանքերով վերջին տարիներս արդյունաբերությունն ավելի արագ է զարգանում Երևանից դուրս։ Ամբողջ երկրում հայտնի են մեր մայրաքաղաքի շարժական էլեկտրակայանները, տրանսֆորմատորները, գեներատորները, էլեկտրաշարժիչները և շատ այլ էլեկտրական մեքենաներ։

Այսօրվա Երևանը կարևոր դեր է խաղում նաև երկրի արտաքին առևտրի ասպարեզում։ Ձեռնարկությունների թողարկած 150 արտադրատեսակներ արտահանվում են Եվրոպայի և Ամերիկայի, Ասիայի ու Աֆրիկայի ավելի քան 70 երկրներ։

Երևանի արդյունաբերության աննախընթաց վերելքը պայմանավորեց քաղաքի բանվոր դասակարգի աճը։ Այժմ բանվորների թիվը հասնում է 110 հազարի։ Մայրաքաղաքի կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ ունեցող բանվորները հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, իրենց անձնվեր աշխատանքով կառուցել են ավելի քան 225 արդյունաբերական խոշոր ձեռնարկություն։

Երևանում են գործում Միության մեջ լայն ճանաչում գտած արդյունաբերական այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպես՝ Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատը, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ալյումինի, ավտոդողերի, «Պոլիվինիլացետատ» գործարանները, «Հայէլեկտրալույս» միավորումը և այլն, որոնց թողարկած տրանսֆորմատորները, գեներատորները, շարժական էլեկտրակայանները, սինթետիկ կաուչուկը, ավտոդողերը, ալյումինը, էլեկտրալամպերը և արտադրանքի բազմաթիվ այլ տեսակներ մեծ պահանջարկ ունեն նաև մեր երկրի սահմաններից դուրս։ Զարգանում, իր

արտադրանքն է ընդլայնում մեր հանրապետության ավտոմոբիլաշինության առաջնեկը՝ «Երազ» ավտոմոբիլային գործարանը։

Երևանի արդյունաբերությունը պետական պլանների հիմնական ցուցանիշները գերակատարած է դիմավորում Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը, որի համար այն III եռամսյակում կրկին շահեց ՀԿԿ Կենտկոմի, Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշը։

Քաղաքի վերելքի, նրա տեխնիկական զինվածության արգասիք է գիտատեխնիկական բարձր մակարդակ ունեցող ինժեներա-տեխնիկական անձնակազմը։ Սովետական տարիներին Երևանում կազմավորվեց տեխնիկական մտավորականության մոտ 20000-անոց ջոկատ, որը հայ ժողովրդի մեծագույն նվաճումներից է, տնտեսության զարգացման ամենահուսալի երաշխիքը։

Մայրաքաղաքը խոշոր դեր է խաղացել նաև գյուղի սոցիալիստական վերափոխման գործում։ Այսօր Երևանի բազմաթիվ ձեռնարկություններ մեծ օգնություն են ցույց տալիս Արփա—Սևան կարևորագույն կառույցի շինարարությանը։

## III

Մեր ժողովրդի քաղաքաշինության պատմության մեջ Երևանը նոր փուլ է նշանավորում։ Սովետական իշխանության օրոք մեծ գումարներ են ծախսվել Երևանի կառուցման վրա։ Կապիտալ ներդրումներն առանձնապես մեծ չափերով են աճել վերջին տասնամյակում։ Բավական է ասել, որ եթե 1921—1958 թթ. (38 տարիների ընթացքում) կապիտալ ներդրումները կազմել են 497 միլիոն ռուբլի, ապա միայն վերջին 12 տարում այն կազմել է մոտ 1 մլրդ. 500 մլն ռուբլի։ Պետք է առանձնապես ընդգծել հայ ճարտարապետների շնորհակալ աշխատանքը, որոնք կարողացել են ճիշտ լուծել Երևանի կառուցապատման թե՛ ընթացիկ, թե՛ հեռանկարային հարցերը։

Աննախընթաց զարգացել են քաղաքի բնակարանային, կոմունալ տնտեսությունները, բարելավվել է ազգաբնակչության կենցաղային սպասարկումը։ Մեծ չափերով աճել են մեր քաղաքում կատարվող բնակարանային շինարարության մասշտաբները։ Եթե 1921—1958 թթ. 38 տարիների ընթացքում Երևանում շահագործման է հանձնվել 1 մլն 288 հազար քմ ընդհանուր բնակելի տարածություն, ապա վերջին 12 տարիներում (1959—1970 թթ.)՝ 3 մլն 100 հազար քառակուսի մետր։ Բնակարանային շինարարության տեմպերով ու մասշտաբներով Երևանն առաջ է անցել բազմաթիվ զարգացած կապիտալիստական երկրների մայրաքաղաքներից։ Այստեղ ամեն տարի շահագործման են հանձնվում ավելի քան 450.000 քմ տարածությամբ բնակելի շենքեր՝ մոտ 10.000 բնակարանով։ Բնակարանային շինարարությունը ծավալվում է ինչպես զանգվածներում, այնպես էլ քաղաքի կենտրոնական մասի՝ վերակառուցման ենթակա վայրերում։

Վերջին տարիներս սկսել են վեր խոյանալ շատ բարձրահարկ շենքեր։ Անհամեմատ աճել է դպրոցական և նախադպրոցական շենքերի կառուցումը։

Պայծառ է Երևանի ներկան, բայց ավելի վեհ ու լուսաշող է նրա ապագան։ Գլխավոր հատակագծով նախատեսվող կառույցների հետևողական իրականացումը Սովետական Հայաստանի մայրաքաղաքը կդարձնի ավելի գեղեցիկ ու հմայիչ, մեր աշխատավորության համար ստեղծելով ապրելու, աշխատելու և հանգստանալու առավել հարմարավետ պայմաններ։



## IV

Ժամանակակից Երևանը մեր մեծ Միությունում ու նրա սահմաններից դուրս լայն ճանաչում ունի նաև որպես մշակույթի, գիտության խոշոր կենտրոն։ Սովետական իշխանության հաստատումից հետո Երևանը դարձավ այն հանգրվանը, ուր մշտապես խարխափ գցեցին և ստեղծագործական բեղուն գործունեություն ծավալեցին հայ մշակույթի նշանավոր գործիչները։ Երևանը դարձավ հայկական սոցիալիստական մշակույթի ձևավորման ու զարգացման հիմնական օջախը։ Դեռևս 1920 թ. դեկտեմբերին մայրաքաղաքում բացվեց համալսարան, որը նշանակալից դեր կատարեց մեր ժողովրդի հոգևոր արժեքների ստեղծման ու բազմապատկման գործում։ Համալսարանի ֆակուլտետների բազայի վրա հետագայում աճեցին ու ձևավորվեցին մասնագիտական մյուս ինստիտուտները։

Այժմ Երևանում գործում են 11 բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են մոտ 50 հազար ուսանող։ Եթե մինչև սովետական իշխանության հաստատումը միայն փոքրաթիվ հայ երիտասարդների էր վիճակվում մեկնել Ռուսաստան կամ Եվրոպայի այլ երկրները՝ բարձրագույն կրթություն ստանալու, ապա այժմ Երևանի բուհերում սովորում են ո՛չ միայն հարյուրավոր սփյուռքահայ երիտասարդներ, այլև ուրիշ երկրների շատ պատանիներ ու աղջիկներ։

Երևանը դարձել է ուսանող երիտասարդության քաղաք, որի դպրոցներում, միջնակարգ-մասնագիտական հաստատություններում ու բուհերում սովորում են ավելի քան 200 հազար մարդ։

Երևանը մեր հոգևոր կյանքի, գիտության ու մշակույթի միջնաբերդն է։ Հատկապես այստեղ են զարգանում հայրենի գիտությունը, արվեստը, մեր ողջ մշակույթը։ Մայրաքաղաքում են հիմնականում ստեղծագործում մեր գիտության, տեխնիկայի, գրականության, արվեստի բազմազան բնագավառների գործիչները, որոնք առաջ են մղում գիտությունն ու մշակութային կյանքը՝ բարձրացնելով այն նոր աստիճանի։ Այս տեսակետից անգնահատելի աշխատանք է ծավալում Հայաստանի գիտությունների ակադեմիան։

1935 թվականին ծնունդ առավ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալը, որն աճելով հնարավորություն ընձեռեց Հայրենական պատերազմի ծանր օրերին, 1943 թվականին, ստեղծելու Հայաստանի գիտությունների ակադեմիան։ Այն այսօր արդեն ընդգրկում է 32 գիտահետազոտական հաստատություն, որոնք աշխարհահռչակ գիտնական, ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանի գլխավորությամբ լուրջ ավանդ են մուծում սովետական գիտության գանձարանը՝ աստղագիտության, մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիայի, բիոքիմիայի ասպարեզներում։ Անցած տարիներին գիտությունների ակադեմիայի գիտական հաստատությունները ծավալուն աշխատանք են կատարել, մասնավորապես, հայագիտության զարգացման բնագավառում։ Մեծ են և հասարակական գիտությունների մարզում ձեռք բերված հաջողությունները, հատկապես Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման ու անցկացման ժամանակաշրջանում։

Երևանն այժմ ունի գիտահետազոտական մոտ հարյուր հաստատություն՝ համարյա 10 հազար գիտական աշխատողներով։ Գիտության բոլոր բնագավառներում մենք արդեն ունենք լուրջ նվաճումներ, անվանի գիտնականներ,

որոնք մեծ ծառայություններ են մատուցում սովետական գիտական մտքի զարգացմանը, մեր ժողովրդական տնտեսության ու հասարակական գիտությունների առաջընթացին։

Հայ ժողովրդի մշակույթի կոթողներից է Մաշտոցի անվան հին ձեռագրերի ինստիտուտը՝ Մատենադարանը, ուր խնամքով պահվում են դարերի խորքից մեզ հասած մագաղաթյա հազվագյուտ ձեռագրեր, գիտության ու արվեստի տարբեր ճյուղերին վերաբերող բացառիկ կարևոր նյութեր, մեր մատենագիրների երկասիրությունները, որոնց թիվն անցնում է 11 հազարից։

Անգնահատելի է մեր գիտահետազոտական հաստատությունների դերը տեխնիկական առաջընթացի ոլորտում։ 1956 թվականին Երևանում ստեղծվեց էլեկտրոնային մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, որի կոլեկտիվը «Արագած», «Հրազդան», «Նաիրի» մեքենաներից հետո, 1966 թվականից սկսեց մշակել և արդեն բարձր գնահատականով հանձնել է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների երրորդ սերնդի առաջնեկը՝ «Նաիրի—3-ը»։ Այն թեև ծավալով ավելի փոքր է, սակայն տեխնիկական տվյալներով ու հատկություններով մեծ առավելություններ ունի իր նախորդների համեմատությամբ։ Այդ մեքենայի համար ինստիտուտը շահել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի առաջին կարգի դիպլոմ և ոսկե մեդալ։ Ի դեպ, Երևանի «Էլեկտրոն» գործարանը, ուր իրագործվում են այդ ինստիտուտի կոլեկտիվի մտահղացումները, արտադրելով էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ , մեր հանրապետության այս մեծ հոբելյանի նախօրյակին հաղթելով միութենական մինիստրության ձեռնարկությունների մրցության մեջ, գրավեց առաջին տեղը՝ շահելով մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշը։

Ժամանակակից ֆիզիկայի կարևոր պրոբլեմների ուսումնասիրության համար վիթխարի նշանակություն ունի գիտական այնպիսի մի գիգանտ կառույցի ավարտումը, ինչպիսին Երևանի էլեկտրոնային արագացուցիչն է («Արուսը»)։ Այժմ իրենց նոր բազաներն են ստանում ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի բիոքիմիայի, առողջապահության մինիստրության սրտաբանության և սրտի վիրահատության ինստիտուտները և գիտական այլ հաստատություններ։

Երևանը միաժամանակ գեղարվեստների քաղաք է, գեղարվեստական մշակույթի զարգացման ազգային կենտրոն։

Շատ մեծ է սովետահայ գրողների ավանդը սովետական գրականության զարգացման ասպարեզում։

Սովետական իշխանության տարիներին այստեղ են ստեղծվել ու իրենց բեղմնավոր գործունեությունը ծավալել արվեստի այնպիսի օջախներ, ինչպես՝ Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնը, որի բեմում 2000-ամյա հայ թատերական արվեստը նոր, ավելի բարձր մակարդակի է հասել, Ալ. Սպենդիարյանի անվան Լենինի շքանշանակիր օպերայի և բալետի ակադեմիական թատրոնը, Ստանիսլավսկու անվան ռուսական թատրոնը, Ջաբար Ջաբարլիի անվան ադրբեջանական դրամատիկական թատրոնը և արվեստի այլ օջախներ։

Մեծ է Երևանի նկարիչների, կոմպոզիտորների, կինոարվեստի բնագավառում աշխատողների վաստակը։



# V


Իր ընդհանուր ծավալով, մեր մայրաքաղաքն աճել է և դարձել Սովետական Միության խոշոր քաղաքներից մեկը։ 1920 թ. 30000-ից, այսօր նրա բնակչությունը հասել է 767000-ի։ ՍՍՀՄ քաղաքների շարքում Երևանն աչքի է ընկնում իր աճի բարձր տեմպերով և գրավում է երկրորդ տեղը, առաջնությունը զիջելով միայն Չելյաբինսկին։ 1959 թվականի մարդահամարից հետո Երևանի բնակչությունն աճել է 51 տոկոսով։ Միայն Երևանն այժմ ունի այնքան բնակչություն, որքան ողջ Հայաստանում կար 1920 թվականին։

Երևանն այսօր հայ պետականության վեհ խորհրդանիշն է, որտեղ ըստ արժանվույն գնահատվել ու ժողովրդի սեփականությունն են դարձել մեր անցյալի մշակութային արժեքները, մոռացությունից հառնել են նվիրական շատ անուններ։ Մեր պատմական կյանքի վերածնված հիշատակներն են՝ նոր Արաբկիրն ու Խարբերդը, Կիլիկիան ու Զեյթունը, Սեբաստիան ու Մարաշը։ Դրանք մեր անցյալի ողբերգական, բայց և հերոսական պատմության կենդանի վավերագրերն են։ Քաղաքի այդ թաղամասերում բնակիչների մեծ մասը հայրենադարձներ են։

Գնահատելով մեզ հետ հասակ առած նոր Երևանը, մենք քաջ գիտակցում ենք, որ սիրել հարազատ քաղաքը, այդ ամենից առաջ նշանակում է ունենալ ազգային և քաղաքացիական արժանապատվության բարձր զգացում, չմոռանալ, որ մեր անձնական վարքագծով բնութագրում ենք ինչպես մեզ, այնպես էլ մեր քաղաքն ու ժողովրդին։ Ահա թե ինչու յուրաքանչյուրս պետք է բարձր պահենք և մեր աշխատանքային սխրանքներով բազմապատկենք ու հավերժացնենք մեր քաղաքի ու սերնդի փառքը, որպեսզի ինչպես մենք ենք երախտագիտությամբ հիշում մեր արժանավոր նախորդներին, այնպես էլ հետագայում մեզ հարգանքով ու ակնածանքով հիշեն մեր հաջորդները։ Հենց այդ էլ հայրենասիրական խորունկ այն զգացմունքն է, որը շաղկապում է մեզ ամենքիս։

# VI


Այսօր Երևանն աչքի է ընկնում նաև որպես սովետահայ ճարտարապետության նորագույն մտահղացումների և դրանց մասսայական կիրառման ինքնատիպ կենտրոն, որի ճարտարապետական ուրույն դեմքով հիացել ու ոգևորվել են շատերը։ «Ինձ համար աշխարհի ամենագեղեցիկ քաղաքը Երևանն է, որի ճարտարապետությունը տոգորված է երաժշտությամբ, որի շենքերի յուրաքանչյուր քարը թրթռում է երաժշտությամբ»,— նկատել է Երևանյան կառույցներով հմայված հնդիկ ականավոր գրող Նավթեջը։ Երևանն այժմ նոր նվաճումներով է դիմավորում Հայաստանում սովետական կարգերի հաստատման և ՀԿԿ կուսակցության կազմավորման 50-ամյակը։

Երևանի շինարարական կազմակերպությունների կոլեկտիվներն իրենց արտադրական պլանները գերակատարած են դիմավորում պանծալի հոբելյանը. մեր շինարարները մինչև նոյեմբերի 1-ը շահագործման հանձնեցին ավելի քան 300 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, մոտ 8000 աշակերտական տեղով դպրոցական շենքեր։ Շահագործման են հանձնվելու շատ այլ կառույցներ։

Հանդիսավոր օրերին կավարտվի 70 հազար տեղանոց նոր մարզադաշտի կառուցումը՝ Հրազդանի գեղատեսիլ կիրճում։ Այդ մարզադաշտը լավագույններից մեկը կլինի ո՛չ միայն Միությունում, այլև աշխարհում և հոբելյանական արժեքավոր նվեր՝ երևանցիներին։

Ժամկետից շուտ՝ նոյեմբերի 15-ին շահագործման հանձնվեց Գառնի—Երևան 35 կիլոմետր երկարությամբ ջրատարի առաջին հերթը, որը մայրաքաղաքին տվեց վայրկյանում 450 լիտր լեռնային քաղցրահամ ջուր։ Գառնիի աղբյուրների այս ջուրն իր հատկություններով չի զիջում Երևանի հին, քառասուն ակունքներից հոսող ջրին։ Տարվա վերջին, երկրորդ հերթի շահագործումից հետո, համարյա կկրկնապատկվի Գառնիից ստացվող ջուրը։ Գառնիից Երևանը կարող է ստանալ վայրկյանում ավելի քան 1200 լիտր ջուր, որի առաջին հերթը շահագործման հանձնելու համար ծախսվել է մոտ 5 մլն ռուբլի։ Դա մեր քաղաքին հուզող կենսական հարցերից մեկն է։ Չնայած 1965 թվականի 3000 լիտրի դիմաց այժմ քաղաքը ստանում է վայրկյանում մոտ 8000 լիտր ջուր, այնուամենայնիվ Երևանն ու նրա պահանջներն ավելի արագ են աճում։ Այս տարի դեկտեմբերից կսկսվի Ապարան—Երևան նոր ջրատարի կառուցումը։

Տոնական օրերին կառուցման համար կբացվի քաղաքի գլխավոր պողոտայի հիմնական մասը՝ 100 մետր լայնությամբ։ Մանկական երկաթուղուց մինչև հին մարզադաշտ ձգվող այս ամենալայն պողոտա-ճեմավայրը նոր տեսք ու հմայք կտա մեր մայր ոստանին։ Այդ կանաչ, սաղարթախիտ պողոտայում կբարձրանան հուշակոթողներ, գեղարվեստական արձաններ, կծփան ջրավազաններ, կձգվեն ծաղկանոցներ, կցայտեն շատրվաններ, որոնք ամառվա տոթին զովություն, գեղեցկություն կսփռեն շուրջ բոլորը։ Լենինի հրապարակի մոտով անցնող այս ճեմավայր-պողոտան բացելու համար մեր սովետների գործկոմները արդեն քանդել են մոտ 1000 հին, խարխուլ տներ, որոնց բնակիչները կփոխադրվեն նոր, հարմարավետ բնակարաններ։ Առաջիկայում այստեղ կկառուցվեն բարձրահարկ շենքեր։

Բացվեց օղակաձև զբոսայգու՝ Նալբանդյան փողոցից—Կնունյանցի փողոցամերձ հատվածը։ Զբոսայգին սկիզբ է առնում Լենինի պողոտայի հյուսիսային ծայրից, մասնագետների շենքի մոտի ջրավազանից, միացնում Ավ. Իսահակյանի հուշարձանը կանգնած պուրակին, ճեղքում է Աբովյան փողոցը, Ֆլորայի զբոսայգով շղթայում Նալբանդյան փողոցին, ուր բարձրանում է մեծ հեղափոխական-դեմոկրատի հուշարձանը։ Օղակաձև զբոսայգին պետհամալսարանի ու ռադիոյի շենքերի մոտով, իր մեջ առնելով Զարենցի ու Գրիբոեդովի հուշարձանները, ոլորվում, Գետառի մոտով հասնում է մինչև Հոկտեմբերյան պողոտան՝ մի լայն, կանաչ գոտի կապելով մայրաքաղաքի հյուսիսային մասին։ Սա մի հանգստավետ ու հաճելի զբոսավայր կլինի երևանցիների համար։

Ծիծեռնակաբերդում շարունակվում է եղեռնի հուշակոթողի համալիրի կառուցումը. այս տարի կավարտվի հուշակոթողի մոտից սկսվող մեծ պատը։ Վերջերս Աջափնյակում շարք մտավ հանրապետական նոր, 800 մահճակալանոց հիվանդանոցը՝ բոլոր բաժանմունքներով։ Հոբելյանի օրերին իր այցելուներին կընդունի ինտուրիստի 600 տեղանոց «Անի» հյուրանոցը։

Երևանի բարձունքին վեր ձգվող հեռուստատեսության հոյակերտ շենքը։ արժեքավոր նվեր է մայրաքաղաքի, ողջ հանրապետության աշխատավորների



համար։ Այսուհետև անհամեմատ կլավանա հեռուստատեսային կայանքի գործունեությունը։

Քաղաքի Շահումյանի շրջանում արդեն ավարտվել ու շահագործման է հանձնվել պիոներների շքեղ պալատը, որը լավ նվեր է շրջանի պատանիներին ու աղջիկներին։

Մինչև տոնը կավարտվի քաղաքից դեպի Քանաքեռ տանող մայրուղու եզրին վեր խոյացած Հոկտեմբերյան հեղափոխության կոթողը՝ 57 մետր բարձրությամբ։ Այն ավարտվում է մի հսկա, ոսկեզօծ տերևով, որը գիշերները կլուսավորվի և քաղաքը հեռուներից դիտողին կերևա իբրև բարձունքում վառվող մի վիթխարի մոմ, հավերժացնելով Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար զոհվածների հիշատակը։

Հայ ժողովրդի մեծագույն տոնի նախօրյակին կավարտվի նաև Հաղթանակի սաղարթախիտ զբոսայգում բարձրացող Հայրենական պատերազմի կոթող թանգարանը, որի պատվանդանին կանգնել է Մայր Հայաստանը— հայ կնոջ արձանը՝ հաղթանակից հետո պատյանը դրած սուրը ձեռքին։ Գեղարվեստական բարձր ճաշակով է ձևավորված թանգարանի ներսը։ Այդ նույն վայրում կավարտվեն անհայտ զինվորի գերեզմանի շրջակայքի կանաչապատումն ու բարեկարգումը։ Հայրենական պատերազմի հերոսներին անմահացնող, սովետական մարդկանց սխրանքները մարմնավորող այս հուշարձանը կդառնա մի նվիրական վայր։

Երևանն ունի աշխա՛րհի գեղեցիկ մայրաքաղաքներից մեկը դառնալու բնակլիմայական բոլոր պայմանները, որոնք թեև դժվարին, բայց խիստ նպաստավոր հնարավորություններ են ընձեռում մեր ճարտարապետներին՝ յուրահատուկ հնարներով ոճավորելու քաղաքը, օգտագործելու բարձունքների ցուցադրական հարմարությունները։ Պատկերացրեք ապակեպատ ու բարձրահարկ մի շենք Նորքի բարձունքում՝ արձաններով ու սյունաշարերով, որ գիշերը ծիածանի իր գույները կսփռի քաղաքի վրա, լցնելով այն նույնքան գունեղ ապագայի երազներով... Այսպես, ճարտարապետական մտահղացումների, քաղաքաշինական հարուստ ու բազմազան ոճավորումների համար մեր մայրաքաղաքը լայն հորիզոններ է բացում ճարտարապետների առաջ։

Տակավին վերջերս միութենական պետշինը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, կառավարության ու քաղաքի ղեկավար օրգանների հետ մեկտեղ քննարկեց մեր մայր ոստանի զարգացման հեռանկարները, մանրամասն ուսումնասիրելով քաղաքի գլխավոր նոր հատակագիծը, որը նախատեսում է մեկ միլիոն հարյուր հազար բնակչություն։ Ներկա վեցի փոխարեն, քաղաքն ունենալու է ինը շրջան՝ իրենց վարչական կենտրոններով, հրապարակներով, շենքերի ճարտարապետական յուրահատուկ ոճավորմամբ, որոնք ներդաշնակորեն կապվելու են քաղաքի սրտի՝ ճարտարապետորեն ավարտուն ու շատ ավելի հրապուրիչ դարձած Լենինի հրապարակի հետ։ Քաղաքի բարդ ռելիեֆը բավականին դժվարություններ է հարուցում, մեր տաղանդավոր ճարտարապետները կհաղթահարեն դրանք՝ գտնելով տեղանքի թելադրած ուրույն լուծումները։

Առաջիկայում նոր եռանդով կծավալվի երիտասարդական պալատի կառուցումը Քանաքեռի սարալանջում։ Հետաքրքրական, բոլոր հարմարություններով օժտված, գեղեցիկ կառույցում երիտասարդությունը կգտնի հանգիստ, գեղարվեստական ինքնագործունեության լայն ասպարեզ։ Երիտասարդական պալատը կունենա 3000 տեղանոց դահլիճ, ինքնագործունեության սենյակներ,

գրադարան-ընթերցարան, կինոդահլիճ և այլ փոքր դահլիճներ ու սենյակներ գեղարվեստական ժամանցի համար։ Պալատին կից կգործի հյուրանոցը։

Լենինի հրապարակի մոտ, կուլտուրայի տան բակում արդեն կառուցվում է պետական պատկերասրահի նոր շենքը, որը հնարավորություն կընձեռի բացառիկ արժեքավոր ցուցանմուշները նկուղային արխիվից լույս աշխարհ հանելու։

Նորքի օդասուն բարձունքում նախատեսված է կառուցել Երևանի 1000 մահճակալներով հիվանդանոցը. բնակչության բուժման գործը կդրվի ավելի բարձր մակարդակի վրա։ Առաջիկայում առավել ուշադրություն կնվիրվի մայրաքաղաքի աշխատավորության հանգստին, կուլտուր-կենցաղային սպասարկմանը, բուժօգնությանը, ամեն ինչ կարվի աշխատավորության սպասարկումը բարելավելու, կենսամակարդակը բարձրացնելու համար։

Ի դեպ, այս տարվա ընթացքում քաղաքում շահագործման է հանձնվել ավտոբուսային երկու հավաքակայան՝ 500-ից ավելի ավտոբուսի համար (մեկը՝ Շահումյանի, մյուսը՝ Նորքի զանգվածում), որոնց շնորհիվ, անշուշտ, կբարելավվի այդ շրջանների բնակիչների սպասարկումը։

Միութենական կառավարությունն արդեն մեզ հնարավորություններ է ընձեռել և նախապատրաստական աշխատանքներ են տարվում Երևանում ստորգետնյա արագընթաց էլեկտրատրանսպորտ ստեղծելու նպատակով, որն այնքան կարևոր ու կենսական է մայրաքաղաքի բնակչության համար։

Անցած տարիներին մայրաքաղաքում ձեռք բերված հաջողություններում մեծ է Երևանի կուսակցական կազմակերպության դերը, որը մոբիլիզացրել է քաղաքի աշխատավորության, սովետական ու տնտեսական բոլոր մարմինների ուժերը, կենսագործելու համար կուսակցության առաջադրած խնդիրները։ Երևանի կուսկազմակերպությունը, որը 1920 թ. վերջին, 1921 թ. սկզբներին ուներ ընդամենը 20 կուսբջիջ՝ մոտ 600 կուսանդամ-թեկնածուներով, այսօր իր մոտ 1400 սկզբնական կուսկազմակերպություններում ընդգրկում է ավելի քան 50 հազար կոմունիստ, և հանդիսանում Հայաստանի կոմունիստական կուսակցության մարտական խոշոր ջոկատներից մեկը։

Երևանի կուսկազմակերպությունն այժմ ամեն ինչ անում է իր առջև ծառացած քաղաքական ու տնտեսական բոլոր խնդիրները հաջողությամբ լուծելու, Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը և ՍՄԿԿ XXIV համագումարը արժանավայել դիմավորելու համար։

Հայ ժողովրդի ներկա և ապագա բոլոր հաջողությունների գրավականը սովետական կառավարության և կոմունիստական կուսակցության անշահախնդիր օգնությունն է։ Ահա ինչու մեր կեսդարյա հաղթանակների ու նվաճումների բարձունքից երախտագիտության առաջին խոսքը մենք ուղղում ենք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին և հավաստիացնում՝ միշտ հավատարիմ լինել սովետական ժողովուրդների անխախտ դաշինքին, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքին, կոմունիզմի վեհ գաղափարներին։





Աշոտ Հովհաննիսյան
(ՍՄԿԿ անդամ 1906 թ.)

# ՎԵՐՀԻՇՈՒՄՆԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՎԵՏԱՑՄԱՆ ՆԱԽԱՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

1920 թվականի գարնանը ես աշխատում էի Նոր Նախիջևանում (Ռոստովում), ուր վարում էի հայկական դպրոցների գործը։ Նույն այդ պահին Սովետական Ռուսաստանը բանակցություններ սկսեց Հայաստանի դաշնակցական կառավարության հետ, նպատակ ունենալով ճանաչել նրա անկախությունը, և պատրաստակամություն հայտնեց՝ գործադրելու իր ազդեցությունը քեմալական Թուրքիայում Հայաստանի հողային որոշ պահանջներ դիվանագիտական բանակցությունների միջոցով լուծելու համար։

Ինչպես գրում էր Գ. Վ. Չիչերինը 1920 թ. հուլիսի 19-ին Վրաստանի հանրապետության լիազոր Ս. Մ. Կիրովին և Հայաստանի վարչապետ Հ. Օհանջանյանին ուղղած իր հեռագրում. «Բարեկամական այն հարաբերությունը, որ Սովետական կառավարությունը ջանում է հաստատել Փոքր Ասիայի Թուրք ազգային կառավարության հետ, ի միջի այլոց օգտագործվում է այն նպատակով, որպեսզի հայ ժողովրդին հնարավորություն տրվի ձեռք բերելու Փոքր Ասիայում իր զարգացման համար բավականաչափ տերիտորիա և նրան վերջապես դուրս բերել մուսուլմանական բնակչության հետ ունեցած ճակատագրական հավետ թշնամանքից»[1]։

Կարևոր նկատելով Սովետական Ռուսաստանի այդ նախաձեռնությունը, Նախիջևանում աշխատող հայ կոմունիստները նպատակահարմար գտան ինձ գործուղել Մոսկվա, ուր արդեն ժամանել էին Հայաստանի կառավարության պատվիրակները՝ Լ. Շանթի գլխավորությամբ և Հ. Տերտերյանի ու Լ. Զարաֆյանի մասնակցությամբ։ Գործուղումը հնարավորություն տվեց ինձ ի մոտո ծանոթանալու Հայաստանի նկատմամբ Սովետական Ռուսաստանի ունեցած որոշ ասպեկտներին։ Դրան նպաստեց, մանավանդ, այն հանգամանքը, որ Սո-

[1] «Բանբեր Հայաստանի արխիվների», 1967, № 3, էջ 40։

վետական Ռուսաստանի պատվիրակության ղեկավար Բ. Վ. Լեգրանից հանձնարարություն ստացա՝ վարելու միսիայի ինֆորմացիոն բաժինը։ Այդ հնարավորություն տվեց ինձ կոնկրետ ուսումնասիրելու Հայաստանի շուրջը հանգուցավորվող հարցերը։

Սովետական Ռուսաստանի դիվանագիտական խորհրդական էր նշանակված հին բոլշևիկ Սահակ Տեր-Գաբրիելյանը, որը Բ. Վ. Լեգրանի Բաքվի հին ընկերներից էր և մեծ վստահություն էր վայելում նրա կողմից։ Մասնակցելով պատվիրակությանը՝ իր բազմակողմանի գործիմացությամբ նա մեծ ակտիվություն ցուցաբերեց, նպաստելով միսիայի ծավալած աշխատանքներին։

Սովետական Ռուսաստանի դիվանագիտական միսիան խիստ շահագրգռված էր իրեն առաջադրված խնդիրների լուծմամբ։ Եթե նրան հաջողվեր վճռահատել իմպերիալիստական սակարկությունների առարկա դարձած Հայաստանի անկախության ու նրա հողերի վերամիավորման հարցերը, դա կլիներ Սովետական Ռուսաստանի դիվանագիտության խոշորագույն հաղթանակներից մեկը։

Հարկ է նկատել, սակայն, որ սկզբից ևեթ Լ. Շանթի պատվիրակությունը բարեկամաբար չընկալեց սովետական միսիայի հակաիմպերիալիստական կուրսը։ Պատվիրակության համակրանքը որոշակիորեն թեքված էր առաջին համաշխարհային պատերազմում հաղթանակած Անտանտի կողմը։

Ե՛վ Հայաստանի վարչապետ Հ. Օհանջանյանը, և՛ նրա ցուցումներով գործող Լ. Շանթը տրամադիր չէին ընդառաջելու սովետական միսիայի ղեկավար Բ. Վ. Լեգրանի հակաիմպերիալիստական ուղեգծին։ Բանն այն է, որ դաշնակցական կառավարությունն ու նրա պատգամավորությունը Մոսկվայում շարունակում էին Հայաստանի բախտը համառորեն լծորդել պատերազմում հաղթանակած Անտանտի հետ և մեծ սպասելիքներ ունեին նրա դիվանագիտական և քաղաքական օժանդակությունից, մինչդեռ Սովետական Ռուսաստանի ձգտումն էր՝ Հայաստանը դարձնել իմպերիալիզմից անկախ չեզոք պետություն։

Սովետական Ռուսաստանի հետ բանակցելու համար Մոսկվա ժամանած դաշնակցության պատվիրակությունը խորապես տոգորված էր Անտանտի կեղծ խոստումների հավատով։ Պատվիրակությունը չցանկացավ հաշվի առնել ռեալ իրավիճակը և համառորեն մերժում էր Սովետական Ռուսաստանի բարի խորհուրդներն ու գործնական առաջարկները։

Սովետական Ռուսաստանի կառավարությունը շատ լավ էր գիտակցում, որ Սևրի խոստումներն ավելին չեն, քան իրենց պարտնյորներին մոլորության մեջ պահելու ձրի հայտարարություններ։ Անտանտի պետությունները վառ պատրանքներ էին ներշնչում դաշնակցականներին, չունենալով հայ ժողովրդին իրական օգնություն հասցնելու լուրջ դիտավորություն։ Նրանք հետամուտ էին միայն իրենց համար Թուրքիայում նպաստավոր դիրքեր ստեղծելու, լավ հասկանալով, որ հայ ժողովրդի ու նրա կառավարության նկատմամբ իրենց վարած քաղաքականությունը հավասարազոր է Հայաստանին սպառնացող բնաջնջման։ Սովետական Ռուսաստանը չէր կարող հաշտվել այն մտքի հետ, որ իմպերիալիզմի խաբկանքներին ենթարկված ժողովուրդներից որևէ մեկը, այդ թվում նաև հայ ժողովուրդը, զոհ դառնա իմպերիալիզմի ներշնչած պատրանքներին։ Նա անկեղծորեն տոգորված էր հայ ժողովրդին օգնելու մտահոգությամբ, ուստի և պատրաստակամություն էր հայտնում Թուրքիայի ու Հայաստանի միջև միջնորդի դեր ստանձնելու։ Սովետական կառավարությունն արդարացի էր համարում, որ հայ ժողովուրդը գոհացուցիչ հատուցում ստանա



Փոքր Ասիայի այն վիլայեթների հաշվին, ուր մինչև 1914 թ. հայ ժողովուրդը բնակչության մեծամասնությունն էր կազմում։

Հակառակ դիրք ուներ Թուրքիան, որն իմպերիալիստների կողմից հրավիրված էր մասնակցելու Սևրում (Ֆրանսիա) կայանալիք խորհրդաժողովին, որպես առաջին իմպերիալիստական պատերազմում պարտված կողմ։ Ճիշտ է, իմպերիալիզմին հակադրվող Թուրքիան որոշակի նվաճողական ձգտումներ ուներ Անդրկովկասի և, մանավանդ, Հայաստանի նկատմամբ։ Սակայն իրողություն է, որ Սևրը սպառնում էր զրկելու Թուրքիային նախքան պատերազմն ունեցած իր տարածքի մեծագույն մասից, ինչպես և Հայաստանում ունեցած իր որոշ հողերից և կորցնելու պատերազմից առաջ ունեցած իր մի շարք իրավունքները։ Ահա թե ինչու Անկարայում գումարված Թուրքիայի ազգային մեծ ժողովը, հավանություն տալով պետության «ազգային ուխտին», մերժում էր սուլթանի կառավարության բոլոր անհավասար պայմանագրերը, այդ թվում նաև 1920 թ. օգոստոսի 10-ի՝ Սևրում ստորագրված պայմանագիրը։ Այդ չէր խանգարում, իհարկե, որ, ելնելով թուրք նացիոնալիստական բուրժուազիայի «ազգային ուխտի» պատգամներից, քեմալականներն սկզբունքորեն մերժեին երիտթուրքերի յաթաղանից փրկված հայ ժողովրդի տերիտորիալ արդար պահանջները։

Բոլոր պարագաներում դաշնակցական կառավարությունը մերժեց Սովետական Ռուսաստանի միջնորդությամբ հայ-թուրքական հարաբերությունները կարգավորելու և Հայաստանի նկատմամբ թուրքերի ագրեսիան կանխելու հնարավորությունը։

Այս տեսակետից մասնավորապես բնորոշ էր Վրաստանում գործող դաշնակցական կառավարության ներկայացուցիչ Տ. Բեկզադյանի՝ իր կառավարությանը հղած հորդորն այն մասին, որ Հայաստանը շարունակի դիմադրել Սովետական պատվիրակությանը... մինչև որ կստացվեն Անգլիայի խոստացած զինամթերքները, որոնք Հայաստանի կառավարությանը հնարավորություն կտան պատերազմելու ո՛չ միայն Թուրքիայի, այլև Սովետական Ադրբեջանի դեմ։ Իր կառավարությանը դրա համար նա խորհուրդ էր տալիս ամրացնելու Ղազախի սահմանագլուխը։

Սակայն Բեկզադյանը շուտով ինքն իսկ հանգեց այն եզրակացության, որ Եվրոպայի անդրկովկասյան ներկայացուցիչներից ամենաազդեցիկ անգլիացի Ստոքսը պարզ ու կտրուկ հայտնում էր, թե Եվրոպան չի կարող կամ չի ուզում օգնել Հայաստանին, ուստի «...մենք պետք է ինքներս տեսնենք մեր գլխի ճարը։ Եթե մենք ուժ ունենք,— շարունակում է Բեկզադյանը,— պիտի կռվենք ու հաղթենք, եթե ոչ՝ մնում է միջոցներ ձեռք առնել որևէ համաձայնության գալ թուրքերի հետ, ինչպես, ըստ երևույթին, որոշել է դաշնակցական կառավարությունը...»։ Բեկզադյանը հաղորդում է նաև, որ նույնպիսի բացասական պատասխաններ է ստացել ինքը Թիֆլիսում գտնված եվրոպական մյուս լիազորներից ևս։

Բեկզադյանը բացասական պատասխան էր ստացել նաև ֆրանսիական լիազոր գնդապետ Կորբելից, երբ 1920 թ. հոկտեմբերի 30-ին նրան հարցում արեց Տրապիզոնում ֆրանսիացիների խոստացած դեսանտ հանելու մասին։ Կորբելն ի վերջո ասել է, որ Հայաստանի կառավարությունը կարող է գործել ըստ իր հայեցողության, քանի որ ներկա կրիտիկական վիճակում ոչ ոք տրամադիր չէ նրան հասցնելու իր խնդրած օգնությունը։

Ի վերջո Բեկզադյանը հանգել էր այն եզրակացության, որ Հայաստանի կա-

ռավարությունը պիտի համաձայնության գա տաճիկների հետ, միշտ զգուշանալով մեծամասնականներից, բայց և օգտագործելով նրանց կապերն ու երկյուղը, որ տաճիկները կարող են, շատ ընդառաջ գալով, բոլշևիկների գործերը ևս փչացնել Ադրբեջանում, Անդրկովկասում և Հյուսիսային Կովկասում։

Քանի որ դաշնակցականները հեռուն գնացող սպասելիքներ ունեին Սևրխոստացած «բարիքներից», հասկանալի է այն ձախողանքը, որին ենթարկվեց Լեգրանի միսիան Շանթի պատվիրակության հետ բանակցելիս։ Մինչ Շանթի գլխավորած պատվիրակությունը հակված էր ձգձգելու Մոսկվայում տեղի ունեցող բանակցությունների ընթացքը, Սովետական Ռուսաստանի կառավարությունը նպատակահարմար գտավ բանակցությունների շարունակությունը Մոսկվայից փոխադրել Երևան։

Բ. Վ. Լեգրանը Վ. Ի. Լենինից լիազորագիր ուներ Հայաստանի հանրապետության հետ բանակցելու և խաղաղության դաշնագիր կնքելու։ Հարգելով Հայաստանի անկախության և ինքնուրույնության պահանջը՝ 1920 թ. օգոստոսի 10-ին, Թիֆլիսում, Բ. Վ. Լեգրանը Հայաստանի կառավարության երկու նախարարների՝ Ա. Բաբալյանի և Ա. Ջամալյանի հետ արձանագրություն ստորագրեց, որով դադարեցված հայտարարվեցին Սովետական Ռուսաստանի և «Հայաստանի հանրապետության միջև տեղի ունեցող ռազմական գործողությունները»։

Սովետական Ռուսաստանի և Հայաստանի հանրապետության միջև կնքվելիք պայմանագիրը հիմնվելու էր Հայաստանի անկախության մասին սովետական կառավարության քանիցս արված հայտարարության վրա։ Այդ հայտարարության հիմքն էր Հայաստանի անկախության ճանաչումը, որն սկզբունքորեն հռչակված էր Համառուսաստանյան խորհուրդների III համագումարի որոշմամբ և 1917 թ. դեկտեմբերի 29-ին՝ Վ. Ի. Լենինի ստորագրած դեկրետով։

1920 թ. հոկտեմբերի 28-ին Սովետական Ռուսաստանի և Հայաստանի հանրապետության անունից բանակցող կողմերը Երևանում պայմանագիր ստորագրեցին Սովետական Ռուսաստանի և Հայաստանի հանրապետության միջև եղած տերիտորիալ տարաձայնությունների մասին։ Այդ բանակցության արձանագրության մեջ, մասնավորապես, նշված է, որ, աչքի առաջ ունենալով Հայաստանի աշխատավորության նյութական ծանր վիճակը, Սովետական Ռուսաստանը պարտավորվում է նրան տրամադրել երկու և կես միլիոն ռուբլի՝ ոսկով։ Բացի այդ Սովետական Ռուսաստանը պարտավորություն էր ստանձնում միջնորդել Թուրքիայի ազգային մեծ ժողովի առջև, Արևմտյան Հայաստանի մարզերի նկատմամբ եղած որոշ հարցեր բարյացակամորեն լուծելու օգտին։ Սրա հետ մեկտեղ Թուրքիայի կառավարությունը հրաժարվում էր Բրեստ-Լիտովսկի և Բաթումի պայմանագրերից։

Նկատենք, սակայն, որ այս պայմանագրի կետերը օրենքի ուժ չստացան։ Դրա պատճառը պարզապես այն էր, որ պայմանագիրն ստորագրվելուց մի օր անց, 1920 թ. հոկտեմբերի 29-ին, տեղի էր ունեցել Կարս բերդաքաղաքի անկումը, որով անհնար ու աննպատակահարմար դարձավ հիշատակված կետերի վավերացումը Սովետական Ռուսաստանի և Հայաստանի պետական համապատասխան օրգանների կողմից։

Մոսկվայի բանավարությունները Երևան փոխադրվելուց հետո իսկ Հայաստանի կառավարությունը շարունակեց բանավարությունների ընթացքը ձգձգելու իր վարքագիծը։ Մասամբ այդ տեղի ուներ Անտանտի պետություննե-



րին ընդառաջելու մտայնությամբ, որոնց ներկայացուցիչները որոշակի անհանգստություն էին ցուցաբերում Սովետական Ռուսաստանի հետ տարվող բանավարությունների առթիվ, թեպետև Հայաստանի կառավարությունը նրանց հավաստիացնում էր, որ ինքը շարունակում է հավատարիմ մնալ իր որդեգրած հակաբոլշևիկյան ուղեգծին, և զինված ուժերի հրամանատարությունը շարունակում էր ոտնձգություններ կատարել Հայաստանի և Սովետական Ադրբեջանի սահմանագծերի վրա։

Դեռևս առկախ էին մնում Սովետական Ռուսաստանի դիվանագիտության առաջ քաշած խնդիրները, երբ 1920 թ. աշնանը ռազմական բախումներ տեղի ունեցան Հայաստանի և Թուրքիայի միջև։ Ղարաբաղի և Զանգեզուրի, Նախիջևանի և Օլթիի շրջանների վերաբերյալ Թուրքիայի ունեցած նվաճողական ձգտումները հանգեցին պատերազմական գործողությունների։ Շարունակվում էին սուր ներհակությունները նաև Սովետական Ռուսաստանի և դաշնակցական կառավարության միջև, վերջինիս շեշտված արևմտաեվրոպական օրիենտացիայի հետևանքով։ 1920 թ. հոկտեմբերի 14-ին Երևանում վերսկսված բանակցությունների առթիվ Չիչերինը Հայաստանի վարչապետ Հ. Օհանջանյանին հեռագրում էր, որ դրանով սովետական կառավարությունը նպատակ ունի նպաստելու ինչպես հայ ժողովրդի, նույնպես և Մերձավոր Արևելքի հարևան ժողովուրդների խաղաղ զարգացմանը։ Սակայն Սովետական Ռուսաստանի նկատմամբ շարունակելով իր թշնամական վարքագիծը՝ դաշնակցական կառավարությունն արյունոտ հաշվեհարդար տեսավ մայիսյան ապստամբության ղեկավարների հետ։ Մայիսյան ապստամբության ղեկավարների գնդակահարումը սովետական միսիան չէր կարող չդիտել որպես իր բարեկամական մտադրությունների դեմ ուղղված ակտ։ Կառավարությունը միաժամանակ կոպտորեն ճնշում էր Հայաստանի աշխատավորության հեղափոխական տրամադրությունները, զենքի ուժով հետապնդում սովետական կողմնորոշում ունեցողներին։

Հայ-թուրքական սկսված պատերազմի ընթացքում դաշնակցական ագիտացիան արծարծում էր այն միտքը, թե Հայաստանի դեմ պայքարում է ո՛չ միայն հին Թուրքիան, այլև՝ նոր Ռուսաստանը։ Զախողված այդ ագիտացիան ճակատագրական դեր կատարեց հայ-թուրքական սկսված պատերազմի ընթացքում դաշնակցականների կրած պարտության մեջ։ Թշնամուն դիմադրելու նպատակով հայ ժողովրդին պայքարի կոչող կուսակցությունը դրանով քայքայում էր սեփական բանակը և թուլացնում նրա դիմադրական կարողությունը։ Մեծ չափով դա էլ հենց պատճառ դարձավ հայ-թուրքական պատերազմում Կարսի ու Ալեքսանդրապոլի անկմանը։

«Կարսի տակ մեր կրած անհաջողությունը,— գլխավոր զորահրամանատար Նազարբեկյանին հասցեագրված զեկուցագրում հայտնում էին Ախվերդյան և Սիլիկով գեներալները,— պետք է համարել առաջինն այն, որ գնդերը երկու երրորդ մասով լի են համոզված դասալիքներով, սպաների մեծ մասը թույլ են և կռվում չեն վայելում զինվորների վստահությունը, իսկ հրամանատարներն իրենց անշնորհք հրամաններով սպանել են զինվորների հավատը դեպի ղեկավարությունը»։ «Մեր զորքերը,— հատկապես շեշտում էր Սիլիկովը,— զորամասերից փախչում են և նույնիսկ չեն կատարում իրենց պետերի հրամանները»։ Նույն երևույթն արձանագրում էր նաև Հայաստանի վարչապետ Հ. Օհանջանյանը. «Մեր զորքերը,— հայտարարում էր նա,— չեն կամենում կռվել, ու-

կում են հաշտություն։ Այս պայմաններում անհնար է շարունակել պատերազմը»։

Նոյեմբերի կեսերից Շարուրի զորաջոկատում նույն իրողությունն էր դիտում նաև գեներալ Շելկովնիկովը։ «Զինվորները բոլորովին չեն կռվում և ամբողջ վաշտերով փախուստի են դիմում»,— գրում է նա։

Դաշնակցականների ագիտացիայի քայքայիչ ազդեցության մասին է վկայում նաև վինշտաբի պետ Կոտուրսկին, գրելով, թե «գյուղացիները Թուրքերին ցույց են տալիս խուզարկու հեծելախմբերի տեղերը»։ Նույնը վկայում է նաև ռոտմիստր Մելիք-Ադամովը, երբ հայտնում է, թե Ալեքսանդրապոլի շրջանի հայերն իրեն հանձնել են Թուրքերի ձեռքը։ Նրա մի այլ հաղորդումից տեղեկանում ենք, որ Իլխիաբի և Փոքր Քյափանակ գյուղերը պարզում են կարմիր դրոշակներ։

Ստեղծված պայմաններում հայկական զորքը դասալքված բանակի տեսք ուներ։ Ինչպես հավաստում են վավերագրերը, կռվում էին միայն խմբապետական գնդերն ու դաշնակցական կամավորները։

Պարզ է, որ հայ-Թուրքական պատերազմը ժողովրդականություն չուներ։ Կրկնվում էր Հոկտեմբերյան հեղափոխությունից ծանոթ այն երևույթը, երբ շինել հագած գյուղացիները «ոտքերով անվստահություն էին քվեարկում» իշխող ռեժիմին։

Քեմալական բանակի մասին դաշնակցական մամուլի վարած ձախողված ագիտացիան ազդել էր անգամ մայիսյան ապստամբությունից հետո դաշնակցական բանտերում մեկուսացած բոլշևիկների վրա։ Տևապես կտրված լինելով քաղաքական կյանքից՝ նրանցից ոմանք ճիշտ պատկերացում չունեին քեմալականների նկատմամբ կոմունիստական կուսակցության դիրքավորման վերաբերյալ, ուստի այդ մասին նրանք ևս դատում էին՝ սնվելով դաշնակցական մամուլի ապակողմնորոշող ինֆորմացիայով։

Նոյեմբերի 5-ին, Ալեքսանդրապոլի անկումից հետո, դուրս գալով բանտից, քաղաքի բոլշևիկներից ոմանք տակավին տարբերություն չէին տեսնում բոլշևիկների և քեմալականների միջև։ Վերջիններիս հաղթանակը նրանք սխալմամբ նպաստավոր էին համարում Հայաստանի սովետացման համար։ Նման իրադրության մեջ անսպասելի չէ, որ Ալեքսանդրապոլի մերձավոր գյուղերից մեկում՝ Քյավթառլուում, նոյեմբերի 6-ին հայտարարվում են սովետական կարգեր, կամ նոյեմբերի 16-ին Ալեքսանդրապոլում հաստատվում է Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտեի իշխանությունը։

Ստեղծվել էր մի դրություն, որը նպաստավոր չէր Թուրք զորավարի Կարաբեքիր փաշայի համար, քանի որ դաշնակցական քայքայված բանակի փոխարեն, նա գործ պիտի ունենար սովետական տրամադրություններով համակված զինվորական զանգվածների հետ։

Ալեքսանդրապոլի մարզկոմի (այդպես էր կոչվում այդ պահին Ալեքսանդրապոլի կոմիտեն)՝ Երևանի բանտի կոմունիստներին 1920 Թ. նոյեմբերի 13-ին գրած նամակից տեղեկանում ենք, որ քաղաքի անկումից հետո, բանտը լքած հայ բոլշևիկները կուսակցական բուռն աշխատանք էին տանում։ Նամակում հաղորդվում էր, որ կոմիտեն կարգավորել է կապը Թուրք կոմունիստների հետ։ Տեղեկանում ենք նաև, որ նոյեմբերի 13-ին քաղաքային միտինգում հանդիպում ունենալով Թուրք կոմունիստների հետ, նրանց հաջողվել է հերքել դաշ-



նակցականների հերյուրանքն այն մասին, Թե իբր Թուրք կոմունիստները վստահելի չեն կամ չեն հավատում հայ կոմունիստներին։

Անդրադառնալով Հայաստանում տարածված դասալքությանը, վերը հիշատակված իրենց նամակում Ալեքսանդրապոլի բոլշևիկները դասալքության հարցի արծարծումը համարում էին իրենց ագիտացիայի խնդիրներից մեկը. Այնուամենայնիվ, նրանց գրություններից որոշակի տեղեկանում ենք, որ դասալքությունը տարածվել էր բոլշևիկյան ագիտացիայից անկախ։ Պիտի եզրակացնել, որ բանակի դասալքմանը մեծապես նպաստել էր հենց դաշնակցական մամուլի հակասովետական ձախողված պրոպագանդան։ Ի վերջո մարզկոմի նամակից տեղեկանում ենք, որ Հայաստանի աշխատավորությունը համակիր է կոմունիստներին և օրեօր սպասում է սովետական կարգերի հռչակմանը։ Նամակի հեղինակները հայտնում են, որ իրենք անդուլ աշխատանք են տանում այդ ուղղությամբ, նպատակ ունենալով վերջ տալու «անպատասխանատու մաուզերիզմին» (նամակը կրում է Ալեքսանդրապոլի մարզկոմի անդամների ստորագրությունն ու կնիքը)։

Լավ հիշում եմ, որ 1921 Թվականի սկզբներին, հատուկ դեկլարացիայով հանդես գալով Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, Ալեքսանդրապոլի կուսկազմակերպության անդամները մերկացրին քեմալականների երկդիմությունը։ Նույն կարգի մերկացումներ արեցին նաև Թուրքիայի կոմունիստական կուսակցության ղեկավարները, ի պատասխան որոնց քեմալականները նրանց խեղդեցին Սև ծովում։

Հայաստանի կոմունիստական կուսակցության համար երկրում իշխանություն գրավելու խնդիրը հանդիպում էր գործնական դժվարությունների, քանի որ մայիսյան իրադարձություններից հետո կոմունիստական գործիչները գրեԹե ամբողջովին մեկուսացած էին դաշնակցականների բանտերում, և գործնական աշխատանքի համար չկային բավականաչափ ուժեր։

Այնուամենայնիվ հայտնի է, որ մայիսյան ապստամբությանը մասնակցած Իջևանի և Դիլիջանի գյուղացիների գունդը կենտրոնացած էր Սովետական Ադրբեջանի Ղազախի գավառում, ուր ագիտացիոն և կազմակերպչական եռանդուն աշխատանք էին կատարում կուսակցության արտասահմանյան բյուրոյի հրահանգիչները։

Քանի որ հայ-Թուրքական պատերազմի անբարեհաջող ընթացքը ոչնչով չէր արդարացնում դաշնակցականների սպասումները՝ սովետական Թե Թուրքական կողմնորոշում ընտրելու հարցում, դաշնակցությունը հակված էր Թուրքերի կողմը։

Պատերազմի վերջում Ղալթախչու ձորում կազմակերպվել էր հայ գյուղացիների ջարդ։ Եղել է կարծիք, Թե իբր ջարդը կազմակերպվել էր ի պատիժ Հայաստանի գյուղացիության՝ հայ-Թուրքական պատերազմում դրսևորած «խանդավառության»։ Հայտնի է, սակայն, որ այդ պատերազմում Հայաստանի գյուղացիությունը չէր դրսևորել որևէ «խանդավառություն»։ Ընդհակառակը, բոլոր նշաններից ակներև է, որ Ղալթախչու սպանդը կազմակերպել էր Թուրք հրամանատարությունը՝ ի պատիժ Հայաստանի սովետացման օգտին գեղջուկ զանգվածների ցուցաբերած խանդավառության։

Քեմալականներն ավերում էին Հայաստանը, Թալանում ու ջարդում նրա բնակչությանը, տաժանակիր աշխատանքի քշում նրան դեպի Կարսի և Էրզրու-

մի կողմերը։ Այդ բոլոր անիրավությունների մասին ժամանակին մամուլում հանդես եկան ականավոր բոլշևիկներ Ա. Բեկզադյանը և Ա. Մռավյանը։

Թե ինչ բովանդակություն կարող էր ունենալ տաճկական օրիենտացիան դաշնակցականների պատկերացման մեջ, պարզվեց Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, 1920 թվականի դեկտեմբերի 2-ին Թուրքիայի հետ նրանց կնքած Ալեքսանդրապոլի ամոթաբեր հաշտության պայմանագրից։

Այդ պայմանագրի համաձայն Հայաստանը պարտավորվում էր ետ կանչել արտասահմանում գտնվող իր դիվանագիտական պատվիրակությունները։ Զրկվելով պարտադիր զինապարտության իրավունքից՝ Հայաստանը կարող էր ունենալ միայն երկրի ներքին կարգերին հսկող ոստիկանություն։ Թուրքիան պարտավորվում էր Հայաստանից դիմում ստանալու դեպքում ռազմական օգնություն տրամադրել նրա արտաքին ու ներքին անվտանգությունն ապահովելու համար։ Կրճատվելու էր հայկական բանակի մարդակազմը։ Հայաստանը կարող էր ունենալ միայն 1500 զինվոր, 8 թնդանոթ և 20 գնդացիր։ Թուրքիան իրավունք ուներ, հարկ եղած դեպքում, օգտվելու Հայաստանի երկաթուղիներից և այլ ճանապարհներից։

Ապավինելով Սովետական Ռուսաստանի կարմիր բանակին և դաշնակցականների դեմ ապստամբած հայ ժողովրդին՝ Հայաստանի հեղկոմը ո՛չ միայն մերժեց Ալեքսանդրապոլի անվավեր պայմանագիրը, այլև հասավ այն բանին, որ Թուրքիան հրաժարվի Հայաստանի ռազմակալման հավակնությունից։

Ալեքսանդրապոլի պայմանագրի իմաստը բացահայտվեց 1921 թ. դաշնակցականների կազմակերպած փետրվարյան ավանտյուրայի օրերին, երբ «Հայրենիքի փրկության կոմիտեի» օրգան «Ազատ Հայաստան» թերթն ազդարարեց, թե «հայ և թուրք ժողովուրդներն իրենց անկախությունն ապահովել կարող են միայն Տաճկաստանի բարեկամությունը շահելով»։ Իրերի բերումով, գրում էր այդ թերթը, «Անդրկովկասի ժողովուրդների քաղաքական ազատության իրական պաշտպանը կարող է լինել միայն Տաճկաստանը»։

Այս ազդարարությունը դաշնակցական գաղափարախոսության քաղաքական սնանկության ցուցանիշն էր։ Քանի որ իրենց ողջ գործունեության ընթացքում դաշնակցականները միայն թուրքերի դեմ վարած պայքարի մեջ էին տեսել հայ ժողովրդի ազատության երաշխիքը, ապա բերված ազդարարությունը կարող է և պետք է ընկալվի որպես նրանց նախընթաց գործունեության վրա քաշված սև խաչ։

Հայ ժողովրդի քաղաքական ազատագրման և ազգային վերածնության իրական երաշխիք հանդիսացավ միայն 1920 թվականի նոյեմբերի 29-ի լուսաբացին Հայաստանում հաստատված սովետական իշխանությունը։

Թեև իրերի բերումով Սովետական Ռուսաստանի պատվիրակության գործունեությունը մեծապես նպաստում էր Հայաստանի սովետացմանը, այնուամենայնիվ, քանի որ այդ չէր մտնում Սովետական Ռուսաստանի անմիջական խնդիրների մեջ, Հայաստանի կառավարության պրոիմպերիալիստական դիրքավորման պատճառով նա ի վիճակի չեղավ գլուխ բերելու հայ-թուրքական հարաբերությունների այն բարելավումը, որին սկզբից ևեթ անկեղծորեն ձգտում էր Սովետական Ռուսաստանը։

Հակառակ պատվիրակության ցանկության՝ օր առաջ սկսելու դաշնակցական կառավարության հետ վարելիք բանակցությունները, հարկադրված լինելով Թիֆլիսում սպասել՝ Երևան մեկնելու համար դաշնակցական կառավարության թույլտվությունն ստանալու, պատվիրակությունը Երևան հասավ միայն 1920 թ. հոկտեմբերի 11-ին, երբ հայ-թուրքական պատերազմի ընթացքն արդեն բավականաչափ թուլացրել էր դիվանագիտական բանակցությունների նշանակությունը, և Հայաստանում օրակարգի խնդիր էր դարձել նրա սովետացման հարցը։



Դաշնակցականների տիրապետության անկման հետ կապված մեր վերհիշումներից ակներև է, որ հայ ժողովրդի ազգային կյանքն այդ նույն պահին թևակոխում էր հեղափոխական վերածննդի նոր դարաշրջան։ Արդյոք նույնը չե՞ր վկայում նաև այն իրողությունը, որ քսան թվականների գարնանը եղբայրական Ադրբեջանի սովետացումն առիթ դարձավ Հայաստանում բռնկված համաժողովրդական ապստամբությունների, որոնք արդյունք էին դաշնակցական իշխանության դեմ ձերբազերծված բանվորական ու գյուղացիական զանգվածների պոռթկումների։ Պոռթկումներ, որոնք զսպելու մարմաջով տարված դաշնակցական ղեկավարները կանգ չառան այն դաժան միջոցների առաջ, որոնցով նրանք ջանում էին արյան ճապաղիներում խեղդելու իրենց իշխանության դեմ ուղղված մայիսյան համաժողովրդական շարժումները։

Ինչ խոսք, որ օբյեկտիվորեն Հայաստանի բանվորների ու գյուղացիների հեղափոխական ձերբազերծմանն էր նպաստում նաև նույն տարվա աշնանը երկրում սկսված հայ-թուրքական կռիվը, որն ավերի ու քայքայման, սովի ու քաղցի, վարակի ու մահտարաժամի, բռնի գաղթավարության ու հարկադրական աշխատանքի էր դատապարտում Հայաստանի աշխատավորությանը։ Այնուամենայնիվ, այդ պահին հայ ժողովրդի մեջ խմորվում էր այն գիտակցությունը, որ միայն ժողովրդական զանգվածներին ծառայող սովետական իշխանությունը կարող է վերջ դնել մաուզերիզմի արկածախնդրական շահատակություններին, նոր ուժ ու ավիշ ներարկելով երկրին, նպաստելով նրա նյութական ուժերի աճին ու բարոյական կարողությունների վերածննդին։

Ի վերջո, Հայաստանի սովետացումը մենք պարտական ենք այն ուժերին, որոնք 1920 թվականի վերջերին կոփված մայիսյան մարտերում և կուռ կազմակերպված Հայաստանի կոմունիստական կուսակցության շարքերում, Ռուսաստանի կարմիր բանակի ակտիվ սատարումով՝ սովետական հանրակարգ հաստատեցին մեր երկրում։





*Կ Ի Իոաննիսյան*

*Լ Հ. Թորոսյան*

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՇԵՄԻՆ

Հայաստանը Սոցիալիստական Խորհրդային Հանրապետություն հռչակվեց Հայաստանի կոմունիստական (բոլշևիկյան) կուսակցության 1920 թվականի նոյեմբերի 29-ի դեկլարացիայով:

Նորաստեղծ սովետական պետությունը ոչինչ չուներ ժառանգելու կործանման դատապարտված դաշնակցական կառավարությունից: Հայաստանի հեղափոխական կոմիտեն իր առաջին օրենսդրական ակտերով, վերացնելով դաշնակցական պետական ապարատն իր ողջ ատրիբուտներով, այն փոխարինեց նոր, սովետական, սոցիալիստական պետական հաստատությամբ:

Խորհրդային Հայաստանի, հանձին Հայհեղկոմի, առաջին և բախտորոշ ակտը վերոհիշյալ դեկլարացիան էր, որն առ ոչինչ հռչակեց դաշնակցական բուրժուա-նացիոնալիստական կառավարության ողջ պետական սիստեմը: Դեկլարացիան դաշնակցական Հայաստանի արտաքին և ներքին քաղաքականությունը բնորոշում էր հետևյալ կերպ՝ «...և որքան ավանտյուրիստական է եղել դաշնակցական Հայաստանի արտաքին քաղաքականությունը, այնքան խիստ է եղել նրա ներքին քաղաքականությունը, որն իր տափկարությամբ ու վայրենի արտահայտությունների շնորհիվ՝ երկիրն ամայացրել է, ավեր դարձրել»:

Այնուհետև դեկլարացիան հիշատակում է Ռուսաստանի խորհրդային իշխանության անշահախնդիր օգնության, Հայաստանում գոյություն ունեցող ազգամիջյան բախումներն ընդմիշտ վերացնելու և ժողովուրդների եղբայրության հաստատման, հողը գյուղացիությանը տալու, համաժողովրդական ունեցվածքի օրինականացման, Հայաստանի պետական պարտքերը Անտանտին՝ ի չիք հայտարարելու և Խորհրդային Ադրբեջանի եղբայրական օգնության մասին:

Դեկլարացիան ստորագրել են Հայհեղկոմի նախագահ Ս. Կասյանը, անդամներ Ա. Նուրիջանյանը, Ա. Բեկզադյանը, Ի. Դովլաթյանը, Ա. Մռավյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը:

Նորաստեղծ իշխանության առաջնահերթ խնդիրն էր ամրապնդել գրաված իշխանությունը: Այս նպատակով 1920 թվականի դեկտեմբերի 2-ին հրատարակվում է ՀՍԽՀ ամբողջ բանակի հրամանատարի և ՌՍՖԽՀ կոմիսար Սիլինի № 1 հրամանը «Հայաստանի բանակի վերակազմության մասին», ըստ որի բանակը կոչվեց «Խորհրդային Հայաստանի կարմիր բանակ», հրամանատարական կազմը մնում էր իր տեղում և վերացվում էր զորքի բաժանումը սպաների և սոլդատների: Բոլոր զորամասերը մնում էին իրենց տեղերում, բոլոր կարմիրբանակայինները, մարտիկից մինչև հրամանատարը, պարտավոր էին կարմիր բանակում պահպանել խիստ հեղափոխական կարգապահություն: Զորամասերում նշանակվում էին քաղաքական կոմիսարներ, որոնց ստորագրությամբ վավերացվում էին զորամասերի պետերի հրամանները:

Հայհեղկոմի 1920 թվականի դեկտեմբերի 6-ի հրամանով տապալված կառավարության՝ արտասահմանում եղած մի քանի դիվանագիտական ներկայացուցիչները և միսիաները զրկվեցին իրենց լիազորություններից:

Տապալված կառավարության մարտունակ ուժերը լրիվ վնասազերծված չէին: Ուստի, 1920 թվականի դեկտեմբերի 6-ի դեկրետով հիմնվում է Արտակարգ հանձնաժողով՝ Կ. Այվազյանի նախագահությամբ, որի ֆունկցիան էր՝ անողոք պայքար մղել հակահեղափոխության, սպեկուլյացիայի և պաշտոնեական հանցագործությունների դեմ:

1920 թ. դեկտեմբերի 9-ին դեկրետ է հրապարակվում պետական լեզվի մասին, որի համաձայն հանրապետության սահմաններում պետական լեզուն ճանաչվում է հայերենը: Իսկ մուսուլմանաբնակ վայրերում՝ հայերենի հետ միասին, նաև ադրբեջաներենը:

Ներքգործժողկոմի դեկտեմբերի 13-ի հրամանով վերացված համարվեցին դաշնակցական կառավարության «նահանգապետությունները», քաղաքային ինքնավարությունները, գավառական կոմիսարները, ներքին գործոց նախարարության արտակարգ լիազորները, միլիցիայի տեսուչները, նահանգական ատյանները, հանրապետության միլիցիայի պահեստային ուժերը: Իրենց պաշտոններից արձակվեցին այդ հիմնարկությունների պաշտոնյաները: Դեկտեմբերի 14-ի դեկրետով սահմանվեց ՀՍԽՀ ներքին գործերի ժողովրդական կոմիսարիատի իրավասությունը, որը հանրապետության բարձրագույն վարչական մարմինն էր, և որի միջոցով Հայհեղկոմը կառավարում էր երկիրը:

Արդժողկոմ Ս. Բաղդատյանի դեկտեմբերի 18-ի հրամանով լուծարվեցին հանրապետության սահմաններում գործող բոլոր դատական հաստատությունները: Իրենց պաշտոններից արձակվեցին դատական բոլոր պաշտոնյաները, բացի քննիչներից և դիվանագիտական ծառայողներից: Անավարտ գործերը հանձնվեցին նորաստեղծ ժողդատարաններին և հեղափոխական տրիբունալին:

Նույն ժողկոմի դեկտեմբերի 22-ի հրամանով ՀՍԽՀ սահմաններում հաստատվեցին ժողովրդական դատարաններ և նախաքննական գործերի համար հատուկ քննիչ հանձնաժողով: Նորաստեղծ հանրապետության ռազմահեղափոխական կոմիտեն, հին կառավարության օրով կատարված անարդարություններին վերջ տալու նպատակադրումով, դեկտեմբերի 20-ին հրապարակում է դեկրետ ներման մասին, պատժից ազատելով դաշնակցական բանակի դասալիքներին, նրանց թաքցնողներին, վարչական կարգով կալանավորվածներին, մինչև 17 տարեկան անչափահասներին, իսկ մնացած կալանավորների սահմանված պատժի ժամկետը կրճատում է երկու երրորդով:

Դատարանները վերակազմելու հետ միաժամանակ, Հայհեղկոմն իր դեկտեմբերի 21-ի դեկրետով վերացրեց ռուսաստանյան կայսրության «Հավաք օրինաց»-ի գործողությունը, և ՀՍԽՀ սահմաններում գործող օրենքներ ճանաչեց Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Խորհրդային Հանրապետության օրենքներն այն փոփոխություններով հանդերձ, որ կիրառելու էին Հայաստանի Հեղկոմը և իրավասու այլ իշխանություններ:

Հայհեղկոմի դեկտեմբերի 12-ի, 16-ի և 17-ի հրամաններով ու դեկրետներով ռազմական դրության մեջ են հայտարարվում երկաթուղիները, ավտոտրանսպորտը, ռադիոկայանը, փոստը, հեռագիրը և հեռախոսը:

Դեկտեմբերի 10—28-ը ազգայնացվում են ՀՍԽՀ տերիտորիայի վրա գտնվող պետական և մասնավոր բոլոր բանկերը, ստեղծվում է Սովետական Հայաստանի պետական բանկը: Դեկտեմբերի 17-ի դեկրետով կուլտուր-կրթական բոլոր հիմնարկությունները՝ դպրոցները, հնագիտական և ազգագրական թանգարանները, մատենադարաններն ու տպարաններն իրենց ամբողջ շարժական և անշարժ գույքով համարվում են պետական սեփականություն և հանձնվում լուսավորության ժողկոմատի տնօրինությանը: Նույն օրվա մի այլ դեկրետով մեկընդմիշտ կազմավորվում է Երևանի համալսարանը՝ վերակոչվելով *Երևանի ժողովրդական համալսարան:*

Հայհեղկոմի դեկտեմբերի 28-ի դեկրետով պետականացվում են արքունական, հողաբաժնետրային, եկեղեցական, վանքային, վակուֆային, մեչետային, իրավաբանական անձերի և մասնավոր հողերը ու հայտարարվում են ՀՍԽՀ սեփականություն, որոնք հանձնվում են գյուղատնտեսության կոմիսարիատին ենթակա պետական հողային ֆոնդին, իսկ 1921 թվականի հունվարի 10-ի հրամանով պետականացվում և ժողովրդական սեփականություն են հայտարարվում ՀՍԽՀ տերիտորիայում գտնվող բոլոր անտառները ու դրանց տնտեսական օգտակարություն

մեկտեղ կարողացել է զբաղվել օրենսդրության կարգավորման հարցերով:

1921 թվականի նոյեմբերի 29-ին լույս են տեսնում «ՀՍԽՀ դեկրետների և հրամանների ժողովածուի» երկու պրակները (որոնք իրենց մեջ ընդգրկում են 1920 թ. նոյեմբերի 29—1921 թ. օգոստոսի 1-ը Հայհեղկոմի և ՀՍԽՀ ժողկոմխորհի կողմից ընդունված դեկրետներն ու հրամանները, ինչպես և առանձին ժողկոմատների նորմատիվ բնույթի որոշ հրամաններ) ։ 1921 թվականի օգոստոսի 1-ից հետո, մինչև դեկտեմբերի 31-ն ընդունված դեկրետների և որոշումների հավաքածուն: Հավաքածուի այս հատորից սկսած սիստեմատիկաբար լույս են տեսնում հետագա տարիներին կառավարության ընդունած օրենսդրական և նորմատիվ ակտերը:

Հանրապետությունում հեղափոխական կարգ ու հասարակական ապահովություն հաստատելու համար, Հայհեղկոմի և ներքգործժողկոմի 1921 թ. հունվարի 21-ի հրամանով, ներքին գործոց ժողկոմին իրավունք է վերապահվում հանրապետության սահմաններից արտաքսելու հեղափոխական կարգին և հասարակական ապահովությանը վտանգ սպառնացող անձանց ու մաուզերիստներին, կողոպտիչներին, գողերին, կեղծարարներին, գողացված իրեր գնողներին, գաղտնի որջեր և անառականոցներ պահողներին, ակնհայտ հակահեղափոխականներին և սպեկուլյանտներին:

Այդ նույն ժամանակամիջոցում աստիճանաբար էքսպրոպրիացիայի (սեփականազրկման) են ենթարկվում նախկին արդյունաբերողների և խոշոր առևտրականների ձեռնարկությունները: Հայհեղկոմի 1920 թ. դեկտեմբերի 17-ի դեկրետով պետականացվում է նախկին Շուստովի էլեկտրակայանը: Ժողկոմխորհի 1921 թ. օգոստոսի 3-ի որոշմամբ պետականացվում են Սարաջևի, Կ. Աֆրիկյանի և Հ. Սողոմոնյանի կոնյակի, սպիրտի, գինու և օղու գործարանները, օգոստոսի 11-ի որոշմամբ՝ Գաբրիելյանների և Սահակյանի կաշվի գործարանները, օգոստոսի 25-ին՝ Դիլիջանում գտնվող Թումանյանի կալվածքը, Ղարաքիլիսայում՝ Թայիրյանի և հինգ այլ առևտրականների այգիները:

Դրանց զուգահեռ պետականացվում են հոգևոր հաստատություններին պատկանող կուլտուր-կրթական հիմնարկությունները. դեկտեմբերի 17-ի դեկրետով և լուսժողկոմի նույն օրվա երկու հրամաններով պետականացվում են հանրապետության մեջ գտնվող հոգևոր հաստատություններին պատկանող կուլտուր-կրթական բոլոր հիմնարկությունները ու նրանց գույքը: Լուսժողկոմի այդ նույն հրամանով Հայաստանի աշխատավոր ժողովուրդների սեփականություն հայտարարվեցին էջմիածնի վանական ճեմարանը, հնագիտական և ազգագրական թանգարաններ, մատենադարանն ու տպարանը: Լուսժողկոմի դեկտեմբերի 31-ի հրամաններով՝ պետական, հասարակական և մասնավոր դպրոցական հաստատություններում արգելվում էին կրոնական առարկաների դասավանդումը և կրոնական դավանանքի ծիսակատարությունները. հոգևոր դասին պատկանող անձանց չէր թույլատրվում պաշտոնավարել դպրոցներում և կուլտուր-կրթական հաստատություններում:

Ներքին գործոց ժողկոմ Դովլաթյանի 1921 թ. հունվարի 21-ի հրամանով վերացվում են Հայաստանում գոյություն ունեցող դասերը, դասային բաժանումները, դասային արտոնությունները, ամեն տեսակ կոչումները՝ ազնվականի, վաճառականի, կալվածատիրոջ, բեկերի, խաների, իշխանների և այլն: Ժողովրդի պարենավորման ծանր կացությունը թեթևացնելու, անաշխատունակներին, հակահեղափոխության և տարերային չարիքների հետևանքով անխնամ մնացած մանուկներին, ինչպես նաև հակահեղափոխությունից տուժածներին նյութական և պարենային օգնություն ցույց տալու համար, Հայաստանի խորհրդայնացումից 18 օր անց, հրապարակվում է սոցապժողկոմ Հ. Կոստանյանի 1920 թ. դեկտեմբերի 16-ի հրամանը՝ քաղաքային և գավառական հեղկոմներին կից սոցապբաժիններ հիմնելու մասին:

Ինչպես մյուս ժողկոմատները, այնպես էլ աշխժողկոմատը, որի առաջին ժողկոմը Հայկազ Կոստանյանն էր, հիմնվել էր Հայաստանի խորհրդայնացումից անմիջապես հետո: Առաջին ակտը աշխատանքային հարցի մասին հրապարակվեց 1920 թվականի դեկտեմբերի 22-ին: Դա «Դժբախտ դեպքերի հաղորդագրման մասին» հրամանն էր, որի համաձայն պարտադրվում էր մասնավոր առևտրա-արդյունաբերական ձեռնարկությունների տերերին և օտարի (վարձու) աշխատանքից օգտվող անձանց յուրաքանչյուր դժբախտ դեպքի մասին երեք օրվա ընթացքում հայտնել աշխժողկոմատին: Այնտեղ նախազգուշացվում էր, որ հրամանը չկատարող անձինք կպատժվեն հեղափոխական օրենքի խստությամբ:

Աշխժողկոմատի որոշ հրամաններ ստորագրում էր նաև արհեստակցական միությունների կազմբյուրոյի նախագահը՝ Հայկ Ազատյանը: Այդ հրամանները, որ արձակվել են 1921 թ. հունվարի 4—21-ը, վերաբերել են «Օրով աշխատանքների վարձատրության մասին», «Ձեռնարկություններին ու հիմնարկություններին օրապահիկ տալու կարգի մասին», «Տարիֆա-գնահատողական հանձնախմբերի կազմակերպության և գործունեությունների մասին», «Բանվորների և ծառայողների աշխատավարձի վճարման մասին», «Աշակերտ բանվորների տարիֆի մասին», «Արտաժամյա աշխատանքների վարձատրության մասին», «Արհեստակցական կազմակերպությունների պատասխանատու աշխատավորների տարիֆի մասին» և այլն:

1921 թվականի օգոստոսի 3-ին հրապարակվում են «Փոխադրական պահկության (պարհակի) մասին» դեկրետը, իսկ օգոստոսի 10-ին՝ «Աշխատանքի պահկության (պարհակի) մասին» դեկրետը: Պարհակից խուսափողները ենթարկվում էին քրեական պատասխանատվության ժողդատարանի կողմից, ծանրացուցիչ դեպքերում՝ հեղափոխական տրիբունալի: 1921 թվականի սեպտեմբերի 21-ին ժողկոմների խորհուրդը Ա. Մյասնիկյանի, աշխժողկոմ Ս. Խաչյանի, արդժողկոմ Դ. Շահվերդյանի ստորագրությամբ դեկրետ է հրապարակում «Իրավաբանների և դատական հաստատությունների ծառայողների տոմարագրման ու մոբիլիզացիայի մասին»: Դեկրետը նպատակ ուներ արդարադատության ժողովրդական կոմիսարիատը և նրան ենթակա տեղական մարմինները ապահովել իրավաբանական կրթությամբ և փորձառու անձնակազմով:

1921 թ. սեպտեմբերի 24-ի դեկրետով հիմնըվում է «Ժողովրդական դատարանների հատուկ նստաշրջան»՝ բարդ ու կարևոր գործերի քննության համար: Ժողկոմխորհի և արդարադատության ժողկոմատի 1921 թ. հոկտեմբերի 19-ի համատեղ որոշմամբ ընդունվում է «Բարձրագույն դատական վերահսկողության ժամանակավոր կանոնադրություն»: Այդ կանոնադրությամբ դատական օրգանների գործունեության վերահսկողությունը վերապահվում էր արդարադատության ժողկոմատին: Կանոնադրությունը քրեական գործերի վերաբերյալ սոսկ պրոցեսուալ նորմեր էր պարունակում: Փաստորեն վճռաբեկ ատյանի ֆունկցիաներ էին տրվում արդժողկոմատին՝ ժողդատարանների և հեղափոխական տրիբունալների քննած գործերի վերաբերյալ:

Ժողկոմխորհը 1921 թ. նոյեմբերի 9-ին դեկրետ է ընդունում «Մեղադրանքի և պաշտպանության կազմակերպման մասին»: Ժողովրդական դատավորների կանոնադրության 38—48 հոդվածներում սահմանվում են մեղադրողների (դատախազների) և պաշտպանության (փաստաբանների) իրավունքներն ու պարտականությունները:

Ժողովրդական դատավորների խորհրդին և արդարադատության գավառական բաժիններին կից հիմնվում են մեղադիրների (դատախազների) և պաշտպանների կոլեգիաներ, որոնց անդամներին նշանակում և արձակում էր արդժողկոմը՝ ժողդատարանների խորհրդի և արդարադատության գավառական բաժնի առաջարկությամբ: Մեղադիրների և պաշտպանների կոլեգիայի անդամների վարձատրությունը նշանակում էր դատարանը և գանձում դատապարտյալներից ու կողմերից և մուծում պետական գանձարան, իսկ մեղադիրները և պաշտպանները համարվում էին պետական ծառայողներ, ստանում էին ռոճիկ՝ ժողդատավորների համար սահմանված չափով:

ՀՍԽՀ Կենտգործկոմի 1922 թ. մարտի 6-ի դեկրետով Երևանի բարձրագույն վճռաբեկ հեղափոխական և Ալեքսանդրապոլի հեղափոխական տրիբունալները վերացվում են: Կենտգործկոմին կից, որպես վճռաբեկ ատյան, հիմնվում է երեք հոգուց բաղկացած կոլեգիա:

Հայաստանի խորհուրդների առաջին համագումարը, 1922 թվականի փետրվարի 2-ին, Սաքո Համբարձումյանի նախագահությամբ, ընդունում է Հայաստանի Սոցիալիստական Խորհրդային Հանրապետության առաջին սահմանադրությունը (Հիմնական օրենքը):

1922 թ. ապրիլի 4-ին հաստատվում է գյուղական խորհուրդների կանոնադրությունը: 1922 թ. հոկտեմբերի 2-ին Հայաստանի կենտգործկոմը հաստատում է քաղաքային և գյուղական խորհուրդների ընտրության և գավառակային ու գավառային խորհուրդների համագումարների հրահանգը: 1922 թ. հոկտեմբերի 31-ին կենտգործկոմը հաստատում է քաղաքային խորհուրդների կանոնադրությունը:

Այս ակտերի հրապարակման հետ միաժամանակ 1922 թվականին տեղերում կազմակերպվում են աշխատավորների պատգամավորների խորհուրդներ և դրանով գյուղական ու գավառային հեղկոմների պատմական միսիան ավարտված է համարվում Հայաստանում:





Ս. Գ. Սարգսյան

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿԱՆԽԱԳԾՄԱՄԲ

Նոր արտադրաուժերի ստեղծման, բնական հարստությունների կոմպլեքսային օգտագործման, առաջավոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման հիմքը էլեկտրաէներգիան է։ Կանխատեսելով էլեկտրաէներգիայի վերափոխիչ մեծ ուժը, Վ. Ի. Լենինը գրել է. «էլեկտրիֆիկացիան կվերածնի Ռուսաստանը... սովետական կարգերի հիման վրա կապահովի մեր երկրում կոմունիզմի հիմքերի... կուլտուրական կյանքի հիմունքների վերջնական հաղթանակը» (Երկեր, հ. 30, էջ 468)։ Էլեկտրիֆիկացման լենինյան պլանն արտացոլված էր երիտասարդ սովետների երկրի առաջին պլանում՝ ԳՈԷԼՌՈ-ում, որը 1920 թ. արժանացավ սովետների համառուսաստանյան VII համագումարի հավանությանը։

Հանդիսանալով մեր դարաշրջանի խոշորագույն գիտնականը, Վ. Ի. Լենինը դեռևս քաղաքացիական կռիվների ծանր օրերին անրջում էր Ռուսաստանի ողջ էկոնոմիկան հաստատել էլեկտրական հզոր բազայի վրա։ Նա իր անուրջների իրագործմանը ձեռնամուխ եղավ հռչակավոր ԳՈԷԼՌՈ-ի պլանի մշակմամբ։ Դա փաստորեն սոցիալիստական հասարակության գլխավոր հիմքի արկանումն էր։

Քաջ գիտակցելով նոր կյանքի կառուցման լենինյան այդ պլանի վճռական նշանակությունը հանրապետության քայքայված տնտեսության վերականգնման և արագ զարգացման համար, Հայաստանի կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ղեկավարների գերագույն հոգսերից մեկը՝ երկիրն էլեկտրաէներգիայով սնուցելն էր։

Թե որպիսի վճռական դեր է խաղացել էլեկտրիֆիկացիայի լենինյան պլանի անշեղ կենսագործումը, դա կտեսնենք այժմ, հետադարձ մի հայացք նետելով Սովետական Հայաստանի կտրած կեսդարյա ուղիների վրա։ Այս բնագավառում ևս ցայտուն կերպով դրսևորվում են լենինյան մեծ գաղափարների ստեղծարար ուժը, նրանց ներգործման պրակտիկ արդյունքները. երկրի տնտեսական կյանքի արագ զարգացման մարզում։

Այժմ շոշափելի փաստերով զննենք այն վիթխարի հաջողությունները, որոնք անցած 50 տարիներում նվաճված են Հայաստանի աշխատավորների ջանքերով։

Նախասովետական Հայաստանում արտադրաուժերը չափազանց թույլ էին զարգացած։ Դրա էկոնոմիկայի հիմքը գյուղատնտեսությունն էր։ 1913 թվականին Հայաստանում աշխատում էին 13 մանր էլեկտրակայաններ՝ 3,1 հազար կվտ ընդհանուր կարողությամբ, որոնց տարեկան արտադրանքը կազմում էր 5,1 մլն կվտ ժամ, այդ թվում՝ 4,8 մլն կվտ ժամ արտադրանք տալիս էին հիդրոէլեկտրակայանները։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և դաշնակների կառավարման ժամանակաշրջանում Հայաստանի էներգետիկան, ինչպես և ամբողջ էկոնոմիկան, անկման հասավ։ Էլեկտրակայանների կարողությունները 1919 թ. իջան մինչև 1,5 հազար կվտ-ի, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1913 թ. համեմատությամբ, կրճատվեց 3 անգամ և կազմեց 1,7 մլն կվտ ժամ։

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո հանրապետության աշխատավորները ձեռնամուխ եղան քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնմանը և նոր գործարանների, ֆաբրիկաների ու այլ օբյեկտների շինարարությանը։

Քանի որ Հայաստանը վառելիք չուներ, ուստի հանրապետության էներգետիկայի զարգացումը կարող էր խարսխվել տեղական ջրային ռեսուրսների օգտագործման վրա։ Այդ հանգամանքը նկատի ունենալով, Հայաստանի ԿԿ Կենտկոմը 1923 թվականին որոշում ընդունեց Երևանում առաջին հիդրոէլեկտրակայանի շինարարության մասին։

Հանրապետության էներգետիկայի առաջնեկը՝ Երևանի 4,5 հազար կվտ կարողությամբ ՀԷԿ-ը, շահագործման հանձնվեց 1926 թվականին, իսկ մեկ տարի անց՝ Լենինականի ՀԷԿ-ի երկու ագրեգատները, որոնց թողարկումով հանրապետությունում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1928 թվականին հասավ 20,6 մլն կվտ ժամի, այսինքն՝ նախապատերազմյան արտադրանքի մակարդակը գերազանցվեց 4 անգամ։ Սակայն այն չէր կարող բավարարել հանրապետության ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքները էլեկտրաէներգիայի նկատմամբ։ Երկրի էներգիայի պահանջմունքները լրիվին բավարարելու նպատակով 1927 թվականին սկսվեց Հայաստանի առաջին խոշոր էլեկտրակայանի— Ձորագէսի կառուցումը՝ 22,5 հազար կվտ կարողությամբ։ 1932 թվականի նոյեմբերին Ձորագէսը տվեց առաջին հոսանքը։

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար որոշիչ նշանակություն ունեցավ Հայաստանի ԿԿ Կենտկոմի ու կառավարության որոշումը՝ Սևանա լճի ջրի դարավոր պաշարների օգտագործման մասին։

Ելնելով Արարատյան դաշտի գյուղատնտեսության՝ ոռոգելի ջրի, իսկ արդյունաբերության՝ էլեկտրաէներգիայի աճող պահանջներից, 1933 թ. սկսվեց Սևանա լճի ջրի դարավոր պաշարների օգտագործումը։ Միաժամանակ սկսվեց առաջին խոշոր (102 հազար կվտ կարողությամբ) հիդրոէլեկտրակայանի՝ Քանաքեռգէսի շինարարությունը Հրազդան գետի վրա, որի առաջին հերթը գործարկվեց 1937 թվականին։ Ուժեղ տեմպերով կատարվեց նաև բարձրավոլտ էլեկտրահաղորդիչ գծերի և ենթակայանների շինարարությունը, որը հնարա-

վորություն ընձեռեց 30-ական թվականների վերջում ստեղծելու Հայաստանի միասնական էլեկտրաէներգետիկ համակարգ։

Էներգետիկ շինարարության պլանի կատարման շնորհիվ 1940 թվականին հանրապետության բոլոր էլեկտրակայանների կարողությունը հասավ 113,1 հազար կվտ-ի, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը կազմեց 395,3 մլն կվտ ժամ, այդ թվում հիդրոէլեկտրակայաններում՝ 390,3 մլն կվտ ժամ (հանրապետությունում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի 99 տոկոսը)։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին մեր հանրապետությունում էներգետիկ օբյեկտների շինարարությունը համարյա դադարեց։ Սակայն գործող էլեկտրակայաններն անխափան էներգիա էին մատակարարում գործարաններին, ֆաբրիկաններին և բնակչությանը։

Հայաստանում էներգետիկ օբյեկտների շինարարությունը մեծ թափ ստացավ Հայրենական մեծ պատերազմի հաղթանակից հետո։ Վերսկսվեցին Սևանի ջրառու կառուցվածքի և Սևանհէկի շինարարական աշխատանքները։ Այդ ամենի շնորհիվ 1950 թվականին Հայաստանի էլեկտրակայանների կարողությունը հասավ 184,6 հազար կվտ-ի, իսկ էլեկտրաէներգիայի ընդհանուր արտադրությունը կազմեց 949,3 մլն կվտ ժամ, հիդրոէլեկտրակայանների կարողությունը՝ 176,2 հազար կվտ-ի, իսկ արտադրանքը՝ 938,7 մլն կվտ ժամ։

1953 թվականին շահագործման հանձնվեց Հայաստանի խոշորագույն էլեկտրակայանը՝ Գյումուշհէկը, 224 հազար, 1956-ին՝ Արզնիհէկը՝ 70,6 հազար, իսկ 1959-ին՝ Սևան-Հրազդան կասկադի՝ հաշվով հինգերորդ— Աթարբեկյանհէկը՝ 81,6 հազար կվտ կարողությամբ։ Այսպիսով, 10 տարվա ընթացքում Հայաստանի էլեկտրակայաններում շահագործման հանձնվեց 425,5 հազար կվտ գեներացնող կարողություն, որից 407,5 հազար կվտ-ը՝ հիդրոէլեկտրակայաններում։ Հայաստանի էլեկտրակայանների կարողությունը 10 տարում մեծացավ ավելի քան 3,3, իսկ էլեկտրաէներգիայի արտադրանքը՝ 2,9 անգամ։ Հրազդան գետի վրա հինգ էլեկտրակայանների շինարարության ավարտման շնորհիվ հնարավոր դարձավ գետի ջուրն օգտագործել ավելի քան 90 տոկոսով։ Հետևաբար, բարձրացավ Սևանա լճի դարավոր պաշարների հոսքի օգտագործման գործակիցը։

1950—1960 թվականներէն Սևան-Հրազդան կասկադի հիդրոկայանների կարողությունն աճեց մոտ 3,8 անգամ (բացարձակ մեծությամբ 376,2 հազար կվտ)։ 1960 թվականի վերջին շահագործման հանձնվեց Աղստաֆայի ենթակայան— Աթարբեկյանհէկի 220 կվտ լարվածության էլեկտրահաղորդման գիծը, կենսագործվեց Անդրկովկասյան հանրապետությունների էներգահամակարգերի միավորումը։ Համակարգային էլեկտրահաղորդման գծով նույն թվականին Հայաստանը միավորումից ստացավ 140,2 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիա, որն անհրաժեշտ էր հանրապետությունում առաջացած դեֆիցիտը ծածկելու համար։

1950—1960 թվականներին էներգետիկայի հզոր զարգացման շնորհիվ Հայկական ՍՍՀ-ն առաջ անցավ բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրության միութենական միջին ցուցանիշից, որը 1960 թվականին ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում կազմում էր 1365 կվտ ժամ, Հայաստանում արտադրվող 1479 կվտ ժամի դիմաց։ 1960 թ. գործնականորեն ավարտվեց միայն ջրաէներգետիկ ռեսուրսների օգտագործման բազայի վրա Հայաստանի էներգետիկայի զարգացման էտապը։

Հաջորդ տասնամյակում (1960—1970 թթ.) Հայաստանի էներգետիկայի



զարգացումն ընթացավ սկզբունքորեն նոր՝ ջերմաէլեկտրակայանների կառուցման ուղղությամբ։ Դրան զգալի չափով նպաստեց 1960 թվականին շահագործման հանձնված Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղը՝ 600 կմ երկարությամբ։ Բնական գազի ստացումը լուծեց վառելիքի պրոբլեմը և արմատական փոփոխություն մտցրեց վառելիքա-էներգետիկ հաշվեկշռի կառուցվածքում։

Քննարկվող ժամանակաշրջանում էներգաշինարարությունն ընթանում էր Երևան, Կիրովական, Հրազդան քաղաքներում՝ ջերմաէլեկտրակայանների կառուցման ու դրանց կարողությունների մեծացման ուղիով։ Այստեղ բացառություն է կազմում Սևան-Հրազդան կասկադի վերջին աստիճանի՝ 44 հազար կվտ կարողության Երևանհէկի շինարարությունն ու դրա շահագործումը 1962 թվականին։ Այդ հիդրոէլեկտրակայանի շինարարության ավարտումով հաջողությամբ պսակվեց դեռ 30 տարի առաջ սկսված Հայաստանի խոշորագույն հիդրոտեխնիկական կոմպլեքսի շինարարությունը, որը հսկայական դեր խաղաց էկոնոմիկայի վերելքի և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Կենսագործելով կուսակցության և կառավարության որոշումները Հայաստանի ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի զարգացման մասին, մոտ 6 տարում կառուցվեց ու շահագործման հանձնվեց Երևանի ջերմաէլեկտրակենտրոնը՝ յոթ ագրեգատներում 550 հազար կվտ գումարային կարողությամբ, որը գրեթե հավասար է Սևան-Հրազդան կասկադի բոլոր հիդրոէլեկտրակայանների կարողությանը։

Էներգետիկ շինարարության լայն ծրագրի հաջող կենսագործման շնորհիվ 1965 թվականին Հայաստանի էլեկտրակայանների տեղակայված կարողությունն անցավ միլիոնանիշ բնագիծը և կազմեց 1062,2 հազար կվտ, 1960 թվականի համեմատությամբ աճեց 1,66 անգամ։ Ջերմաէլեկտրակայանների կարողությունը 1965 թվականի վերջին հասավ 374 հազար կվտ-ի։ Սակայն, Սևան-Հրազդան կասկադի էլեկտրակայանները ոռոգման գրաֆիկին հարմարեցված աշխատանքի փոխադրելու կապակցությամբ, դրանց արտադրանքը գրեթե երկու անգամ կրճատվեց, որի պատճառով Հայաստանում էլեկտրաէներգիայի ընդհանուր արտադրանքը կազմեց ընդամենը՝ 2853 մլն կվտ ժամ։

Հետագա տարիներին, ջերմաէլեկտրակայանների կարողությունների անընդհատ աճի շնորհիվ էլեկտրաէներգիայի վերահոսքը 1968 թվականին կազմեց շուրջ 810 մլն կվտ ժամ։ Երեք տարվա ընթացքում (1965—1968 թթ.) ջերմաէլեկտրակայանների կարողությունն աճեց 1,87 անգամ։ 1969 թվականի վերջում և 1970 թվականի սկզբներին Հրազդանի ջերմաէլեկտրակայանում շահագործման հանձնվեցին 100-ական հազար կվտ հզորության երկու տուրբիններ, որոնց շնորհիվ դրա կարողությունը հասավ 300 հազար կվտ-ի։ Այսպիսով, հանրապետության բոլոր ջերմաէլեկտրակայանների ընդհանուր կարողությունը վերջին չորս տարում (1966—1969 թթ.) ավելացավ 2,4 անգամ։

1965 թվականին ջերմաէլեկտրակայաններում արտադրվող էլեկտրաէներգիայի բաժինը կազմել է 44 տոկոս, իսկ 1968 թվականին այն հասավ ընդհանուր արտադրանքի ավելի քան 70 տոկոսին։ 1966 թվականին սկսվեց հանրապետության ամենախոշոր՝ 600 հազար կվտ կարողությամբ ջերմաէլեկտրակայանի՝ Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի (ՀՊՇԷԿ) կառուցումը, 200 հազար կվտ կարողությամբ առաջին ագրեգատը շահագործման կհանձնվի 1970 թվականի վերջին։

Ջերմաէլեկտրակայանների շինարարության և գործարկման հետ միասին

սկսվեց Որոտան գետի հիդրոէներգետիկ ռեսուրսների յուրացումը, նպատակ ունենալով բարելավել Զանգեզուրի լեռնահանքային արդյունաբերական էլեկտրամատակարարումը և այդ շրջանի բնակչությունն ապահովել էլեկտրաէներգիայով։ Ներկայումս ավարտվում են 157 հազար կվտ կարողության ՏաթևՀԷԿ-ի՝ Որոտանի կասկադի առաջնեկի կառուցման աշխատանքները. այն շահագործման կհանձնվի 1970 թվականին։ Կառուցման աշխատանքներ են կատարվում Որոտանի կասկադի երկրորդ աստիճանի՝ Շամբիհէկի վրա՝ 171 հազար կվտ կարողությամբ։ Որոտանի կասկադի բոլոր երեք էլեկտրակայանների շինարարության ավարտումից հետո դրա ընդհանուր կարողությունը կկազմի 404 հազար կվտ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 1157 մլն կվտ ժամ։

Սևանա լիճն իրենից մի բնական ջրավազան է ներկայացնում, որն ունակ է կարգավորելու հոսքը ցանկացած գրաֆիկի համաձայն։ Ուստի, բնականաբար, միտք հղացավ Սևանա լճին կից ավազանների գետերի ջրերը փոխադրել Սևան, կուտակել այդ ջրերը և վերակարգավորել դրանք առաջադրված գրաֆիկով։

Զգտելով լավագույն կերպով օգտագործել Սևանա լճի և Սևան-Հրազդան ոռոգիչ-էներգետիկ կոմպլեքսի հնարավորությունները, որոշվեց Արփա գետի ջրերի հոսքը փոխել Սևանա լիճը։ Եզակի հիդրոտեխնիկական կառուցվածքի՝ 48 կիլոմետր երկարության Արփա-Սևան թունելի շինարարության աշխատանքերն սկսվեցին 60-ական թվականների առաջին կեսին և 1970 թ. կեսերին կատարված են շինարարական աշխատանքների մոտ 50 տոկոսը։ Այդ վիթխարի կառույցի ավարտումը հնարավորություն կընձեռի բարելավելու Սևան-Հրազդան կասկադի հիդրոկայանների և ոռոգիչ սիստեմի աշխատանքը, ինչպես նաև հնարավոր կլինի Սևանի մակարդակը պահպանել բնական պայմաններին մոտ նշագծի վրա։

Հայաստանում 1960—1970 թթ. հզոր էներգետիկ շինարարության շնորհիվ բոլոր էլեկտրակայանների ընդհանուր կարողությունը, նշված ժամանակաշրջանի վերջում, կկազմի 1880 հազար կվտ՝ հաշվի առնելով ՏաթևՀԷԿ-ի և Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի առաջին ագրեգատը, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը 1970 թ. պլանավորված է 6130 մլն կվտ ժամ։

Այժմ տնտեսական արդյունավետության տեսակետից կենսականորեն անհրաժեշտ է Հայաստանում ատոմային էլեկտրակայանների կառուցումը։ Հաջորդ տասնամյակում կառուցվելու է ԱէԿ-ը, որը պետք է սարքավորվի երկու ջրային ռեակտորներով՝ յուրաքանչյուրը 407,5 հազար կվտ կարողությամբ և շահագործման է հանձնվելու 1975 թվականի մոտերքին։

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և, առաջին հերթին, արդյունաբերական հզոր զարգացման արդյունքը էլեկտրաէներգիայի սպառման մեծ աճն է։

էլեկտրաէներգիայի սպառումը արդյունաբերության և ժողովրդական տընտեսության մեջ ամբողջությամբ վերցրած կազմել է (մլն կվտ ժամ).

| | 1940 թ. | 1950 թ. | 1960 թ. | 1965 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|---|
| Ժողովրդական տնտեսության մեջ | 395,3 | 949,3 | 2869,7 | 4444,9 | 5694,5 |
| Աճը 1940 թ. նկատմամբ (անգամ) | — | 2,4 | 7,3 | 11,2 | 14.4 |
| Արդյունաբերության մեջ և շինարարությունում | 327,9 | 766,6 | 2278,7 | 3097,3 | 3783,1 |
| Աճը 1940 թ. նկատմամբ (անգամ) | — | 2,3 | 6,9 | 9,4 | 11,5 |



Անհրաժեշտ է նշել, որ, չնայած հանրապետության արդյունաբերության
մեջ էլեկտրասպառման սիստեմատիկ և բացարձակ աճին, միաժամանակ ար-
դյունաբերության մեջ էլեկտրասպառման տեսակարար կշիռը տոկոսային հա-
րաբերությամբ իջել է։ Դրան հակառակ շատ էլեկտրաէներգիա է ծախսվում
բնակչության կոմունալ-կենցաղային կարիքների համար և ժողովրդական տըն-
տեսության մյուս ճյուղերում։ Այսպես, 1940 թվականին արդյունաբերությունը
և տրանսպորտը ծախսել են հանրապետության էլեկտրաէներգիայի ընդհանուր
սպառման 83, 1950 թ.՝ 81, 1960-ին՝ 79,3, 1965-ին՝ 70, 1968-ին՝ 66,4 և
1969-ին՝ 66,5 տոկոսը։

Արդյունաբերության մեջ էլեկտրաէներգիայի ծախսի առավել մեծ բաժինն
ընկնում է գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության ճյու-
ղերին։ Սակայն արդյունաբերական էլեկտրասպառման մեջ դրանց տեսակա-
րար կշիռն անընդհատ իջնում է. ընդ որում, միաժամանակ բարձրանում է
էլեկտրաէներգիայի ծախսման բաժինը մեքենաշինության, մետաղամշակման,
թեթև և սննդի արդյունաբերության մեջ։

Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում էլեկտրաէներ-
գիա չէր օգտագործվում ո՛չ գյուղատնտեսության մեջ, ոչ էլ գյուղացիների
կենցաղում։ Իսկ ոչ վաղ անցյալում հանրապետության գյուղատնտեսության
մեջ էլեկտրաէներգիան օգտագործվում էր միայն լուսավորման համար։ Գյու-
ղատնտեսության էլեկտրիֆիկացումը լայն մասշտաբներով ծավալվեց Հայ-
րենական մեծ պատերազմի ավարտումից հետո։ 1953—1960 թթ. էլեկտրիֆի-
կացված կոլտնտեսությունների թիվն ավելացավ 1,5, սովխոզներինը՝ 2,5 ան-
գամ։ Գյուղատնտեսության լիակատար էլեկտրիֆիկացման գլխավոր խնդիրն
այն է, որ գյուղատնտեսության արտադրության բոլոր հիմնական պրոցեսները
փոխադրվեն էլեկտրաէներգիայի օգտագործման, որն աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման կարևոր միջոցներից մեկն է։ Եթե 1950 թվակա-
նին գյուղատնտեսական արտադրական նպատակներով էլեկտրաէներգիայի
սպառումը կազմել է 37,8 մլն կվտ ժամ, ապա 1960-ին այդ ցուցանիշն աճեց
մինչև 62,5 մլն կվտ ժամի, այսինքն՝ ավելացավ 1,7 անգամ։ Սպառված էլեկ-
տրաէներգիայից արտադրական կարիքների վրա ծախսվել է կոլտնտեսություն-
ներում՝ 41, սովխոզներում՝ 46,5 տոկոս։

1969 թվականին գյուղատնտեսությունն սպառեց 435 մլն կվտ ժամ էլեկ-
տրաէներգիա, այդ թվում արտադրության մեջ՝ 279 մլն կվտ ժամ։ Սպառվող
էլեկտրաէներգիայից գյուղատնտեսության արտադրական կարիքներին բաժին
է ընկնում մոտ 64 տոկոս։

1970 թվականին պլանավորված է գյուղատնտեսության արտադրության
մեջ սպառել 378 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիա, 1965 թվականի 144 մլն կվտ
ժամի դիմաց։ Դա հնարավորություն կընձեռի շեշտակիորեն բարձրացնելու աշ-
խատանքի արտադրողականությունը և իջեցնելու թողարկվող արտադրանքի
ինքնարժեքը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թվականի հուլիսյան պլենումում առանձնակի ուշա-
դրություն նվիրվեց գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման հարցին։ Կենտ-
կոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Մենք պետք է ըստ ամե-
նայնի արագացնենք գյուղատնտեսության, նաև էլեկտրիֆիկացման տեմպերը։
Գյուղում էլեկտրաէներգիայի սպառումը մինչև 1975 թվականը պետք է հասնի
75 մլրդ կվտ ժամի, այսինքն՝ ավելանա համարյա 2 անգամ»։

Հանրապետության համատարած էլեկտրիֆիկացման խնդրի լուծման գոր-

*ծում ուրույն տեղ ունի երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացումը։ Առ 1951 թվականը երկաթուղիների ընդհանուր երկարությունից (460 կմ) էլեկտրիֆիկացված էր 60 կմ, իսկ 1960-ին՝ 562-ից 520 կմ։ Երկաթուղիների էլեկտրիֆիկացման աճի հետ միասին ավելացավ նաև էլեկտրաէներգիայի սպառումը քարշակների և շահագործման կարիքների համար։ Անդրերկաթգծի Երևանի բաժանմունքը 1960 թվականին սպառել է 71,6, իսկ 1967-ին՝ 84,4 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիա, պլանավորված է 1970 թվականին ծախսել 188 մլն կվտ ժամ։ Էլեկտրաքարշերը հնարավորություն տվեցին տնտեսելու մեծ քանակությամբ վառելիք, իջեցնելու փոխադրումների ինքնարժեքը, ավելացնելու ապրանքաշրջանառությունը։*

*Առաջնահերթ խնդիրներից մեկը կենցաղի և բնակարանա-կոմունալ տնտեսության էլեկտրիֆիկացումն է։ Նախասովետական Հայաստանում այդ նպատակով մեկ տարում քաղաքային մեկ բնակիչը ծախսել է մոտ 1,5 կվտ ժամ էլեկտրաէներգիա։ Իսկ գյուղական բնակչությունն առհասարակ զրկված էր դրանից։ Սովետական իշխանության հաստատումից հետո արմատապես փոխվեց կենցաղի և բնակարանա-կոմունալ տնտեսության էլեկտրիֆիկացումը։ Ներկայումս հանրապետությունում օգտագործվում են մոտ 330 հազար ռադիոընդունիչ, 190 հազար հեռուստացույց, 470 հազար էլեկտրահարթուկ, 390 հազար էլեկտրասալիկ և էլեկտրակենցաղային այլ գործիքներ։ Կոմունալ կենցաղային կարիքների համար 1965 թվականին օգտագործվել է 481,8, իսկ 1968-ին՝ 511,2 մլն կվտ ժամ էլեկտրաէներգիա։ 1967 թվականին հանրապետության քաղաքային մեկ բնակչին ընկնող էլեկտրաէներգիայի սպառումը կազմել է 295, իսկ գյուղական մեկ բնակչինը՝ 153 կվտ ժամ։ 1970 թվականին այն համապատասխանաբար կկազմի 300 և 172 կվտ ժամ։*

*Կենսագործելով էլեկտրիֆիկացման լենինյան պլանը, Հայաստանի աշխատավորները մեծ հաջողությունների են հասել այնպիսի էներգետիկ բազա ստեղծելու գործում, որն ապահովում է արտադրաուժերի աննախընթաց զարգացումը, էկոնոմիկայի և կուլտուրայի անշեղ վերելքը, ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։*

*Ընթանալով Լենինի մշակած պլանով, Հայաստանը դարձել է էլեկտրաէներգիայի կիրառման առաջավոր և ինդուստրիալ երկիր։*





*Վ. Ե. Խոջաբեկյան*

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐԳԱՎԱՃՄԱՆ ՀԻՄՔԸ

*Հայաստանի աշխատավորությունը սովետական բոլոր ազգերի հետ միասին այսօր նշում է իր վերածննդի հիսնամյա տարելիցը։ Մեր ժողովրդի երկար ու ձիգ պատմության այս փառավոր ժամանակաշրջանն իր նախադեպը չունի անցյալի տարեգրության մեջ։ Կես դարի ընթացքում Հայաստան աշխարհում վիթխարի և հիշարժան շատ գործեր են կատարվել երկրի վերաշինության, նրա տնտեսության զարգացման բնագավառներում։ Ժողովրդի բարեկեցության հիմքը՝ հանրապետության արդյունաբերությունը նշված ժամանակահատվածում առաջ ընթացավ սոցիալիստական տեմպերով։ Կարճ ժամանակամիջոցում ստեղծվեցին արդի գիտա-տեխնիկական առաջադիմության պահանջներին համապատասխան նորանոր ձեռնարկություններ ու ճյուղեր, և մեր հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ առաջադիմական ճյուղերի թողարկած արտադրանքի տեսակարար կշռով գրեթե հվասարվեց արդյունաբերական տեսակետից բարձր զարգացած երկրների մակարդակին։*

*Թեև 50 տարին պատմության համար մի վայրկյան է միայն, բայց այն, ինչ հայ ժողովուրդն իր ստեղծագործ աշխատանքով կերտել է սովետական 50 տարիներին, անհամեմատելի է նրա դարավոր կուլտուրայի հետ։ Անցյալի վեհաշուք կոթողների կողքին կարծես թե մեկեն վեր խոյացան նորանոր ճարտարապետական անսամբլներ, երկիրը պատվեց արդյունաբերական ձեռնարկությունների խիտ ցանցով, բազմապատկվեցին հանքերը, կառուցվեցին գեղատեսիլ քաղաքներ, ավաններ ու գյուղեր։*

*Կեղեքված հայ ժողովրդի վերածննդի, նրա էկոնոմիկայի բուռն վերելքի համար իրական պայմաններ ստեղծվեցին միայն սովետական կարգերի հաղթանակով։*

*Կոմունիստական կուսակցությունը, Վ. Ի. Լենինի անմիջական հրահանգ-*

ներով, առանձնահատուկ ուշադրություն էր նվիրում Ռուսաստանի նախկին
ազգային ծայրամասերի տնտեսական հետամնացության վերացմանը, նրանց
համակողմանի զարգացմանը:
Վ. Ի. Լենինը, մշակելով Ռուսաստանի սոցիալ-տնտեսական արմատական
վերափոխումների ծրագիրը, վերջինիս իրականացման հիմքում դնում էր ար-
դյունաբերության զարգացումը, քանի որ ժողովրդական տնտեսության վերել-
քի գործում առաջատար դերը պատկանում է արդյունաբերությանը: Այն սպա-
սարկում է ոչ միայն ինքն իրեն, այլև ժողովրդական տնտեսության նյութա-
կան արտադրության և ոչ-արտադրական ոլորտի բոլոր ճյուղերին: Ամբողջ
ժողովրդական տնտեսության վերարտադրության տեմպերն ու մասշտաբները
գերազանցապես կախված են տեխնիկական միջոցների քանակից ու կատա-
րելագործման աստիճանից, իսկ այդ տեխնիկական միջոցները ստեղծվում են
արդյունաբերության մեջ:

«Սոցիալիզմի միակ նյութական հիմքը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— կարող
է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ունակ է վերակա-
ռուցելու նաև հողագործությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 591):

Սովետական Հայաստանի աշխատավորները, ընթանալով կոմունիստա-
կան կուսակցության նշած ուղիով, իրենց ուժերը չխնայեցին՝ իրականացնելու
Վ. Ի. Լենինի պատգամը՝ արդյունաբերությունը վերականգնելու և արդի տեխ-
նիկայով հագեցած բազմաճյուղ արդյունաբերություն ստեղծելու վերաբերյալ:

Սովետական իշխանության տարիներին ստեղծվեցին էներգետիկական,
մեքենաշինական, մետաղամշակման, գունավոր մետաղաձուլության, շինա-
նյութերի, թեթև ու սննդի արդյունաբերության՝ առաջնակարգ տեխնիկայով
զինված բազմաթիվ նորագույն ճյուղեր, քիմիական արդյունաբերություն:

Եթե ամբողջ Միության մասշտաբով սոցիալիստական ինդուստրացումը
նպատակ ուներ ապահովել ծանր արդյունաբերության ճյուղերի առավել արագ
տեմպերով զարգացումը, ապա, ըստ առանձին տնտեսական շրջանների, այդ-
պիսի խնդիր այդ ժամանակաշրջանում դեռևս չէր դրվում: Սկզբնական շրջա-
նում ազգային հանրապետություններում զարգանում էին թվով սահմանափակ
ճյուղեր: Այդ ժամանակ պահանջվում էր արդյունաբերության այս կամ այն
ճյուղն ստեղծելիս նկատի առնել նրա տնտեսական նպատակահարմարությու-
նը՝ համընդհանուր պայմաններ ստեղծելով եղբայրական բոլոր հանրապետու-
թյունների տնտեսական վերելքի համար:

Բնական է, որ տնտեսապես ցածր մակարդակի վրա գտնվող ազգային
հանրապետություններում, ուր բացակայում էր բազմաճյուղ արդյունաբերու-
թյունը, հիմնական ուշադրությունը նվիրվում էր տեղական հումքի բազայի
վրա բնակչության սպառման պահանջները բավարարող արդյունաբերության
զարգացմանը: Այդ իսկ նպատակով առաջին հնգամյակում խնդիր էր դրված
առանձնահատուկ ուշադրություն նվիրել «...ազգային հետամնաց ծայրամա-
սերի և հետամնաց շրջանների էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի հարցերին,
ելնելով նրանց տնտեսական և կուլտուրական հետամնացությունն աստիճա-
նաբար լիկվիդացնելու անհրաժեշտությունից, համապատասխանաբար նա-
խատեսելով նրանց էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման ավելի արագ
տեմպ, ելնելով այդ շրջանների կարիքներն ու պահանջները Միության կարիք-
ների ու պահանջների հետ շաղկապելուց» (ՍՄԿԿ-ն համագումարների, կոն-
ֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում,
մաս II, Հայպետհրատ, 1955, էջ 586):



Կուսակցությունը, հետևողականորեն իրականացնելով ազգային հանրա-
պետությունների էկոնոմիկայի միակողմանիությունը հաղթահարելու և նրանց
տնտեսական հետամնացությունը վերացնելու լենինյան կուրսը, լիակատար
պայմաններ ստեղծեց նրանց արդյունաբերությունն առավել արագ տեմպերով
զարգացնելու համար: Օրինակ, եթե 1928—1940 թթ. ՍՍՀՄ արդյունաբերու-
թյան զարգացման միջին տարեկան տեմպերը կազմեցին 16, ապա ՀՍՍՀ-ում՝
19,8 տոկոս: Արդյունաբերությունը բարձր տեմպերով էր զարգանում նաև
միութենական մյուս հանրապետություններում: Սակայն, այդուհանդերձ, նա-
խապատերազմյան հնգամյակների տարիներին տնտեսապես հետամնաց նախ-
կին ազգային հանրապետություններն առավելապես զարգանում էին ոչ թե
ճյուղային կոմպլեքսների ստեղծման, այլ որոշ ճյուղերի մասնագիտացման
ուղղությամբ:

Կուսակցությունը նախապատերազմյան հնգամյակներին ձեռնարկեց Հա-
յաստանում ծանր ինդուստրիայի ճյուղերի ստեղծման ու դրանց հետագա զար-
գացման գործը: Առաջին հնգամյակի տարիներից ի վեր Հայաստանում, զար-
գացում ստացած տեքստիլ, մետաքսի, բամբակազտիչ, կաշվի, գինեգործա-
կան, պահածոների և հանրապետության գյուղատնտեսական հումքի վերա-
մշակման բազայի վրա թեթև ու սննդի արդյունաբերության այլ ճյուղերի հետ
միասին, բուռն թափով առաջ էին ընթանում ծանր ինդուստրիայի ճյուղերը:
Այդ ժամանակաընթացքում առանձնապես բարձր տեմպերով աճեցին էլեկ-
տրաէներգիայի, մեքենաշինության ու մետաղամշակման, շինանյութերի ար-
դյունաբերության ճյուղերը: Արդեն 1940 թվականին, 1913 թ. համեմատու-
թյամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել էր 77,5, մեքենաշի-
նության ու մետաղամշակման համախառն արտադրանքը՝ 15,4, շինանյութերի
արդյունաբերությունը՝ 14 անգամ, գունավոր մետաղաձուլությունը՝ 47 տոկո-
սով, թեթև արդյունաբերության արտադրանքն աճել 7,9, սննդինը՝ 8 անգամ:

Իրագործելով երկրի ինդուստրացման կոմունիստական կուսակցության
կուրսը, մեր հանրապետության աշխատավորները նախապատերազմյան հնգ-
ամյակների տարիներին շահագործման հանձնեցին ավելի քան 200 արդյունա-
բերական ձեռնարկություններ, ստեղծեցին արդյունաբերական նոր քաղաք-
ներ ու ավաններ: Տնտեսության սոցիալիստական սեկտորն ամբողջովին դուրս
մղեց մասնավոր (կապիտալիստական և մանր) արդյունաբերությանը: 1940 թ.
արդեն ամբողջ արդյունաբերական արտադրանքը սոցիալիստական սեկտորի
մենաշնորհն էր, այդ թվում պետական արդյունաբերությունն արտադրում էր
77,7, կոոպերատիվ արտադրությունը՝ 22,3 տոկոսը:

Հայաստանի արդյունաբերության հետագա վերելքն ընդհատվեց Հայրե-
նական մեծ պատերազմի տարիներին: Մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ
միասին պատերազմի արհավիրքների ծանր օրեր ապրեց նաև Հայաստանը:
Սակայն այդ ահեղ գոտեմարտի տարիներին հանրապետությունում կառուցվում
էին նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, ընդլայնվում հները, կազմակերպվում
արտադրանքի նորանոր տեսակների արտադրություն՝ ռազմաճակատին զինա-
մթերք, պարեն, հանդերձանք մատակարարելու համար:

Հայաստանի արդյունաբերության զարգացման տարեգրության մեջ ցայ-
տուն ուրվագծված է ետպատերազմյան շրջանը, երբ արդյունաբերության հա-
մակողմանի զարգացումը ուղեկցվում էր նրա ճյուղային կառուցվածքի պրո-
գրեսիվ փոփոխություններով, ճյուղային և տերիտորիալ տեղաբաշխման միա-

կողմանիության զգալի հաղթահարումով, արդյունաբերական ձեռնարկությունների որակական ցուցանիշների բարելավումով։

Ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում, առանձնապես արագորեն աճեցին գիտատեխնիկական առումով պրոգրեսիվ ճյուղերը՝ մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը և էներգետիկան, շինանյութերի արդյունաբերությունը։ Այդ զարգացումը բնութագրվում էր վերոհիշյալ ճյուղերի ո՛չ միայն քանակական, այլև որակական աճով, միանգամայն նոր արդյունքների ստեղծումով։

Ծանր արդյունաբերության ճյուղերի առավել արագ զարգացմամբ փոխվեց արդյունաբերության առանձին ճյուղերի հարաբերակցությունը։ Օրինակ, թեթև ու սննդի արդյունաբերության համախառն արտադրանքի բաժինը 1940 թվականին կազմում էր ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 83 տոկոսը, 1969 թ.՝ շուրջ 44—44,5, իսկ էլեկտրաէներգետիկայինը, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը, քիմիական արդյունաբերությանն ու գունավոր մետաղաձուլությանը, միասին վերցրած, մոտ 45 տոկոսը։

Այժմ Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ ստեղծվել է այնպիսի ճյուղային կառուցվածք, որը բնորոշ է արդյունաբերական տեսակետից զարգացման բարձր մակարդակի վրա գտնվող սոցիալիստական ու կապիտալիստական երկրներին։

Ինչպես Միության, այնպես և մեր հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքի առաջադիմական փոփոխությունն ուղեկցվում է ներճյուղային կառուցվածքի խոր տեղաշարժերով։ Վերջիններիս հիմքում ընկած են արտադրության նոր, մասնագիտացված ճյուղերի և արտադրանքի պրոգրեսիվ տեսակների ստեղծումն ու արագ զարգացումը։

Սակայն ՀՍՍՀ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերությունը բնութագրող հիմնական ճյուղը մեքենաշինությունն է, որը թողարկում է ամբողջ ճյուղի համախառն արտադրանքի մոտ 90 տոկոսը։ Մեր մեքենաշինության ճյուղային կառուցվածքում արագորեն աճում են արդի տեխնիկական առաջադիմությունը ներկայացնող էլեկտրատեխնիկական, էլեկտրոնային ու ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը, սարքաշինությունը, հաստոցաշինությունն ու գործիքաշինությունը, քիմիական, սննդի, թեթև արդյունաբերության սարքավորումների արտադրության և այլ ճյուղեր։

Հետպատերազմյան շրջանում ստեղծվեցին էլեկտրոնային, ռադիոէլեկտրոնային, սարքաշինական արդյունաբերության միանգամայն նոր և մեծ հեռանկար խոստացող ճյուղեր։ Բավական արագ զարգացող սարքաշինությունն արդեն թողարկում է գիտատեխնիկական առաջադիմության նորագույն նմուշների արտադրանք։ Դրա ձեռնարկությունները գործուն մասնակցություն ունեն Միության մասշտաբով արտադրանքի նորագույն տեսակների՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ և քվանտային գեներատորներ, միկրոնային ճշգրտության ապարատներ ու գործիքներ, չափիչ և կարգավորիչ սարքեր, ինչպես նաև օրգանական քիմիայի բարդ նյութեր սինթեզող սարքեր ստեղծելու մեջ։

Հայաստանը մասնագիտացել է նաև մետաղահատ հաստոցների արտադրության բնագավառում։ Բնակչության 1000 շնչին ընկնող մետաղահատ հաստոցների արտադրությամբ հանրապետությունը 1965 թվականին 5,5 անգամ գերազանցում էր կապիտալիստական զարգացած այնպիսի երկրի, ինչպիսին է ԱՄՆ-ը։ Ըստ որում, դրանք բարձր ճշգրտություն ունեցող հաստոցներ են։ Եթե 1961—1968 թվականներին ՀՍՍՀ մեքենաշինական արդյունաբերու-



թյան համախառն արտադրանքի միջին տարեկան աճը կազմել է 17 տոկոս, ապա հաստոցաշինության ու գործիքաշինության մեջ այն հասնում էր 24.3, սարքաշինության մեջ՝ 22,4 տոկոսի և այլն։ Արագորեն աճում է և մեծ հեռանկար ունի ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը։ Հանրապետության մեքենաշինության արտադրանքի բազմաթիվ տեսակներ մեծ ճանաչում են գտել երկրի սահմաններից դուրս։

1965 թ. հետո հանրապետությունում շահագործման հանձնված ջերմաէլեկտրակայաններն ապահովեցին ամբողջ արդյունաբերության համեմատ էլեկտրաէներգիայի արտադրության առավել արագատեմպ աճ։ 1966—1968 թթ. էլեկտրաէներգիայի արտադրության աճի գործակիցը կազմեց արդյունաբերության մոտ 1,3-ը։ Դրա շնորհիվ արդեն 1968 թվականին Հայաստանում մոտ 2,5 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա էր արտադրվում, քան 1913 թ. ամբողջ ցարական Ռուսաստանում (ՍՍՀՄ այժմյան սահմաններում)։

Էլեկտրաէներգիայի այդպիսի աճը խոշոր դեր խաղաց արդյունաբերության տեխնիկական վերազինման և նոր տեխնիկայի յուրացման գործում։ Եթե 1940 թ. Հայաստանի արդյունաբերության ու շինարարության մեջ սպառվող էլեկտրաէներգիան կազմում էր 327,9 մլն կվտ/ժամ, ապա 1950 թվականին այն ավելի քան կրկնապատկվեց, իսկ 1968 թվականին ավելացավ մոտ 12.6 անգամ։

Արդյունաբերության մեջ քիմիական արտադրանքի տեսակարար կշռի մեծությունը տվյալ երկրի արդյունաբերությունը բնորոշող ցուցանիշներից մեկն է։ Հայաստանում քիմիական արդյունաբերությունը բառիս բուն իմաստով ստեղծվեց հետպատերազմյան տարիներին։ Այդ կարճատև ժամանակաընթացքում, արհեստական կաուչուկի, ծծմբաթթվի, կաուստիկ սոդայի արտադրության ընդլայնվելու հետ միասին, ստեղծվեցին հիմնական քիմիայի մի շարք արտադրաճյուղեր։ Լայնորեն ծավալվեց ավտոդողերի, քիմիական պարարտանյութերի, արհեստական մանրաթելերի, սինթետիկ խեժերի և պլաստմասսաների, քիմիական դեղագործական նյութերի արտադրությունը։ Կազմակերպվել է նաև սինթետիկ օրգանական նյութերի, ացետիլցելյուլոզային, դիցիանամիդի, մելամինի, կրեոլինի, քիմիական ռեակտիվների, սոսնձող արհեստական նյութերի, արհեստական կորունդի և այլ նյութերի արտադրություն։ Հայաստանում քիմիական արդյունաբերության զարգացումը սերտորեն կապվում է նաև գունավոր մետաղաձուլության հումքի կոմպլեքսային օգտագործման հետ։

Վերջին քսանամյակի ընթացքում քիմիական արդյունաբերության ամենաարագ զարգացող ճյուղը, որը և բնութագրում է դրա նորագույն ուղղությունը, սինթետիկ խեժերի և պլաստմասսաների արտադրությունն է։ Եթե 1961—1968 թթ. քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի աճի միջին տարեկան տեմպերը կազմել են 15,6, ապա սինթետիկ խեժերի և պլաստմասսաների արտադրությունը՝ ավելի քան 27 տոկոս։

Հայկական ՍՍՀ-ն, օգտագործելով հանքային՝ հատկապես պղնձի ու մոլիբդենի հարուստ պաշարները, մասնագիտացել է գունավոր մետաղաձուլության որոշ ճյուղերի բնագավառում։ Այդ պաշարները լայն չափերով օգտագործելու հիման վրա գունավոր մետաղաձուլության արտադրանքը ներկայումս, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է մի քանի տասնյակ անգամ։

Հայաստանում գունավոր մետաղների, մասնավորապես պղնձի, արդյու-

նահանումն ու ձուլումը հայտնի է վաղուց։ Սակայն պղնձի և, ընդհանրապես, գունավոր մետաղաձուլության արտադրությունն արագ տեմպերով զարգացավ հետպատերազմյան շրջանում, երբ կազմակերպվեցին նաև մոլիբդենի արդյունահանումն ու ալյումինի արտադրությունը։ Վերջիններս իրենց աճի տեմպերով մի քանի անգամ գերազանցում են պղնձի ձուլմանը։ Հանրապետությունում գունավոր մետաղների գլանվածքը հատկապես ավելացավ Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի գործարկումով։ Ներկայումս գունավոր մետաղների համախառն արտադրանքի ավելի քան 55 տոկոսը պատկանում է պղնձի և ալյումինի արդյունաբերությանը։

Հանրապետությունում գունավոր մետաղաձուլությունը զարգանում է հանույթի և մշակման ուղղությամբ, ըստ որում, համախառն արտադրանքի 60 տոկոսից ավելին կազմում է մետաղաձուլությունը։ Սակայն հանույթի աճի տեմպերը գերազանցում են ձուլմանը, քանի որ գունավոր մետաղաձուլության հանույթի միայն մի մասն է մշակվում հանրապետության սահմաններում, մոլիբդենային կոնցենտրատն ամբողջությամբ մշակվում է նրա սահմաններից դուրս։ Գունավոր մետաղների և, մասնավորապես, մոլիբդենային կոնցենտրատի մշակումը Հայաստանում և մինչև վերջնական պատրաստի արտադրանք դառնալը մեծապես կփոխի գունավոր մետաղների հանույթի և ձուլման միջև ներկայումս գոյություն ունեցող հարաբերակցությունը։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության ճյուղային կառուցվածքում կարևոր տեղ է գրավում նաև շինանյութերի արդյունաբերությունը։ 1968 թ. նրա համախառն արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ, աճեց մոտ 46 անգամ։

Ծանր ինդուստրիայի ճյուղերի արագատեմպ աճը պայմանավորել է նաև ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերի զարգացումը, դրանց որակական տեղաշարժերը։ 1940 թ. համեմատությամբ, օրինակ, ՀՍՍՀ-ում թեթև արդյունաբերության արտադրանքը 1968 թ. աճել էր 11,3, սննդինը՝ մոտ 4,2 անգամ։ ՀՍՍՀ սպառման առարկաներ արտադրող թեթև ու սննդի արդյունաբերությունը չափազանց բազմաճյուղ են և բավարարում են ոչ միայն հանրապետության բնակչության սպառման անմիջական պահանջները, այլև դրա արտադրանքի բազմաթիվ տեսակներ սպառվում են նրա սահմաններից դուրս։

Վերջին տարիներին թեթև արդյունաբերությունը բնութագրվում է ճյուղային կառուցվածքի առաջադիմական տեղաշարժերով։ Հատկապես կատարելագործվել է վերջիններիս տեղաբաշխումը, որի նպատակն է, մի կողմից, բարելավել բնակչության սպասարկման պահանջը, մյուս կողմից՝ շրջաններում թեթև արդյունաբերության ճյուղեր ստեղծելու միջոցով բարձրացնել հասարակական արտադրության մեջ բնակչության, մասնավորապես կանանց, աշխատուժի օգտագործման արդյունավետությունը։ Պետք է ասել, որ ներկայումս Հայաստանի թեթև արդյունաբերության ճյուղերում ընդգրկված են արդյունաբերության մեջ զբաղվածների ավելի քան 36 տոկոսը, որի 65 տոկոսից ավելին կանայք են։ Մեր հանրապետությունում արագ են զարգացել թեթև արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ տեքստիլ (բրդյա գործվածքների, մետաքսի, տրիկոտաժի), կարի, կոշիկի, կաշվի-մուշտակի և այլն։

Սովետական Հայաստանի արդյունաբերության ամենահին և ամենազարգացած ճյուղերից մեկը սննդարդյունաբերությունն է։ Այն ընդգրկում է գինեգործական, պահածոների, մսի, կաթի, յուղի, պանրա-յուղագործական, գարե-



ջրի, ոչ ոգելից խմիչքների, հացի, հրուշակեղենի, ալյուր-ձավարեղենի, շաքարի, բանջարեղենի, ծխախոտի արտադրությունը և այլ ճյուղեր։

Վաղուց մեր երկիրը եղել է գինեգործության օջախ։ Նրա բարձրորակ ու քաղցրահամ գինիները, կոնյակները լայն տարածում են գտել աշխարհի տարբեր երկրներում։ Սովետական Հայաստանում, խաղողի այգիներն ընդլայնելու և ավելի բարձր շաքարայնություն ունեցող խաղողի տեսակներ աճեցնելու շնորհիվ, գինեգործական արդյունաբերությունն արագ թափով զարգացավ։ Զգալի տեսակարար կշիռ ունեն նաև հացաթխման, յուղի, պանրի, կաթնեղենի արտադրությունը, պտուղ-բանջարեղենինը և այլն։

Հայտնի է նաև, որ Հայկական ՍՍՀ աչքի է զարնում գյուղատնտեսական հումք վերամշակող պահածոների արտադրությամբ։ 1960 թվականին պահածոների արդյունաբերական ձեռնարկությունները թողարկել են 95, իսկ 1968 թ.՝ 193 մլն պայմանական տուփ պահածո։

Հայաստանի արդյունաբերության ճյուղերից են նաև անտառային, փայտամշակման և ցելյուլոզային թղթի, ապակու, ճենապակու արդյունաբերությունը, որոնց թողարկած համախառն արտադրանքը, սակայն, արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ չափազանց քիչ տեսակարար կշիռ է կազմում։

Մեր հանրապետության արդյունաբերության աննախընթաց վերելքն ապահովեց ժողովրդական տնտեսության մեջ նրա առաջատար դերը։ Ներկայումս ժողովրդական տնտեսության այս ճյուղում է ստեղծվում ազգային եկամտի մեծ մասը։ Օրինակ, 1968 թ. արդյունաբերությունը, շինարարության հետ միասին, տվեց ազգային եկամտի 75,2 տոկոսը։ Արդյունաբերության մեջ չափազանց արագ է աճում զբաղվածությունը։ Միայն 1968 թ. արդյունաբերության արտադրական անձնակազմը, 1960 թ. համեմատությամբ, ավելացել է մոտ 80 տոկոսով, ըստ որում, ինժեներա-տեխնիկականը՝ մոտ 115 տոկոսով։ 1968 թ., օրինակ, Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների մոտ 36 տոկոսը բաժին էր ընկնում արդյունաբերությանն ու շինարարությանը։ Արդյունաբերությունն աչքի է ընկնում ֆոնդազինվածության և էլեկտրազինվածության բարձր մակարդակով, ձեռնարկությունների համակենտրոնացման բարձր աստիճանով։ Դրա շնորհիվ անընդհատ աճում է աշխատանքի արտադրողականությունը։ 1968 թ., 1960-ի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը ՀՍՍՀ արդյունաբերության մեջ բարձրացել է 30 տոկոսով։

Տարեցտարի բարձրանում է Հայկական ՍՍՀ-ի դերը ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի առանձին տեսակների արտադրության մեջ։ Հայաստանը 1968 թ. տալիս էր ՍՍՀՄ-ում արտադրվող մետաղահատ հաստոցների 5,4 տոկոսը, ավտոդողերի՝ 4,1, կաշվե-կոշկեղենի՝ 1,6, գուլպեղենի՝ 3,3, պահածոների՝ 2, խաղողի գինու՝ 1,5 տոկոսը։ Մեր հանրապետությունը թողարկում է Միության մոլիբդենային կոնցենտրատի, պղնձարջասպի, կարբիդ-կալցիումի, ծծմբաթթվի, շարժական էլեկտրակայանների, 100 կվտ-ից բարձր փոփոխական հոսանքի գեներատորների, կոմպրեսորների, կենտրոնախույս պոմպերի 10-ից մինչև 50 տոկոսը։

ՀՍՍՀ արդյունաբերության արտադրանքի շատ տեսակներ լայնորեն հայտնի են Սովետական Միությունում ու նրա սահմաններից դուրս։ Հայաստանի արդյունաբերության արտադրանքի 150 տեսակ արտահանվում են աշխարհի ավելի քան 70 երկրներ։

*Հանրապետության արդյունաբերությունը զարգացման իր բարձր տեմպը կպահպանի նաև հետագայում։ ՍՍՀՄ արդյունաբերության առաջատար ճյուղերի զարգացման շնորհիվ արտադրապրոցեսների մեքենայացման, էլեկտրիֆիկացման, քիմիացման մակարդակի բարձրացումը կապահովի աշխատանքի առարկայի կոմպլեքսային և արդյունավետ օգտագործումը։ Դա կընպաստի հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացմանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։*

*Ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ դարձյալ առավել արագ տեմպերով կզարգանան նրա առաջատար ճյուղերը, հատկապես այն ճյուղերը, որոնք կնպաստեն տեղական հումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործմանը՝ նրանցից պատրաստի արդյունք ստանալու ավելի բարձր աստիճան ապահովելու, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու համար։*

*Միաժամանակ հարկավոր է նշել, որ գիտատեխնիկական առաջադիմությունն անմիջական ներգործություն կունենա ժողովրդական սպառման առարկաների կառուցվածքի վրա։ Կբարձրանա սպառման այն առարկաների տեսակարար կշիռը, որոնք գերազանցապես արտադրվում են ծանր ինդուստրիայի՝ մեքենաշինության, քիմիական արդյունաբերության, սև և գունավոր մետաղաձուլության և այլ ճյուղերում։ Ծանր ինդուստրիայի ճյուղերի արագ զարգացումը, գյուղատնտեսության ու թեթև արդյունաբերության ճյուղերի ինդուստրիալ մակարդակը բարձրացնելու, նրանցում կառուցվածքային լուրջ փոփոխություններ առաջացնելու հետ միասին, կապահովի և հետզհետե ավելի ու ավելի կընդլայնի ծանր արդյունաբերության մեջ ժողովրդական սպառման առարկաներ արտադրող նորագույն ճյուղերի արտադրությունը։*

*Հայկական ՍՍՀ արդյունաբերության ճյուղերի զարգացման համար ստեղծված յուրօրինակ պայմանները, հումքային ռեսուրսների, ինժեներական և բանվորական բարձրորակ կադրերի առկայությունն այսուհետև ևս կկանխորոշեն նրա ճյուղային կառուցվածքի առաջադիմական տեղաշարժերը։*





Լ. Ս Խաչիկյան

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐ, ԱՐԳԱՍԱԲԵՐ ՏԱՐԻՆԵՐ

## Ա

Հնադարյան պատմություն և մշակույթ ունեցող հայ ժողովուրդը, որ հոգեվարքի ծանր օրեր էր ապրում XIX դարի սկզբներին, համախմբվելով կոմունիստական կուսակցության ալ դրոշի ներքո, կես դար առաջ փրկվեց իսպառ կործանումից ու իր բախտի տերը դարձավ: Այսօր, Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին, նա տոնում է իր վերածննդի հիսնամյա հոբելյանը՝ վիթխարի հաջողություններ արձանագրելով ժողովրդական տնտեսության ու մշակույթի բոլոր մարզերում:

Հոբելյաններն ինքնանպատակ չեն լինում. ամեն մի մեծ ու փոքր հաստատություն, նշելով հիշարժան որևէ տարելից, ընդհանուր հայտարարի է բերում իր նվաճումները և լիցքավորվում աշխատանքային նոր հաջողությունների համար:

Մեր հանրապետության գիտա-հետազոտական մյուս հաստատությունների հետ մեկտեղ մեծ հոբելյանը պատվով է դիմավորում նաև Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր Մ. Մաշտոցի անվան Մատենադարանը: Եվ, եթե Հայաստանի մյուս գիտական հիմնարկները, լինելով Նոյեմբերի ծնունդ, կարող են ամփոփել իրենց գործունեության մեկ-երկու տասնամյակի արդյունքները, Մաշտոցյան Մատենադարանը, ունենալով հարյուրամյա իր նախապատմությունը, հնարավորություն է ընձեռում՝ կուգահեռներ անցկացնելու հայ ժողովրդի կերտած մշակութային արժեքների պահպանության և ուսումնասիրության ասպարեզում՝ նախասովետական շրջանում և այժմ կատարվող աշխատանքների միջև:

Միջին դարերում ստեղծված տասնյակ հազարավոր հայերեն ձեռագրերը մագաղաթյա իրենց թերթերի վրա ամբարել են պատմական անգնահատելի տվյալներ բոլոր այն ժողովուրդների կյանքի մասին, որոնց հետ իր գոյության հազարամյակների ընթացքում քաղաքական, տնտեսական ու մշակութային կապեր է ունեցել հայ ժողովուրդը: Այդ ձեռագրերում արտացոլված է ժողովրդի տարբեր խավերի սոցիալական անհավասարությունը, դրանց տողերում հնչում են ընչազուրկների դարավոր տրտունջն ու բողոքը, զգացվում ընդվզումը անարդարությունների, ունեւրկողների դեմ: Դրանք պարզ գաղափար են տալիս դասակարգերի կազմավորման, դրանց միջև ծավալվող հակամարտությունների և աղանդավորական՝ ծայր առնող պայքարի մասին: Հայ պատմագիրների, իմաստասերների ու գիտնականների ստեղծած ձեռագիր աշխատությունները համամարդկային մշակույթի գանձարանում իրենց պատվավոր տեղն են գրավել, իսկ հայ գրիչների ու մանրանկարիչների միատեղ ջանքերով ստեղծված գունագեղ մատյանները, որ փայլում են իրենց գեղարվեստական արժանիքներով, դասվում են միջնադարյան արվեստի ամենակատարյալ ստեղծագործությունների շարքը:

Մեզ, սակայն, հասել են միայն փշրանքներ այն ամենից, ինչ ստեղծել են մեր գրասեր նախնիներն իրենց հայրենի երկրում և Հայաստանից դուրս՝ բազմաթիվ գաղթօջախներում: Իսկ այն, ինչ պահպանվել է, անցել է հրի ու սրի միջով, ականատես լինելով այն եղեռններին, որոնք անպակաս են եղել հայ ժողովրդի պատմությունից: Տասնյակ հազարավոր ձեռագրեր են ոչնչացվել օտարերկրյա նվաճողների կողմից. նրանց սև գործը լրացրել են տգետ մարդիկ— հոգևորական ու աշխարհական. սակայն լույսի ու գիտության կարոտ ժողովուրդը մաքառել է օտար ու սեփական տերերի դեմ, խարույկներից գրքեր հափշտակել, գերությունից գրքեր ազատել և մեր օրերին հասցրել մոտ 25 հազար մեծարժեք ձեռագիր մատյաններ:

Մինչև Սովետական կարգերի հաղթանակը Մատենադարանի ձեռագրերի թիվը հազիվ մոտենում էր 5 հազարի: Իսկ այժմ միայն հայերեն ձեռագրերի հավաքածուն բաղկացած է 10500 միավորից. Հայաստանի շրջաններից, հարևան հանրապետությունների հայաբնակ վայրերից, ինչպես նաև Ռուսաստանի մշակութային կենտրոններից (Մոսկվա, Աստրախան, Ռոստով և այլն) Մատենադարան են տեղափոխվել հազարավոր արժեքավոր ձեռագրեր: Մեր հավաքածուների հարստացման գործին մեծապես նպաստել են արտասահմանյան երկրներում բնակվող հայրենասեր մարդիկ՝ կորստից փրկելով ու Մատենադարան առաքելով գրչագիր մատյաններ: Ազգային արժեքները մայր հայրենիքի Մատենադարանում ամփոփելու համար ջանքեր չպետք է խնայել, քանի որ այդ ճանապարհով է միայն հնարավոր կորստից ու օտարացումից փրկել մեր նախնիներից ավանդ մնացած գրավոր հուշարձանները:

Ձեռագիր գրքերը հնում պահվել են նկուղներում, վանական շինությունների անօդ ու խավար դարաններում: Անբարենպաստ պայմաններում պահվելով՝ դրանց մեծագույն մասը խոնավացել է, ստացել մագաղաթին ու թղթին հատուկ հիվանդություններ. գրքերի կազմն ու թերթերը վնասվել են կանապա կրծողներից ու քայքայիչ մանրէներից. թանաքը խունացել է, թերթերը՝ պատառոտվել: Իր երկրի տերը դարձած ժողովուրդը միջոցներ չի խնայել մշակութային արժեքների պահպանությունն ու խնամքը գիտական հիմքերի վրա դնելու համար: Կոմունիստական կուսակցության ու Սովետական կառավարության որոշմամբ կառուցվեց և 1959 թվականին շահագործման հանձնվեց հոյակապ մի պալատ— Մատենադարանի նոր շենքը, ուր ստեղծված են բոլոր պայմանները ձեռագիր գանձերի գիտական պահպանության համար: Այստեղ մի շարք մասնագետներ՝ վարպետ-վերանորոգողներ, եռանդուն ջանադրությամբ բուժում են ձեռագրերի դարավոր վերքերը, հավերժական կյանք պարգևում դրանց: Ձեռագիր մատյանները պահվում են հատուկ պահոցներում, ուր տարին բոլոր, զոր ու գիշեր ապահովված է ջերմության ու խոնավության պահանջվող աստիճանը: Ձեռագրերի անվնաս պահպանությանը մեծապես նպաստում է նաև ընդունված կարգը, որի համաձայն գիտնականներին ուսումնասիրության է տրվում ոչ թե հին ձեռագրի բնագիրը, այլ դրա միկրոպատճենը: Ըստ այդմ ձեռագրերի մեծագույն մասն արդեն պատճենահանված է. սկսվել են նաև մանրանկարների գունավոր պատճենահանման աշխատանքները:



## Բ

Մինչև Սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում հայ ժողովրդի հարուստ մշակույթի ու, մասնավորապես, ձեռագիր մատյանների ուսումնասիրության ոլորտում որոշ աշխատանքներ էին կատարվում հայրենի երկրից հեռու ընկած կենտրոններում՝ Վենետիկում, Վիեննայում, Մոսկվայի Լազարյան ճեմարանում, Պետերբուրգի համալսարանում, ինչպես նաև եվրոպական մի շարք երկրների մայրաքաղաքներում: Հայագետների զգալի մասն օտարերկրացի գիտնականներ էին: Պատմական Հայաստանի տարածքի վրա միայն Էջմիածնում հաստատված փոքրաթիվ բանասերներն էին, որ XIX դարի վերջին տասնամյակներից սկսած ինչ-որ չափով զբաղվում էին ձեռագրագիտական հետազոտություններով:

Հայ և օտարազգի գիտնականների մի քանի սերնդի համառ ջանքերով հրատարակվել ու եվրոպական լեզուներով թարգմանվել էին հայ հին մատենագրության բազմաթիվ հուշարձաններ: Արևելագիտությանը տարբեր հրատարակություններով հայտնի էին դարձել Մովսես Խորենացու, Եղիշեի, Ղազար Փարպեցու, Ագաթանգեղոսի, Սեբեոսի և հայ մի շարք այլ պատմագիրների գրվածքները, լույս էին ընծայվել նաև հույն ու ասորի եկեղեցական հայրերի մի շարք գործերի հին հայերեն թարգմանությունները և այլ բնագրեր:

Աղբյուրագիտական այդ աշխատանքները, սակայն, չէին կարող բավարարել կարգացող պատմագրության պահանջները: Նշանավոր հայագետ Ստ. Մալխասյանցը այսպես էր գնահատում նրանց գիտական նշանակությունը. «Այս հրատարակությունները եղել են զանազան տեղերում ու ժամանակներում՝ տարբեր պատրաստությամբ ու նպատակներով: Այս պատճառով շատ զանազանվում են նրանք միմյանցից ներքինով ու արտաքինով: Ոմանք ունեն ձեռագիրների տարբեր ընթերցվածքներ (որոնց մեջ մի քանիսը տպագրված են մի քանի ձեռագիրների բաղդատությամբ, մյուսները՝ առաջին պատահած, զուգե սխալաշատ ձեռագրից): Վերջապես հրատարակություններից ոմանք ենթարկված են կամավոր կամ ակամա աղավաղումների: Կան և այնպիսի հեղինակներ, որոնք կիսատ են տպագրված՝ միակ ծանոթ թերի ձեռագրից, այնինչ հետո գտնվել են անթերի ձեռագիրներ, որոնցից դեռ հրատարակություն չէ եղած»:

Բաց գիտակցելով պատմագրության համար ստուգված գիտական բնագրերի հրատարակության անհրաժեշտությունը, Ստ. Մալխասյանցը և նույն նպատակին նվիրված Մ. Աբեղյանը, Գ. Տեր-Մկրտչյանը և ուրիշներ ծրագրում

էին վիթխարի մի աշխատանք— հրատարակել հայ հին ու նոր պատմագիրների 50-հատորանոց մատենաշարը՝ գիտական խստապահանջությամբ:

Այս ծրագիրը, սակայն, անհնար էր իրագործել նախասովետական շրջանում, առանց պետական օժանդակության ու նյութական պայմանների, հույսը դնելով սոսկ այս կամ այն դրամատիրոջ ողորմածության և աղբյուրագետ-գիտնականների անշահախնդիր ու ինքնանվեր աշխատանքի վրա: Ինչպես և սպասելի էր, նախասովետական շրջանում հնարավոր եղավ հրատարակել միայն 3 բնագիր (Ագաթանգեղոս, Ղ. Փարպեցի և Խորենացի). սկսված մեծ աշխատանքը դադարեց և որպես ժառանգություն անցավ սովետահայ աղբյուրագետներին:

Ռուսական կայսրության հետամնաց ծայրամասերից մեկը հանդիսացող Հայաստանը, որ արյունաքամ էր եղել առաջին աշխարհամարտի՝ մեր ժողովրդի համար կործանարար ու ահավոր տարիներին, դառնալով Խորհրդային հանրապետություն, վիթխարի աշխատանք պետք է ծավալեր քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման, ժողովրդի նյութական ու կուլտուրական վիճակի բարվոքման համար:

Չնայած երկրի ծանր վիճակին, Սովետական իշխանության հաստատումից ընդամենը 18 օր անց՝ 1920 թ. դեկտեմբերի 17-ին, Հայաստանի կառավարության հատուկ որոշմամբ հիմնադրվեց Հայաստանի առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի համալսարանը, իսկ քիչ անց՝ 1921 թ. փետրվարի 5-ին, Էջմիածնի մատենադարանի հիման վրա ստեղծվեց Հայաստանի առաջին գիտա-հետազոտական հիմնարկությունը՝ Էջմիածնի գիտական ինստիտուտը:

Սովետական իշխանության առաջին երկու տասնամյակները, սակայն, նպաստավոր չէին հայ աղբյուրագիտության կարգացման, ձեռագիր հուշարձանների հրապարակման և ուսումնասիրության ասպարեզում աշխատանքներ ծավալելու համար:

Հայագիտության ակնառու ներկայացուցիչները, որոնք գիտական աշխատանքի մեծ փորձ ու կարողություն ունեին և կարող էին աղբյուրագիտական ծանրակշիռ գործ կատարել, զբաղված էին շատ ավելի հրատապ հարցերով: Որպես Հայաստանի նորաստեղծ համալսարանի դասախոսներ, նրանց վրա էր դրված հայ ժողովրդի քաղաքական-տնտեսական կյանքի, գրականության ու լեզվի պատմության գիտական դասընթացներ ստեղծելու և կարևորագույն խնդիրների մասին մենագրություններ գրելու մեծ ջանքեր պահանջող ու պատասխանատու գործը:

Հայագետների հաջորդ սերունդը նույնպես զրկված էր աղբյուրագիտական հարցերով զբաղվելու լայն հնարավորություններից: Հեղափոխությունից առաջ, ինչպես արդեն ասել ենք, հրատարակվել էին հայ մատենագրության շատ հուշարձաններ: Մինչև աղբյուրագիտական նոր նյութեր հրատարակելն անհրաժեշտ էր մարքս-լենինյան աշխարհայացքի լույսի տակ վերագնահատել հայ հին մատենագրության՝ արդեն հայտնի սկզբնաղբյուրները, քաղել դրանցից հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական կյանքի ու դասակարգային պայքարի հարցերին վերաբերող բոլոր տվյալները: Տեսական մեծ նշանակություն ունեցող այս խնդիրներով զբաղվող սովետական պատմաբանների, գրականագետների ու լեզվաբանների ավագ սերնդին, անցյալի կուլտուրական ժառանգության գնահատման հարցում, վիճակված էր հաղթահարել նաև գռեհիկ-սոցիոլոգիական որոշ տեսակետներ:



Մարքսիստական հայ աղբյուրագիտությունը և բնագրագիտությունը շոշափելի արդյունք սկսեցին տալ միայն 30-ական թվականների վերջերից և, մանավանդ, հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո:

Սովետահայ աղբյուրագետները կոչված էին լուծելու պատասխանատու և դժվարին բազմաթիվ խնդիրներ:

Հայ ժողովրդի պատմության մի շարք դարաշրջաններին վերաբերող սկզբնաղբյուրները գրեթե բոլորովին չէին գրավել նախասովետական շրջանի աղբյուրագետների ու հնագրագետների ուշադրությունը: Դրանք այն շրջաններն էին, որոնք նյութ չէին տալիս փառաբանելու անցյալը, տարվելու պատմական ռոմանտիկայով: Մեծ աշխատանք պետք է կատարվեր XIII—XVIII դարերի դեռևս անհայտ կամ քիչ հայտնի բնագրերի հավաքման, մշակման ու հրատարակության առումով:

Ինչպես իրավամբ նկատել էր Ն. Յա. Մառը դեռևս XIX դարի վերջերին. «Հայոց պատմությունը և նրա գրականության պատմությունը մինչ այժմ (այսինքն՝ մինչ 1891 թ.) չեն մշակված, որովհետև արևմտաեվրոպական գիտնականներն անդրադառնում էին հայկական աղբյուրներին Իրանի, Բյուզանդիայի, արաբների, խաչակիրների, սելջուկների, մոնղոլների և այլոց պատմության համար լրացուցիչ տվյալներ ստանալու նպատակով միայն, անտեսելով այդ աղբյուրների նշանակությունը հենց Հայաստանի պատմության ուսումնասիրության համար. հայ գիտնականները սովորաբար իդեալականացնում էին իրենց անցյալը, մի բան, որ բացառում էր նրա գիտական ուսումնասիրության հնարավորությունը»: Ակադեմիկոս Մառը քաջ գիտակցում էր, որ անհրաժեշտ է ստեղծել «ինքնուրույն հայկական բանասիրություն՝ ստուգված քննական բնագրերով և ամուր մշակված տեսական հայացքներով»: «Ինքնուրույն հայ բանասիրություն» ստեղծելու համար դեռևս շատ դժվարություններ էին հաղթահարելու սովետահայ բանասերները:

Նախասովետական աղբյուրագիտության և հնագրագիտության ուշադրության կենտրոնում էին գտնվում հիմնականում հայ հին ու միջնադարյան աստվածաբանական, պատմագրական և ավելի նվազ չափով՝ գեղարվեստական գրականության հուշարձանների հրատարակման խնդիրները:

Հայ փիլիսոփայության, քերականագիտության, բժշկության, աստղաբաշխության, մաթեմատիկայի, մեծ չափով նաև գեղարվեստական գրականության ու մանրանկարչության հուշարձանների ուսումնասիրությունն ու հրատարակությունը կուսական վիճակում էին: Չէր ստեղծված համապատասխան աղբյուրագիտական հիմք հայ մշակույթի բոլոր բնագավառների համամասնյա ուսումնասիրության համար: Ըստ այդմ հրամայական պահանջ էր առաջացել, պատմագրական սկզբնաղբյուրներից բացի, կարգ տալ նաև այլ կարգի ձեռագիր բնագրերի գիտական մշակմանն ու հրատարակմանը:

Վերը նշեցինք, որ հեղափոխությունից առաջ Ստ. Մալխասյանցի գլխավոր խմբագրությամբ տպագրվեցին հայ պատմագիրների ամբողջական մատենաշարի ծրագրված հատորներից ընդամենը 3-ը: Անհրաժեշտ էր շարունակել սկսված գործը և որոշ հաջորդականությամբ լույս ընծայել հայ մյուս պատմագիրների երկերի գիտական բնագրերը՝ առկա բոլոր ձեռագրերի բաղդատությամբ:

Անցյալում որոշ աշխատանք կատարված էր հայկական սկզբնաղբյուրները ռուսերեն և եվրոպական լեզուներով թարգմանելու առումով. սակայն կային

դեռևս տասնյակ և հարյուրավոր բնագրեր, որոնց նշանակությունը դուրս էր գալիս հայագիտության շրջանակներից և որոնք, թարգմանված չլինելով, անծանոթ էին մնացել արևելագիտության լայն շրջաններին: Ավելի մեծ ուշադրություն պետք է դարձվեր հայկական աղբյուրների թարգմանությանը. պետք է բարձրացվեր դրանց գիտական որակը: Ինչպես տեսնում ենք, սովետահայ աղբյուրագետների ու հնագրագետների առջև ծառացած էին մեծ ու պատասխանատու խնդիրներ:

Աղբյուրագիտական աշխատանքները Հայաստանում, մինչև 1959 թվականը (երբ Մատենադարանի բազայի վրա ստեղծվեց հին ձեռագրերի գիտահետազոտական ինստիտուտ), կատարվում էին հանրապետության տարբեր գիտական օղակներում՝ Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության, Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտներում, փիլիսոփայության և արևելագիտության սեկտորներում և այլ հիմնարկություններում (որոնց թվում նաև Մատենադարանը):

1959 թվականից հետո աշխատանքի հիմնական ծանրությունն իր վրա վերցրեց Մաշտոցի անվան Մատենադարանի գիտական անձնակազմը:

Գ.

Համառոտակի ծանոթանանք, թե ի՞նչ հաջողություններով են դիմավորում հայ աղբյուրագետները վերածնված Հայաստանի 50-ամյա հոբելյանը:

Ընթերցողները պետք է ներողամիտ լինեն՝ հապճեպ թվարկման տպավորություն ստանալով մեր հաղորդման այս մասից: Կատարված գիտա-հետազոտական աշխատանքների ու հրապարակված գիտական բնագրերի մասին մասնագիտական խոսք ասելու համար հարկ կլիներ ընդարձակվել մեկ հատկացված սուղ էջերի սահմաններից:

Սկսենք հին ու միջնադարյան պատմագրական հուշարձանների ուսումնասիրության ու հրատարակության ասպարեզում կատարված աշխատանքից:

1921 թվականին Էջմիածնում լույս տեսան 2 արժեքավոր պատմագրական հուշարձաններ՝ *Վկայք արևելից* ժողովածուն և Շապուհ Բագրատունուն վերագրված *Պատմութիւնը*՝ X դարի մեծարժեք մի բնագիր: Այս 2 բնագրերի հրատարակությունը նախապատրաստված ու մասամբ իրագործված էր հեղափոխությունից առաջ, ուստի դյուրին չէ դրանք սովետահայ աղբյուրագիտության երախայրիքը համարել: Արդեն հայտնի պատճառներով գրեթե 2 տասնամյակ աղբյուրագիտական ծանրակշիռ աշխատանքներ չկատարվեցին մեզանում: Որոշ աշխուժություն սկսվեց 30-ական թվականների վերջերից միայն: 1938—1939 թթ. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալի հրատարակությամբ լույս տեսան Զաքարիա Ագուլեցու *Օրագրութիւնը* (XVII դարի տնտեսական կյանքի և, մասնավորապես, առևտրի պատմության համար խիստ ուշագրավ սկզբնաղբյուր), Աբրահամ Երևանցու *Պատմութիւն պատերազմացը*, VII դարի նշանավոր պատմիչ Սեբեոսի գիտական հրատարակությունը: Երկու տարի հետո՝ 1941 թ. լույս տեսավ Հովհան Մամիկոնյանի *Պատմութիւն Տարօնոյ* երկի նոր հրատարակությունը և տնտեսական կանկյան գործարքների վերաբերող հայերեն արխիվային փաստաթղթերի արժեքավոր մի ժողովածու՝ *Կալվածագրեր* խորագրով: Այնուհետև, գրեթե մեկ տասնամյակ, կրկին դադարեց պատմական սկզբնաղբյուրների հրատարակությունը՝ հայրենական մեծ պատերազմի հետևանքով:

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ստեղծումից և, մանավանդ, պատերազմի հաղթական ավարտից հետո մի շարք պատմաբաններ հանձնարարություններ ստացան պատրաստելու ձեռագրական անտիպ սկզբնաղբյուրների հրատարակությունը և, 1950 թվականից սկսած, մեկը մյուսի հետևից հրատարակվեցին մի շարք ծավալուն սկզբնաղբյուրներ:

1950 թվականին լույս տեսավ *ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ* ժողովածուն, որին հաջորդեցին նույն սկզբունքներով կազմված 3 ընդարձակ հատորներ XV դարի հայերեն հիշատակարանների: 1951—56 թթ. լույս տեսան XIII—XVIII դդ. իրենց գերակշիռ մասով անտիպ մանր ժամանակագրությունների ստվարածավալ ժողովածուներ՝ անհրաժեշտ ներածություններով ու արժեքավոր ծանոթագրություններով: Հիշատակարանների ու մանր ժամանակագրությունների հեղինակները, մեծ մասամբ լինելով աշխատավոր ժողովրդի ծոցից ելած համեստ գրչի մշակներ, պատմական անցուդարձերը նկարագրել ու գնահատել են աշխատավորական շերտերի տեսանկյունից՝ ժողովրդի տնտեսական վիճակի և կենցաղի մասին գրանցելով շատ ուշագրավ տեղեկություններ:

1957 թվականին Եղիշեի *Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին* հռչակավոր պատմագրության գիտական բնագրի հրատարակությամբ, որ մեծ խնամքով պատրաստել էր անվանի բանասեր Երվանդ Տեր-Մինասյանը, վերածնվեց *Պատմագիրք հայոց* գիտական շարքի հրատարակության գաղափարը: Դրանից հետո լույս տեսան Կիրակոս Գանձակեցու, Արիստակես Լաստիվերտցու, Հովհան Կամենցացու պատմագրական արժեքավոր երկերի գիտական բնագրերը. *Հայկական աղբյուրները Բյուզանդիայի անկման մասին* խորագրով աղբյուրագիտական ժողովածուն և մի շարք այլ, ավելի մանր բնագրեր: Այս ասպարեզում աշխատանքները լայն ծավալով շարունակվում են, և առաջիկա տարիների ընթացքում լույս կտեսնեն նաև բազմաթիվ այլ պատմիչների՝ Սեբեոսի, Ուխտանեսի, Մովսես Կաղանկատվացու, Սամվել Անեցու, Վարդան Արևելցու, Թովմա Մեծոփեցու, Աբրահամ Կրետացու պատմագրական երկերի գիտական բնագրերը:

Ոչ պակաս նշանակություն ունեն նաև օտար աղբյուրներից Հայաստանի ու հայ ժողովրդի մասին տվյալներ հավաքելու, թարգմանելու և համապատասխան գիտական ծանոթագրություններով լույս ընծայելու ասպարեզում տարվող աշխատանքները: Սովետահայ աղբյուրագետների ջանքերով հրատարակվել են արդեն բյուզանդական, վրացական, արաբական, թուրքական, արևմըտա-եվրոպական աղբյուրներից քաղված մեծարժեք նյութերի մի քանի ժողովածուներ:

Հայաստանի և հարևան երկրների տնտեսական կյանքի ու ագրարային հարաբերությունների ուսումնասիրության համար առաջնակարգ նշանակություն ունեն Մատենադարանում պահվող պարսկերեն հրովարտակների ու կալվածագրերի ժողովածուները, որոնց վերծանման, թարգմանության և ուսումնասիրության նպատակով ծրագրված աշխատանքներ են կատարվում Մատենադարանում: Տպագրվել են արդեն *Մատենադարանի պարսկերեն հրովարտակների* 2 պրակները և *Մատենադարանի պարսկերեն կալվածագրերի* առաջին պրակը (հայերեն և ռուսերեն թարգմանությամբ): Այս հրատարակություններով գիտական շրջանառության մեջ դրված նոր նյութերը հնարավորություն են ընձեռում բացահայտելու նոր երևույթներ միջնադարյան Իրանի և Անդրկովկասի տնտեսական կյանքի տարբեր ոլորտների վերաբերյալ:

Զգալի աշխատանք է կատարված նաև իրավաբանական բնագրերի ուսում-

նասիրության և հրատարակության բնագավառում: Լույս է տեսել *Կանոնգիրք Հայոց* առաջնակարգ սկզբնաղբյուրի առաջին հատորը՝ մոտ 50 ձեռագրերի բաղդատությամբ: Արժեքավոր են նաև Դավիթ Ալավկա որդու կանոնների ժողովածուի, Սմբատ Սպարապետի *Դատաստանագրքի* հրատարակությունները:

Գիտական առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում Հարավային Ռուսաստանի շրջաններում բնակություն հաստատած և իրենց ներքին գործերում ինքնավար ճանաչված հայ գաղթօջախների համար ստեղծված *Աստրախանի հայոց դատաստանագիրքը*՝ մի առաջնակարգ սկզբնաղբյուր հայ իրավունքի (մանավանդ վաճառականական իրավունքի) ուսումնասիրության համար, որ լույս տեսավ 1967 թվականին: Ուշագրավ են նաև Կամենեց-Պոդոլսկ քաղաքի հայկական հնամենի գաղթավայրի հայկական դատարանի արձանագրությունները, որ Կիևի արխիվից քաղվելով տպագրվեցին 1963 թվականին:

Վերջին 10—15 տարիների ընթացքում հրատարակվել են նաև իրավունքի պատմության համար կարևոր ավելի մանր մի շարք բնագրեր, սակայն հատուկ նշանակություն ունեն հայ իրավունքի մեծ երախտավոր Մխիթար Գոշի *Դատաստանագրքի* նախնական խմբագրության գիտական բնագրի պատրաստման նպատակով տարվող բարդ աշխատանքները, որոնք գրեթե մոտենում են ավարտին:

Սովետահայ աղբյուրագիտության ամենաակնառու նվաճումներից պետք է համարել այն, որ ընդամենը երկու-երեք տասնամյակում հնարավոր եղավ խիստ ընդարձակել ավանդական հայագիտության սահմանները և արժեքավոր սկզբնաղբյուրների հրատարակությամբ հիմք ստեղծել հայ փիլիսոփայության, քերականագիտության, բժշկագիտության, տիեզերագիտության, մաթեմատիկայի, չափագիտության, քիմիայի, մանկավարժության և այլ գիտությունների մարքսիստական խորակնին ուսումնասիրության համար:

Այս առումով աղբյուրագիտական աշխատանքների հիմքը դրեց մեծանուն գիտնական, ակադեմիկոս Հ. Մանանդյանը: Նրան ենք պարտական Թեոն Աղեքսանդրացու *Յաղագս ճարտասանական կրթութեանց*, Հերմես Եռամեծի *Սահմանք* և այլ փիլիսոփայական բնագրերի օրինակելի հրատարակությունների համար: Այդ գործը մեծ ծավալ ընդունեց հատկապես այս վերջին տարիներին, երբ փիլիսոփայական, քերականագիտական բնագրերի ուսումնասիրությանն ու հրատարակությանը ձեռնարկեցին մասնագիտական պատրաստություն ստացած երիտասարդ հայագետներ: Նրանց ջանքերով 1956 թ. հրատարակվեց Հովհան Որոտնեցու *Վերլուծութիւն ստորոգութեանցն Արիստոտելի* ուշագրավ աշխատությունը. դրան հաջորդեցին Զենոնի *Յաղագս բնութեան*, Դավիթ Անհաղթի *Սահմանք իմաստասիրութեան* աշխատությունները, Արիստոտելի *Անալիտիկայի մեկնությունը*, VI դարի անանուն հեղինակի և XIII դարի իմաստասեր Վահրամ Րաբունու *Արիստոտելի ստորոգութեանց մեկնութիւն* արժեքավոր բնագրերը՝ մի շարք ձեռագրերի բաղդատությամբ: Մեծ նվաճում պետք է համարել այն հանգամանքը, որ բոլոր այս հրատարակություններն իրագործվել են ռուսերեն զուգահեռ թարգմանությունների հետ միասին, որով և հայ իմաստասիրության նվաճումները դուրս են բերված համաշխարհային ասպարեզ: Աղբյուրագիտական այս աշխատանքների առկայությամբ հնարավոր եղավ առաջին քայլերը կատարել հայ փիլիսոփայության պատմության գիտական շարադրանք ստեղծելու ասպարեզում: Հայ փիլիսոփայությունն իր արժանի տեղը գրավեց համաշխարհային մշակույթի գանձարանում: Ուշագրավ են նաև քերականագիտական բնագրերի ուսումնասիրության և հրատարակության ոլորտում



ստացված արդյունքները: Լույս են տեսել արդեն գրչության արվեստին վերաբերող XIII—XV դարերի քերականագիտական երկերի մի ժողովածու, Եսայի Նչեցու *Վերլուծութիւն քերականին* աշխատությունը, հրատարակության են պատրաստվում այլ բնագրեր, որոնց թվում նաև միջնադարյան հայկական բառարաններ:

Արդյունավետ է եղել նաև բնական ու ճշգրիտ գիտությունների ներկայացուցիչների և աղբյուրագետների համատեղ աշխատանքը:

Երկու ստվար հատորներով հրատարակվել են VII դարի նշանավոր գիտնական Անանիա Շիրակացու և XII դարի իմաստասեր ու տոմարագետ Հովհաննես Սարկավագի մատենագրությունները: Այդ բնագրերի մասնագիտական ուսումնասիրության հիման վրա գրվեցին մենագրություններ մաթեմատիկայի, տիեզերագիտության ու տոմարի պատմության հարցերի շուրջ: Հրատարակվեցին Ամիրդովլաթ Ամասիացու *Օգուտ բժշկութեան* հանրագիտարանի բնույթ ունեցող աշխատությունը, XIII դարի բժիշկ Գրիգորիսի *Յաղագս բնութեան մարդոյ* ուշագրավ տրակտատը և այլ գործեր: Ռուսերեն լույս տեսավ Մխիթար Հերացու *Ջերմանց մխիթարութիւն* գլուխ-գործոցը, գրվեցին բազմաթիվ ուսումնասիրություններ, հոդվածներ, դիսերտացիոն աշխատանքներ: Զգալի աշխատանք կատարվեց նաև հայ միջնադարյան քիմիայի ուսումնասիրության բնագավառում:

Նախասովետական շրջանում հրատարակվել էին միջնադարյան հայ բանաստեղծներից միայն մի քանիսի ստեղծագործությունների ժողովածուները, ինչպես նաև առանձին բանաստեղծություններ՝ պարբերականներում և այլ հավաքածուներում: Այդ հրատարակությունները, սակավ բացառությամբ, պատահական ձեռագրերի հիման վրա էին իրագործված, անկատար էին և՛ իրենց ընդգրկման, և՛ բնագրերի ներկայացման առումով: Բազմադարյան հայ գեղարվեստական գրականության հուշարձանների գիտական հրատարակության առաջին օրինակը տվեց բազմավաստակ հայագետ Մ. Աբեղյանը՝ 1940-ին հրատարակելով *Գուսանական ժողովրդական տաղեր* արժեքավոր ժողովածուն: Այդ գործը, սակայն, լայնորեն ծավալվեց 50-ական թվականներին, երբ հայ բանաստեղծության հուշարձանների ուսումնասիրությանը լծվեցին մասնագիտական կրթություն ստացած և մարքս-լենինյան մեթոդոլոգիայով զինված երիտասարդ մասնագետներ:

Շուրջ 15 տարում լույս տեսան Հովհաննես Երզնկացու, Խաչատուր Կեչառեցու, Կոստանդին Երզնկացու, Հովհաննես Թլկուրանցու, Մկրտիչ Նաղաշի, Գրիգորիս Աղթամարցու, Մարտիրոս Ղրիմեցու, Հովնաթան Նաղաշի, Երեմիա Քյոմուրճյանի, Պաղդասար Դպիրի, Պետրոս Ղափանցու, Հովհաննես Կարնեցու բանաստեղծությունների ժողովածուները, *Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր*, *Հայ միջնադարյան պատմական ողբեր*, *Պատմութիւն փարման մանկան*, *Պատմութիւն Փարեզի և Վիեննայի* սիրավեպերը, *Էջեր միջնադարյան հայկական արձակի գիրքը* և բազմաթիվ այլ մանր ու խոշոր բնագրեր: Այս հրատարակությունները, որ իրարից տարբերվում են մանրամասներով, իրագործված են մի ընդհանուր ծրագրով: Ամեն մի բանաստեղծի ստեղծագործությունը ներկայացնելուց առաջ, ներածական ուսումնասիրության մեջ տրըվում է հեղինակի կյանքի տարեգրությունը և ստեղծագործական դիմապատկերը՝ ձեռագիր ու տպագիր բոլոր նյութերի խորակնին ուսումնասիրության հիման վրա: Բնագրերի հրատարակությունը կատարված է աղբյուրագիտական առաջավոր սկզբունքներով. օգտագործված են ըստ հնարավորին ձեռագիր ու

տպագիր բոլոր աղբյուրները, տողատակում նշված են մեծ ու փոքր տարընթերցվածքները, իսկ ծանոթագրությունների բաժնում պատմա-բանասիրական տեղեկություններ են տրված ամեն մի բանաստեղծության բովանդակության, հետագայում կրած խմբագրությունների ու փոփոխությունների և հարակից հանգամանքների մասին:

Անշուշտ, այդ հրատարակություններում կան նաև առանձին թերություններ ու վրիպումներ, այս կամ այն բանաստեղծի դիմագիծը կերտելիս որոշ դեպքերում բավարար չափով հաշվի չեն առնվել նրանից մեզ հասած բոլոր (նաև կրոնական ու թույլ) ստեղծագործությունները և այլն: Այդ թերությունները, սակայն, մասնակի են և դյուրավ շտկելի: Հայ միջնադարյան բանաստեղծների՝ վերջին տարիներս կյանքի կոչված մատենաշարը մեր բնագրագիտության ամենաակնառու նվաճումներից է: Այդ մատենաշարի ամուր պատվանդանի վրա պետք է կերտվի հայ միջնադարյան բանաստեղծության բազմակողմանի պատմությունը:

Դ

Անհրաժեշտ է հատկապես անդրադառնալ հայկական սկզբնաղբյուրների թարգմանությունների խնդրին: Այս բնագավառում որոշ աշխատանք արդեն կատարված է. ռուսերեն են թարգմանվել Կորյունի *Վարք Մաշտոցին*, Սեբեոսի, Արիստակես Լաստիվերտցու, Զաքարիա Քանաքեռցու պատմագրական երկերը, Ան. Շիրակացու տիեզերագիտական աշխատությունները և խնդրագիրքը, Մխիթար Գոշի և Վարդան Այգեկցու առակների ընտրանին, Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի *Դատաստանագրքերը*, փիլիսոփայական մի շարք երկեր (թվարկված վերևում), Զաքարիա Ագուլեցու *Օրագրութիւնը*, Աբրահամ Երևանցու *Պատմութիւնը*, Սիմեոն Երևանցու *Ջամբռը*, Սիմեոն Լեհացու *Ուղեգրութիւնը* և այլ բնագրեր:

Թարգմանչական աշխատանքի առատ հունձ է սպասվում առաջիկայում. շուտով հրատարակվելու են Առաքել Դավրիժեցու, Աբրահամ Կրետացու, Կեղծ-Շապուհ Բագրատունու *Պատմությունները*, Մովսես Խորենացու *Պատմության* նոր թարգմանությունը և այլ գործեր:

Բնագրային ճշգրտությամբ ու գեղարվեստական արժանիքներով ուրույն տեղ են գրավում հանգուցյալ ակադեմիկոս Հ. Ա. Օրբելու արխիվում պահվող Եղիշեի, Ղազար Փարպեցու, Թովմա Արծրունու լրիվ կամ մասնակի թարգմանությունները, որոնք ամբողջացվելու և հրատարակվելու են Մատենադարանի և գրականության ինստիտուտի համատեղ ջանքերով:

Առաջիկայում լուրջ ուշադրություն պետք է նվիրել նաև միջնադարյան հայ բանաստեղծների գործերի ռուսերեն պատշաճ թարգմանությանը: Պետք է որոնել, գտնել ու խնամքով աճեցնել երիտասարդ կադրեր, որոնք հին և նոր լեզուներին տիրապետելու հետ մեկտեղ օժտված լինեն բանաստեղծական շնորհքով և կարողանան կատարել բանաստեղծությունների բարձրորակ, գեղարվեստական թարգմանություններ:

Այժմ մի քանի խոսք միջնադարյան հայ մանրանկարչության մասին— ձեռագրագիտական ուսումնասիրությունների մի բնագավառ, որի նշանակությունը վաղուց ի վեր չափվում է համաշխարհային չափանիշներով:

Հայ մանրանկարչության գիտական խորակնին ուսումնասիրությունը մի երկու տասնամյակի պատմություն ունի և կապված է Լ. Ա. Դուռնովոյի անվան հետ: Հայագիտությունը երախտագիտությամբ է հիշելու տքնաջան ու համեստ



այդ կնոջը, որն իր գիտելիքներն ու եռանդն ամբողջովին նվիրեց հայ միջնադարյան արվեստի ուսումնասիրությանը: Ցավոք, երիտասարդ մասնագետներ նա գրեթե չպատրաստեց: Այս վերջին տարիներս Հայկ. ՍՍՀ ԳԱ արվեստի ինստիտուտն ու Մատենադարանը, հաղթահարելով մեծ դժվարություններ, հայ մանրանկարչության պատմության ուսումնասիրության ոլորտն ընդգրկեցին մի խումբ երիտասարդ աշխատողների: Նրանք արդեն աճել են, խորացել ամեն մեկը այս կամ այն մանրանկարչական դպրոցի ուսումնասիրության բնագավառում, հանդես են եկել գրքերով ու հոդվածներով և լիահույս ենք, որ առաջիկայում ի վիճակի կլինեն ծանրակշիռ խոսք ասելու միջնադարյան հայ բարձրարվեստ մանրանկարչության և կերպարվեստի մյուս բնագավառների մասին, որոշելու նրանց նշանակությունը համաշխարհային արվեստի պատմության մեջ:

Մատենադարանի և պետական պատկերասրահի համատեղ աշխատանքով մեզ մոտ ու արտասահմանում արդեն լույս են տեսել հայ մանրանկարչության լավագույն նմուշների փառահեղ ալբոմներ, 20 բացիկներից բաղկացած մի տուփ և այլ գրքեր, իսկ շուտով լույս կտեսնի միջնադարյան հայ արվեստի, երկրագործության, կյանքի ու կենցաղի տարբեր երևույթները պատկերող մանրանկարների շքեղ հավաքածուն, որը ճանաչողական մեծ արժեք ունենալով, միաժամանակ պարունակում է հայ մանրանկարչության բազմաթիվ ուշագրավ նմուշներ:

Ի լրումն այս ամենի պետք է նշել, որ Մատենադարանի մի խումբ աշխատակիցների ջանքերով կազմվել են աղբյուրագիտական հետազոտությունների համար նախապայման հանդիսացող ցուցակներ՝ թեմատիկ, ժամանակագրական, գրչության վայրերի և այլն: Ուշագրավ է Մատենադարանի հայերեն ձեռագրերի երկհատոր ամբողջական ու ստվարածավալ ցուցակը, ուր ամփոփված են տվյալներ յուրաքանչյուր ձեռագրի բովանդակության և այն մասին, թե երբ, որտեղ և ում կողմից է գրված, թերթերի քանակի, նյութի, մեծության, պահպանակ-պատառիկների, գրչությանը վերաբերող ու հետագայի հիշատակարանների մասին: Ցուցակի ներածականում և հավելվածներում, ուշագրավ ու ստույգ տվյալների հիման վրա, շարադրված է Մաշտոցյան Մատենադարանի ձեռագրական հավաքածուների գոյացման բազմադարյան պատմությունը: Այժմ մեր խնդիրն է առաջ մղել ձեռագրերի ընդարձակ ու մանրակրկիտ ցուցակի ստեղծման արդեն սկսված գործը, ինչպես նաև ձեռնամուխ լինել օտար լեզուներով ձեռագրերի գիտական ցուցակագրման աշխատանքներին:

Սովետահայ աղբյուրագետների ու ձեռագրագետների վաստակը բնավ չի սպառվում վերոհիշյալով, մենք հնարավորություն չունենք անդրադառնալու Մատենադարանի արխիվային բաժնի փաստաթղթերի ուսումնասիրության և հրապարակման ասպարեզում տարված արդյունավետ աշխատանքներին, ինչպես նաև առաջիկայում հրատարակության ներկայացվելիք *Դիվան հայոց պատմութեան* նոր շարքի հատորներին: Մատենադարանի շուրջ համախմբված աղբյուրագետները ծրագրված աշխատանք են կատարում նաև հայ-ռուսական քաղաքական ու ռազմական համագործակցության պատմությունը լուսաբանող փաստաթղթերի ժողովածուներ պատրաստելու, հայ-իրանական գրական առնչությունների բացահայտման և այլ ասպարեզներում:

## Ե

Այժմ՝ հայ աղբյուրագիտության վաղվա հոգսերի ու մեր առջև ծառացած նոր խնդիրների մասին:

Խիստ ընդարձակ են եղել հայ ժողովրդի միջազգային կապերը. քաղաքական ու տնտեսական հողի վրա մեր նախնիները շփվել են հունա-հռոմեական աշխարհի, պարսիկների, արաբների, Մերձավոր Արևելքում հաստատված խաչակիր պետությունների, սելջուկների, մոնղոլների և արևելքից Փոքր Ասիա ու Անդրկովկաս ներթափանցած մյուս ժողովուրդների հետ: Միջնադարում հայ վաճառականները կարևոր դեր են խաղացել միջազգային ապրանքափոխանակության մեջ, կայուն հենակետեր ստեղծելով հեռավոր արևելյան երկրներից մինչև Հոլանդիա, Ռուսաստանից մինչև Հաբեշստան ընկած բազմաթիվ վաճառաշահ կենտրոններում: Այսպիսի լայն կապերի ու առնչությունների շնորհիվ հայ մշակույթի գանձարանը հարստացել է օտար երկրների մասին արժեքավոր պատմագրական երկերով, օտար լեզուներից կատարված մեծաքանակ թարգմանություններով: Գիտական առանձնահատուկ նշանակություն ունեն հունարեն ու ասորերեն լեզուներից կատարված այն թարգմանությունները, որոնցից շատերի բնագրերը չեն պահպանվել: Ձեռագրական այսպիսի ժառանգության գիտական բարձր մակարդակով ուսումնասիրությունը, անխուսափելիորեն, կապված է հին ու նոր լեզուներով գոյություն ունեցող սկզբնաղբյուրների ու գրականության հետ, ուստի մեր առաջնահերթ պարտականությունն է ստեղծել հունարեն, ասորերեն, լատիներեն, արաբերեն, պարսկերեն և այլ լեզուների տիրապետող բարձրորակ երիտասարդ մասնագետներ: Մեր հետագա առաջընթացը մեծ չափով պայմանավորված է նոր կադրերի դաստիարակությամբ:

Նույնը կարելի է ասել նաև բնական ու ճշգրիտ գիտությունների պատմության ուսումնասիրության հեռանկարների մասին: Ըստ ամենայնի բարձր գնահատելով այս բնագավառում աշխատող աղբյուրագետների և գիտության այս կամ այն մասնաճյուղի պատմությամբ զբաղվող գիտնականների վաստակը, այնուամենայնիվ, գտնում ենք, որ դրված է միայն գործի հիմքը: Տասնյակ ձեռագիր հուշարձաններ սպասում են ուսումնասիրության ու հրատարակության իրենց հերթին, իսկ հերթն ուշանում է, որովհետև չունենք միջնադարյան գիտությունների պատմության խրթին հարցերին խորամուխ բավարար չափով մասնագետներ, որոնք ի վիճակի լինեն քննարկելու հայերեն ձեռագրերի տվյալները՝ տարբեր ժողովուրդների կողմից, տարբեր լեզուներով ստեղծված հարուստ մատենագրության հետ բաղդատելով:

Առ այսօր սովետահայ աղբյուրագետները գրեթե ոչինչ չեն արել միջնադարյան ճառընտիրների, քարոզագրքերի, մեկնողական ու դավանաբանական գրվածքների ուսումնասիրության ասպարեզում: Մինչդեռ այդ կարգի սկզբնաղբյուրները հետաքրքրական նյութեր են պարունակում ներքին և արտաքին ճակատներում հայ եկեղեցու մղած գաղափարական պայքարի, ժողովրդի հավատալիքների, կենցաղի ու սովորությունների և հարակից հարցերի մասին: Այս կարգի սկզբնաղբյուրներն ուսումնասիրելու և դրանց մեջ թաքնված ուշագրավ տվյալները վեր հանել կարողանալու համար պետք է խորամուխ լինել նաև աստվածաբանական ու դավանաբանական սխոլաստիկայի մեջ, ձեռք բերել ավազի սարերից ոսկու հատիկներ գտնելու կարողություն:

Հայերեն ձեռագրերի կեսից ավելին պահվում է արտասահմանյան երկրներում: Մենք արդեն կապեր ենք ստեղծել հայերեն ձեռագրերի հավաքածուներ ունեցող գրեթե բոլոր կենտրոնների հետ, ստացել ենք մի շարք ձեռագրերի միկրոպատճենները և այլն: Սակայն հայ ձեռագրագիտության հետագա զարգացման շահերը թելադրում են անձնական շփում ստեղծել վերոհիշյալ հաստատություններում աշխատող հայագետների հետ, մի խումբ գիտական աշխատողների երկար ժամկետով գործուղել Վենետիկ, Երուսաղեմ, Նոր Ջուղա, Վիեննա, Փարիզ, Լոնդոն և այլ վայրեր՝ ուսումնասիրելու, պատճենահանելու այդտեղ պահվող ձեռագրերը:

Ի վերջո, ևս մի բաղձանք. ձեռագրագիտական-աղբյուրագիտական ուսումնասիրությունները Հայաստանում այժմ կատարվում են հիմնականում Մաշտոցյան Մատենադարանում, սակայն այդ գործին մեծ չափով նպաստում են Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության, գրականության, արվեստի ու փիլիսոփայության ինստիտուտները, արևելագիտության սեկտորը և հանրապետական ու միութենական այլ գիտահետազոտական հաստատություններ: Մեր փոխադարձ կապերն այդ հաստատությունների հետ գործարար են ու բարեկամական, սակայն ոչ բոլոր դեպքերում է գիտական աշխատանքի ներդաշնակումը պատշաճ բարձրության վրա գտնվում: Բնագրագիտության տարեկան ու հեռանկարային ծրագրերը մշակելիս շահագրգռված բոլոր հաստատությունները պետք է ավելի սերտ համագործակցեն միմյանց հետ՝ համատեղ լուծելու մեր առջև ծառացած պատասխանատու և լուրջ գիտական խնդիրները:

Աշխարհահռչակ բանաստեղծ Պաբլո Ներուդան, դիտելով Մատենադարանի ձեռագրերը, հուշամատյանում գրանցել է իր խորախորհուրդ մտորումները. «Իմաստության ու քերթողության հին, սրբազան գրքերն այստեղ շարունակում են ապրել որպես չորացած վարդեր, որոնք լի են դեռ անտեսանելի սերմերով»: Տասներեք տարի է անցել այդ գրառումից և այսօր մենք ուրախությամբ կարող ենք արձանագրել, որ Մեսրոպ Մաշտոցի անունը կրող գիտահետազոտական ինստիտուտ դարձած Մատենադարանի գիտական անձնակազմի ջանքերով անտեսանելի այդ սերմերի մի մասն արդեն ծլարձակել է, և միջնադարյան հայ գործիչների տաժանակիր աշխատանքի գնով ստեղծված մշակութային արժեքները, դարավոր մոռացումից վերստին կյանքի կոչվելով, նպաստում են սոցիալիստական հայ մշակույթի զարգացմանը, աշխատավոր հայ ժողովրդի առաջընթացին:





Վ. Բ Մուրադյան

# ԽԻԶԱԽՆԵՐԻ ՆՈՐԱՐԱՐ ՍԵՐՈՒՆԴԸ

## 1. ԱՅՍՊԵՍ ՍԿՍՎԵՑ

Տա՜կավին այսօր էլ, գյուղից վեր, փոքրիկ գերեզմանոցի եզրին կիսավեր մի մատուռ կա: Ու տակավին այսօր էլ, մերթ ընդ մերթ, մարդիկ գալիս են այստեղ, կանգնում մատուռի մոտ ու նայում ներքև՝ սարահարթին: Ո՛չ, մոմ չեն վառում նրանք ու չեն աղոթում: Մարդիկ ուղղակի գալիս են հիշելու: Հիշելու, թե ինչ է եղել երեկ, անցյալ օրը, հիսուն տարի առաջ:

Գալիս են, որ չմոռանան ու նույնիսկ վերապրեն:

Ահա այսօր էլ, անթացուպերին հենված ծերունին, որդու օգնությամբ, բարձրացել է սարն ի վեր, եկել, կանգնել է կիսավեր մատուռի մոտ, նայում է սարահարթին, տեղ-տեղ հրկիզված, ավ. ու ներմակ հողակտորներին, այդ հողակտորների մեջ կողք-կողքի շարված տներին ու պատմում է որդուն, խոսում ավելի շատ ինքն իր հետ, հիշում:

— Հա՛, տղաս, էստեղից մեր զումարտակները գրոհի անցան: Էստեղից, էս գետի ափով մենք հասանք լեռնանցք ու պատսպարվեցինք քարե բլրակների մեջ: Անօրեն, անհավասար կռիվ էր: Հա՛, անօրեն: Մի՛ ծիծաղիր, կռվի մեջ էլ օրենք ու անօրինություն կա: Ցոթի դիմաց՝ մեկը, թնդանոթի դիմաց՝ հրացան, հրացանի դիմաց՝ գերանդի ու պարսան: Բա էդ կռի՞վ եղավ, էդ օրե՞նք եղավ...

Հուզվեց ծերուկը, անզգուշորեն նստեց աշնան դալկացած կանաչին, անթացուպերը դրեց կողքին ու խոր շնչեց: Այդ ե՜րբ էր... Մի կյանք է անցել, մի ամբողջ պատմություն:

— Կանանց, երեխեքին տարանք Սաղմոսավանք, մի մասն էլ վրան խփեց: Գաղթականները մեզ մոտ էին ապաստանել, հիմա մենք էինք նորից գաղթական դարձել: Հա՛, հա՛, մի՛ ծիծաղիր, երիցս գաղթական: Էս մատուռի մոտ խարույկ էինք վառում, կանայք քարի վրա հաց էին թխում: Ես քո տարիքին էի, վառվռուն, ջահել... Գիշերն իջնում էի Քասախի ափը, կժերը ջրով լցնում, նորից սար բարձրանում: Ո՞վ կհասներ ինձ, ո՞վ... Քարե կարկուտ կտեղային թշնամու գլխին, ով փորձեր գետն անցնել: Չթողեցինք, չէ՛, չթողեցինք, որ Քասախը պղտորվի: Էս ձեզ համար եմ պատմում, է՛, ձեզ համար...

Ծերուկը նորից խոր ա՜խ քաշեց, անթացուպերը վերցրեց, զայրույթով դեն նետեց, բռունցքով մաքրեց աչքերը (թող որդին արցունքները չտեսնի) ու ասաց.

— Էստեղ մնացին հերս, Մելքոնը, Կարապետը, Գևոն, մշեցի Լևոնը... Էստեղ մնացին իմ զույզ ոտքերը: Է՜հ... Դու ինձ չես էլ լսում, ախր ես քսան տարեկան էի: Քսա՜ն...

Որդին լռչացավ, հայրն իր հուշերն է քրքրում. հայրը պատմելու, մեկի հետ սրտակցելու պահանջ ունի: Հայրն ուզում է իր նման ջահելանալ, գոնե հուշերով վերապրել քսան տարեկան հասակը:

— Քսան տարեկան, դեռ քսան օր չէի պառկել տաք անկողնում, քսան օր չէր կըշտացել սոված աչքս, դեռ քսան խաղաղ օր չէի տեսել ու ցանքը չէի ավարտել: Բայց փոխարենը ճաշակել էի կյանքի դառնությունն ու ներքուստ ընդվզել այդ բոլորի դեմ, ելք փնտրել, երբեմն հարձակվել, երբեմն նահանջել, տեսել մահ ու սարսափ, զաղթ ու ավեր, բայց չէի կորցրել հավատս:

Հակառակը, այդ հավատը կարծրացել, քարացել էր, այդ հավատը պետք էր, նրա միակ փրկիչն էր ու ապավենը: Ու ապավինել էր ավելի շատ իր հավատին, քան ճակատագրին: Չէ՛, ճակատագրին չէր ենթարկվել: Աշխարհի, կյանքի զրկանքներն արհամարհելով, նա հողին էր հանձնել իր հարազատներին, հորը, եղբորը: Նա զրկվել էր ոտքերից: Նրան կտրել էին մայր հողից, որ չապրի: Բայց նա նորից հենվել էր հողին՝ թեկուզ անթացուպերով:

Դա նրա հավատն էր: Ու ապրել էր այդ հավատով, որ հաղթեր և՛ աշխարհին, և՛ կյանքին, և՛ իրեն բաժին ընկած զրկանքներին:

Աշխա՜րհը...

— Երկար, անօրեն պատերազմը կարծես մարդու մեջ սպանել էր մարդկայինը,— ծանր տնքալով շարունակեց ծերունին:— Պատերազմը խոցել էր հողը: Այն ևս մարդկանց նման տնքում էր վերքերից. վիրավոր էր... Հողը չէր երկնում, ու ժողովուրդը մեռնում էր կամաց-կամաց, մեռնում էր ո՛չ միայն պատերազմից ու սրից, այլև՝ սովից: Իր օրենքն ու պետականությունը կորցրած Հայաստանը կորցրել էր երկիր, սահման ու պաշտպանության հնարավորությունները, դարձել արյունահեղության թատերաբեմ: Ամենից շատ տուժում էր ջահելությունը: Մեկը զոհվում էր ռազմի դաշտում, մյուսը՝ տանը, երրորդն ու չորրորդն էլ գաղթում էին անհայտ ճամփաներով: Լինում էր, որ եղբայրները հավաքագրվում էին հակառակորդ բանակներում ու կռվում իրար ճակատի՝ եղբայրացած անորոշությանն ու վշտին: Չէ՛, ելք չկար, փրկություն չկար: Մտածում էինք այդ մասին, մեկ ուզում էինք զերդաստաններով, տնով-տեղով թողնել այս անիծված հողը, գնալ աշխարհի մի խաղաղ անկյուն՝ բնավորվելու: Բայց ո՞նց հետներս տանեինք մեր ծառերը, հողը, օջախի հիմնաքարը, ո՞նց տանեինք մեր ձորերն ու գետակները, մեր զուլալ աղբյուրները: Ախր դա է հայրենիքը: Հայրենիքը տոպրակի մեջ չես լցնի, հայրենիքը սայլով, նավով չես տեղափոխի: Շատ էինք մտածում, հուզվում, իսկ ելք չկար. ախր ջահել էինք՝ քսան տարեկան:

Դեռ նոր պետք է ապրեինք, նոր սիրեինք, նոր զգայինք օջախի, աշխատանքի քաղցրությունը: Իսկ մեր գլխին կրակ էր թափվում: Մենք կռվում էինք հանուն հայրենիքի ու գիտեինք, հասկանում էինք, որ առանց ժողովրդի հայրենիքը ոչինչ է, որ պետք է փրկել նրա կյանքը, այդ կյանքը դարձնել մարդավայել:

Կյա՜նքը...

Այն անտանելի էր: Պատերազմները, կյանքի ծանր պայմանները հյուծել էին երիտասարդությանը, մաշել նրա ստեղծագործական ուժերը, հասցրել ֆիզիկական ուժասպառության: Երիտասարդ բանվորությունը տառապում էր անապահովությունից, նրա վաստակը չնչին էր, իսկ աշխատանքի պայմանները՝ դժոխային: Բանվորները «...տանջվում էին ցեխի ու մրի մեջ, ծանր բեռը շալակն առած ու մի ձեռքում բռնած ունենալով նավթի ճրագը, որից բարձրացող ծուխն ու մուրը ծառայում են նրանց իբրև ծծելու օդ: 100—200 սաժեն երկարությամբ ստորերկրյա ճանապարհ են գնում նրանք կամ 50—100 սաժեն բարձրանում, որպեսզի նշանակված տեղը հասցնեն իրենց շալակը»: Այս դժոխային նկարագիրն անգամ դեռ «երջանիկների» բաժինն էր:

Երկիրը, որ զրկված էր տնտեսական նորմալ կյանքից, երիտասարդությանը չէր տալիս զբաղմունք ու եկամուտ: Ամայացել էին գյուղերը, ջահել մարդիկ կա՛մ բանակ էին կանչվել, կա՛մ մեկնել մեծ քաղաքները՝ վաստակ փնտրելու: Ծանր էր օտարության լուծը, բայց ավելի ծանր էր մեռնել սովից ու տեսնել հարազատների, կործանման եզրին կանգնած ողջ ժողովրդի օգնություն հայցող հայացքը: Այդ հայացքն ուղղված էր մերթ դեպի Հյուսիս, մերթ՝ Արևմուտք: Այդ հայացքը փրկության ելք էր որոնում: Որտե՞ղ էր այն... «Երկաթի և արյան միջոցով պահվող, ժողովրդական տառապանքի և հառաչանքի վրա կառուցված այդ աշխարհը չէ, որ պետք է փրկի հայ ժողովրդին տանջանքից և հառաչանքից, այլ այն աշխարհը, որի արշալույսը բացվել է ռուսական հյուսիսում: Միակ ելքն այդ է, ուրիշը չկա»:

Մռայլ, անհույս ու անլույս երկնակամարում բացվել էր փրկության արշալույսը: Դա կյանքը վերափոխելու, նորոգելու ուղին էր, ազգային վերածննդի ու հարության ուղին: Դա նոր տիպի պատերազմ էր՝ հայտարարված սովին ու ավերին, աղքատությանն ու անօրենությանը: Այդ պատերազմն էլ ծնեց նոր հերոսներ, նոր գաղափարի մարտիկներ: Նրանք առեղծեցին առաջին ընդհատակյա կազմակերպությունները, նրանք մենամարտի կանչեցին հին աշխարհին՝ իր կյանքով, օրենքով ու զենքով

հանել, շտապում էր կարճ ժամանակում բուժել դարավոր վերքերը, հատուկենտ գրագետ, կրթված, անվանի մարդկանց փոխարեն ըստեղծել գրագետ, կիրթ ու անվանի հասարակություն, գրագետ ժողովուրդ: Հայաստանի երիտասարդությունը միանգամից ձեռք մեկնեց հազար գործի. կրթություն, շինարարություն, գյուղի կուլտուրականացում ու արտադրության վերելք, միջազգային բարեկամություն բոլոր մարտնչողների, առաջադիմական ուժերի հետ:

1925 թվականին, երբ հանրապետության ջահելությունը տակավին հազար ու մի հոգսեր ուներ, ՀԼԿԵՄ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեց, որով հանձնարարում էր կազմակերպություններին աշխատակցել արտասահմանյան մեր հայրենակիցների հետ, «գրավոր ինֆորմացիոն կապ հաստատել հայ գաղութների երիտասարդության այն հեղափոխական կազմակերպությունների հետ, որոնք կանգնած են խորհրդային պլատֆորմի վրա և ՀԼԿԵՄ Կենտկոմի հետ կապվելու ցանկություն են հայտնում»: Ի՞նչ իմանային այն ժամանակ մարդիկ, որ այդ որոշումը հետագայում պետք է դառնար սփյուռք-Հայաստան երիտասարդական լայն կապերի հիմքը, և այն մեծ աշխատանքը, որ տանում է Հայաստանի երիտասարդական կազմակերպությունների կոմիտեն:

Երիտասարդությունը լույսի էր ձգտում, ու դրա համար նա դարձավ լույսի առաջին աղբյուրների շեֆը: Զորագէսն ու Քանաքեռգէսն իսկական կոմերիտական կառույցներ էին: Հարյուրավոր մարդիկ էին աշխատում Զորագէսի շինարարությունում: Անսահման եռանդն ու հավատը, գիտակից հայրենասիրությունը նրանց մղում էին իսկական սխրանքների ու հերոսության: Փլուզումներն ու վարարումները, շինանյութերի ու սարքավորումների տեղափոխման դժվարությունները, ոչինչ չընկճեցին շինարարներին: Չէ՛ որ նրանք քսան տարեկան էին...

Ծանր էր վիճակը գյուղում: Եթե գործարաններն ու հիդրոէլեկտրակայանները նոր էին ծնվում, նոր մարդկանցով ու միջոցներով, ապա՝ գյուղում խոր արմատներ էր գցել դասակարգային թշնամին, որը չէր ուզում հենց այնպես, առանց դիմադրության անձնատուր լինել: Նա կռվում էր ստոր եղանակներով: Գիշերով հրդեհում էր հավաքած բերքը, պայթեցնում պահեստները, պատի անկյունից կրակում կոմերիտական ակտիվիստների վրա: Բայց... ոչինչ չկարողացավ նրա դեմն առնել: Դա հեղեղ էր, իսկական հեղեղ, որ գալիս էր՝ մաքրելու ամեն ինչ:

Կոմերիտականները ցույց տվեցին գյուղի վերակառուցման օրինակը: Նրանք առաջինը դարձան կոլտնտեսությունների անդամներ, առաջինը դարձան գյուղը սոցիալիզմի ուղիով տանելու ջատագովներ:

— Եվ այսպե՛ս վերջացավ պատմությունը, — խոսեց որդին ակնածանքով նայելով հորը: — Հետո ի՞նչ եղավ:

— Այդ արդեն դու էլ լավ գիտես: Հետո դո՛ւ պատմիր, թե ինչ եղավ, ինչ արեցիք մեզնից հետո...

Որդին ոտքի ելավ, նայեց Արագածին, երկնքին, գյուղին ու հանգիստ պատմեց.

— Գյուղի ամենամեծ սենյակում՝ Գալուստ աղայի տանը, կոմերիտական ժողով էր: Չքավոր ու գաղթական երկու մշեցիների որդիները՝ Սուրեն Աբրահամյանն ու Բագրատ Նազարեթյանը, կոմերիտմիության շարքերն էին ընդունվում:

— Ինչպիսի՞ն կլինես, եթե դառնաս կոմերիտական,— հարցրել էր շրջանից եկած մարդը:

— Կլինեմ հայրենիքին, նոր գաղափարին հավատարիմ,— պատասխանել էր Սուրենը:

Իսկ մի քանի օր հետո արդեն ինքը՝ Սուրենն էր կազմակերպության քարտուղարը: Որքա՞ն գործ կար գյուղում: Բարի, աշխատասեր տղան հասնում էր բոլորին, օգնում ծերերին, գիշերում հանդում՝ հանրային ունեցվածքը պահպանելու: Երբ պետք էր, դառնում էր հովիվ ու Բագրատի հետ սար գնում, պետք էր՝ նա հնձվոր էր, խրճիթ-ընթերցարանի վարիչ: Բայց այդ խաղաղ կյանքը խզվեց, կիսատ մնացին Սուրենի ու նրա հազարավոր հասակակիցների ծրագրերը: Բոթը հասավ գյուղ. պատերազմ էր: Գութանը մնաց հանդում, հոտը՝ սարում, անհովիվ... Սուրենը հազիվ ասաց.

— Աղե՛ ջան, կռիվ կերթամ:

Ու մեկնեց անմիջապես, թողեց մորը՝ Արագածի դեմ դիմաց նստած, կարոտը սրտում: Նա չտեսավ այդ արցունքը, տեսավ իր հայրենիքը, որին մահացու վտանգ էր սպառնում: Ու նա մեկնեց մահու կռիվ: Նա քսան տարեկան էր...

«Բարև, քույրիկ ջան: Ստացա քո ուղարկած նամակը, որ գրել էիր ապրիլին: Շատ ուրախացա, որ դուք ողջ ու առողջ եք: Ուրախացա, որ գյուղում վար ու ցանք եք արել: Ապրեք: Մինչև իմ գալը, քույրիկ ջան, աղեի արտասուքն ինձ պահում է: Մայիսի 11-ին առավոտյան վիրավորվեցի ձեռքից և ոտքից՝ Սևաստոպոլի ազատագրման ժամանակ: Մայրիկ ջան, շուտով կջախջախենք գերմանական ֆաշիստներին և ուրախ տուն կվերադառնանք...

մայիս, 1944 թվական»:

Սևաստոպոլի համար պայքարը ոսկե տառերով գրվեց հայրենական պատերազմի տարեգրության մեջ: Մայիս ամսին համառ մարտեր



էին մղվում Գորնայա բարձունքի համար: Այստեղ իրենց փառքով պսակեցին ու հերոսի կոչումով անմահացան կոմերիտականներ Սիմոն Բաղդասարյանը, Այդին Հարությունյանը, Խորեն Խաչատրյանը, Հարություն Մկրտչյանը... Այդ փաստը վավերացվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով:

Բայց հաղթանակը եկավ հարյուր հազարների արյան գնով: Նրանցից շատերի անունները մնացին միայն իրենց հարազատների սրտերում, հարազատներին գրած իրենց նամակներում: Նրանց սխրանքի մասին չիմացան: Բայց արդյո՞ք, չիմացան... Ինչպե՞ս կարող է հաղթող բանակի զինվորը հերոս չլինել: Հերոս էր և Սուրեն Աբրահամյանը: Նույն բարձունքի համար մղվող մարտի ժամանակ նա գնդացրորդ էր: Ծանր վիրավորվել էր, բայց չէր հեռանում մարտից: Դիրքը թողնելու մասին հրամանատարի կարգադրությունից հետո էլ նա կրակ էր տեղում թշնամու վրա: Խոսք էր տվել մորը՝ «կջախջախենք ֆաշիստներին, ուրախ տուն կվերադառնամ»: Հիմա այդ խոստումը կատարելու ժամանակն էր: Ու կատարեց: Մի քանի տեղից վիրավոր, անցավ Ապարան—Վարշավա—Բեռլին պատերազմի ուղին ու... Բեռլինում մնաց հավերժ: Այստեղ, հաղթանակից ընդամենը երկու օր առաջ, խզվեց նրա պայծառ կյանքը: Իսկ նա դեռ քսան տարեկան էր...

Նրա հասակակիցներն էին Հունան Ավետիսյանը, Ջահան Կարախանյանը, Հենրիկ Զաքարյանը, Սերգեյ Օհանյանը, Արտեմ Պետրոսյանը, Սարիբեկ Չիլինգարյանն ու շատ ուրիշներ:

Դա նոր սերնդի հավատարմության երդումն էր այն ճանապարհին, որով անցան իրենց ավագ եղբայրներն ու հայրերը: Դա քսան տարեկանների հավատարմությունն էր 20-ական թվականների իրենց հասակակիցներին:

## 3. ՊԱՅՔԱՐ, ՈՐ ՍԿԻԶԲ ՈՒՆԻ ՈՒ ՉՈՒՆԻ ՎԵՐՋ

Իրիկնանում էր: Արևի շիկացունը հանդարտ իջնում էր Արագածի վրա՝ ծիածանի գույներով ներկելով սար ու դաշտ: Դաշտի քարոտ բլրակների մեջ, մայրամուտի ճառագայթների ներքո փայլում էր Քասախի ոսկեգոտին:

Ծերունին հանգիստ սկսեց իջնել՝ անթացուպերը խրելով խոնավ հողի մեջ: Որդին քայլում էր կողքից՝ լուռ, մտազբաղ: Նա ուզում էր ինքն էլ համակվել այն ոգևորությամբ, ինչով հայրն էր համակված: Նա մտածում էր. այդ ի՞նչ ուժ է, որ այդպես խոր ու ծանր նստել է հոր սրտում: Ի՞նչ է դա:

— Հավա՛տն է, որդի՛ս, հավատը,— կռահելով որդու մտածումները, խոսեց ծերունին:

— Հավատն է, որ մեզ, ձեզ, բոլորիս պայքարի է հանում մեր լուսավոր կյանքի համար: Մեր արածը միայն սկիզբն է, շարունակությունը ձե՛րն է... Ձերը...

Շարունակությո՛ւնը...

Պատերազմի թեժ պահին Երևանում հիմնադրվեցին տասնյակ նոր գործարաններ, բացվեց գիտությունների ակադեմիան, պատերազմի ավարտի հաջորդ օրն իսկ երաժշտական դպրոց հիմնվեց Ալավերդում:

Հորդացին երիտասարդության ստեղծագործական եռանդը, նախաձեռնությունը: Դեռ չըհաղթահարած հետպատերազմյան առաջին տարիների դժվարությունները՝ Արագածի լանջին գիտական մեծ փորձակայան հիմնեցին տասնյակ ջահել մարդիկ: Նրանք փոքրիկ վրաններում հիմք դրեցին նաև ֆիզիկայի ինստիտուտին: Երևանի պետական համալսարանի երիտասարդ դասախոս՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Սերգեյ Մերգելյանը, ձեռնարկեց հաշվողական կենտրոնի ստեղծմանը՝ հիմնադրելով մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտը: Գուցե նա չգիտեր, որ այդ ինստիտուտը պետք է անի, մեծանա, միութենական խոշոր կենտրոն դառնա, ու մարդիկ միշտ պետք է երախտիքով հիշեն հիմնադիրներին ու փաղաքուշ ասեն. «Մերգելյանի՛ ինստիտուտ»:

Այդ ինստիտուտը մի ամբողջ սերունդ պետք է դաստիարակեր: Ու դաստիարակեց: Նոր բովանդակություն մտավ կոմերիտական աշխատանքում. գիտական մակարդակի բովանդակություն: Այո՛, նոր խնդիրներին նոր մեթոդներ էին պետք: Հին ճանապարհը լայնացված էր, նորոգված: Ծիծաղելի կլիներ այժմ այդ ճանապարհն անցնել ձիակառքով: Ինստիտուտ-գործարանում ստեղծվեց կոմերիտական գիտական խորհուրդ, այն տվեց իր ասպիրանտները, գիտության թեկնածուները:

Ջահել տղաներն ու աղջիկները միտք, հիշողություն ու խելք էին հաղորդել «Նաիրի» ու «Հրազդան» հաշվիչ մեքենաներին: Դա նոր սերունդն էր, որ իր ստեղծած «Նաիրին» Դամասկոս էր տարել՝ ցուցադրելու համար: Դա նոր ինժեներն էր, որ Փարիզ պետք է մեկներ՝ երևանցի հաստոցաշինարարների ստեղծած հսկա մեքենան ցուցադրելու աշխարհին: Դա արթիկցի բանվորն էր, որ Արագածի վարդագույն երազները Արթիկտուֆից պետք է ուղարկեր աշխարհի տարբեր ուղղություններով: Դա երիտասարդ բժիշկն էր, որ պետք է մոռանար բանվորական օրը, գիշեր ու ցերեկ հսկացությունները ու պիտի աշխատեր նվիրված, սիրով:

Դա վերին սասնաշենցի ջահելներն էին, որ, ծվարելով լեռնալանջին, հավերժ ձյան հարե-

վանությամբ, իջնում էին ներքև՝ դաշտավայր, մեկ-մեկ քարեր հավաքելու, հող ստեղծելու և խաղող ու ծիրան անեցնելու համար: Դա նոր սերունդն է, որ սովորում է, ստեղծագործում, աշխատում: Այլ կերպ վարվել չի կարող: Չէ՛ որ դա քսան տարեկանների սերունդն է: Նա իր անդամներին մասնակից դարձրեց Ղազախստանի խոպան հողերի յուրացմանը, Սիբիրի խոշորագույն հիդրոէլեկտրակայանների շինարարությանը: Իսկ սովետական երկրի բազում ազգերի ներկայացուցիչներ եկան Հայաստան՝ մոնտաժելու կոմերիտական շատ կառույցներ— «Պոլիվինիլացետատը», ջերմաէլեկտրակենտրոնը, բացելու Տաթևհէկի ու Արփա-Սևանի թունելները: Այդ կառույցները դարձան բարեկամության դարբնոցներ: Այդտեղ անեցին երիտասարդ հիանալի մարդիկ, ովքեր գիտեն երազել ու հաղթել:

«Ամեն առավոտ առաջին ոտնահետքերը ես եմ բացում ձյան վրա: Բուք է, ցուրտ: Բայց թունելը հարազատ օջախ է դարձել: Սիրով գնում եմ աշխատանքի...

...Այսօր փլուզում եղավ, Հրաչիկ Ասլանյանը կարծես պողպատից լինի. չի վախենում: Ամեն ինչ մի քանի ժամից հարթվեց: Վագոնաշարը նորից թունել մտավ»:

Սա Արփա-Սևան թունելախորշի շինարարներից մեկի՝ Վաչագան Երզնկյանի, հուշերն են: Այդ գրել է նա չորս տարի առաջ: Հիմա՞... Հիմա նա Ջերմուկի ջրամբարի շինարարության պետն է:

«Երեկ Լենինգրադից նոր տուրբիններ ստացանք: Սկսել ենք մոնտաժումը: Շինարարների համար նոր շրջան է սկսվել: Տեսնենք ինչ կլինի... Ավարտեցինք երկրորդ հարկի բետոնային աշխատանքները: Դժվար է: Դիմացի սարալանջը սպառնում է մեզ, պետք է արագացնել բետոնապատումը»... Սա էլ Տաթևհէկի շինարարության աշխատող Գրիգոր Սինանյանի օրագիրն է: Այժմ նա Տաթևհէկի պետն է: Դա այն սերունդն է, որ համատարած ուսուցման և մեխանիզատորական մասնագիտացման խնդիրն է կենսագործում գյուղում, ծրագրում կուլտուրական վերելքի մեծ թռիչք:

— Այո՛, որդիս, այդ էլ գիտեմ,— լսելով որդու պատմածը՝ խոսեց ծերունին,— ամեն ինչում էլ հաղթանակ կա: Մենակ պատերազմն ու հեղափոխությունը չեն, որ ծնում են հերոսներ: Ա՛յ, այս գյուղը վերցնենք: Մեր ժամանակ հիվանդի համար մի խնձոր ճարելու նպատակով հարյուր կիլոմետր ճանապարհ էինք գնում, իսկ հիմա այստեղից են խնձոր տանում Երևան: Դա հաղթանակ չէ՞...

— Ողջ գյուղը բամբասում, զարմանքով էր նայում «ծամը կտրած» աղջկան՝ առաջին բուժաշխատողին, որ մարդկանց փրկելու էր եկել: Հիմա մեր ջահել բժիշկները զեկուցումներ են կարդում Ֆրանսիայում ու Ամերիկայում: Դա հաղթանակ չէ՞: Հաղթանակ չէ՞, որ մենք մեր օջախն ունենք, մեր հողը, մեր հայրենիքը, որ մենք ամուր կանգնած ենք մայր հողի վրա:

Ծերունին լռեց: Նա անթացուպերը խնամքով հենեց պատին ու նստեց սենյակի անկյունում դրված թախտին, որդին՝ նրա կողքին: Վերջինիս համար հայրը կենդանի պատմությունն էր, որ ապրում էր իր հետ, իր հարկի տակ:

## 4. ԱՆԸՆԴՀԱՏ ՇԱՐԺՈՒՄ...

Անցել են տարիներ: Նորից աշուն էր իջել՝ նման այն աշուններին, որոնք բազում գույներով ներկում են դաշտերը: Արագածի կարկըտահարված լանջերից պաղ օդ էր փչում: Գյուղից վեր, գերեզմանի եզրին, փոքրիկ մատուռի մոտ կանգնած միջահասակ մարդը զրուցում էր որդու հետ:

— Լսի՛ր, որդի՛ս, այս գյուղն այսպես շեն չի եղել, այս ճամփան՝ այսքան լայն ու բարեկարգ: Այս անտառն էլ, այգիներն էլ չկային: Այստեղ կռիվ է եղել, թշնամու հրոսակախըմբերն են ջարդել մեր գումարտակները, որոնց հետ կռվում էր և իմ հայրը: Այստեղ են հողին հանձնել իմ պապին, նրա եղբայրներին ու մերձավորներին: Այստեղ է իր զույգ ոտքերը թողել հայրս... Բայց հենց այստեղ է գյուղի վրա առաջին անգամ ծածանվել սովետների դրոշը:

Հայրը պատմում էր որդուն, որ նա լսի, իմանա, պատմում էր ավելի շատ ինքն իրեն, հիշում էր... Դա պետք էր իրեն, դա նրա հավատն էր:





*Հ. Հ. Աբրահամյան*

# ԲՈՒՌՆ ԿՅԱՆՔԻ ԱՄՓՈՓԱԳԻՐ

*ՀՍՍՀ— Արարատի շրջան*
*Տերիտորիան՝ 1.399 քառակուսի կիլոմետր*
*Բնակչությունը՝ 55 հազար:*

### ԴԱՐԵՐ ԵՎ ԿԵՍ ԴԱՐ

ԻՆՉՊԵՍ օազիսն անապատում, լերկ ձորապռնկին ծաղկում է Մակար պապի այգին: Հրաշք այգու 97-ամյա տերը զարմանալի խտացումն է իր ժողովրդի ճակատագրի:

Ազնի՜վ ծերունի... Ինչպիսի՜ տառապանքների միջով է հասել 1970-ի աշնանամուտին: Պայծառ, անմշուշ հայացք աշխարհին, ալեհեր մազերի, ակոսված կնճիռների իմաստություն, որ ի մի են բերում տարիների ողբերգություններն ու արհավիրքները:

Ինչպե՞ս են կանգուն մնում այս մարդիկ, ինչպե՞ս են ձուլվում իրենց հողին, իրենց փոքր, հարատևող աշխարհին: Մի՞թե հողի, նրա այգու ծիրանենու, խնձորենու, խաղողի վազի մեջ չէ այդ կենսունակության գաղտնիքը:

Վեր, դեպի արևն է ձգվել վազը: Ծեր, ինչպես իր տերը, ամուր, ինչպես նրա կամքը, ջըլուտ, ինչպես հին հողագործի բազուկը, այն բարձրանում է դեպի արևը:

Ուշադիր նայեցեք... Վազը սպիներ ունի, խոր, դաժան, անմեկնելի: Ե՞րբ են հասցրել այդ վերքերը: Ինչպե՞ս է իր մեջ ուժ գտել վերընձյուղելու այս չորուկ, հզոր ու բարի որթը: Վազի մեջ հոսում է ավիշը, վազի մեջ հոսում է երկնային, արբեցնող արևի հուրը: Ձգվում է վազը դեպի արևը՝ շռայլ, փարթամ, բարեբեր:

Եվ այդպես կանգուն ապրում է դարեր...

ԴԱՐԵՐ, որ զարմանալիորեն քիչ բան բերեցին մի ողջ ժողովրդի: Դարեր գոյատևող չարքաշ մի կյանք:

1812 թվականին պատմական Ուրծով անցավ ֆրանսիացի ճանապարհորդը և ոչինչ փոփոխված չգտավ քսենոֆոնյան օրերից:

1880-ական թվականներին, մի օր Րաֆֆին գիշերել է Դավալու (Արարատ) գյուղում: Դառն են և նրա հիշողությունները. խեղճ ու թշվառ մարդիկ, գյուղեր համարյա չկան, արևից այրված հողեր, ճահճուտներ, շոգ, մոծակների պարսեր, օձ ու կարիճներ, բուսականությունից զուրկ տափաստան, ուր մարդը հազվադեպ էր ոտք դնում:

XX ԴԱՐ: «Այս գյուղացիք ահով պառկում են քնելու: Ի՞նչ է բերելու գիշերը, արդյոք կենդանի կարթնանան երեխաները, արդյոք չեն հրդեհի տունը...»:

«Դավալուն մեծ գյուղ է Արաքսի ափին, գյուղացիները շատ են աշխատում, բայց անգրագետ, կիսաքաղց են, երեխաների մեծ մասը բոկոտն է, սովալլուկ...»:

(ԱԿԱՆԱՏԵՍՆԵՐԻ ՀՈՒՇԵՐԻՑ)

«Ի՞նչ էր մեր օրը, ամեն օր ջարդեր, ասպատակություններ,. ազգամիջյան կոտորածներ, կորցրի ծնողներիս, քույրերիս, մի օր այստեղ, մի օր գաղթի ճամփան բռնած քարշ էինք տալիս մեր գոյությունը:

*ԱՎԵՏԻՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ»:*

ԱՐԱՐԱՏ, 1919 թվական. աշուն. մահացությունը տասն անգամ գերազանցում է ծննդին: Մի տարում միայն հիվանդություններից մահացության 8.380 դեպք, 820 ծնունդ: Դողէրոցքով տառապում էին համարյա բոլորը: Արաքսի ճահճուտներից բարձրանում էին մոծակների պարսերը, գրոհում բնակավայրերը: Ու գաղթականների անվերջ, անսկիզբ քարավաններ, որ գալիս էին Արարատ, ապա միանում տեղացիներին, հասնում Երևան, Աշտարակ ու ավելի հեռու...

Ամբողջ շրջանում երկու ծխական դպրոց՝ մի քանի աշակերտներով, մոտ 60 հեկտար խաղողի այգի՝ արդյունաբերող Շուստովի յոթ գինեհորերով: Եվ ուրիշ ոչինչ:

Ահա այն ամենը, որ կոչվում է *ժառանգություն անցյալից*:

Սա, որ ծնվել է դարասկզբին, լարված մտածում է. արժե՞, արդյոք, հիշել անցյալը: Հիմա Ավետիս Ավետիսյանը խաղաղ ապրում է Արարատի իր մեծ, շեն տանը, որդիների, թոռների հետ, գուցե ա՞յդ մասին: Սակայն անցյալը երբեք չի մեռնում: Տարիների հեռվից հառնում են ողբերգական իրադարձություններ, ճակատագրեր... կյանքի յոթերորդ տասնամյակն ավելի հաճախ է ստիպում վերադառնալ հիշողություններին: Նրանք, որ իր հետ են եղել ճանապարհի սկզբին, հիմա չկան, կա մեծ, դժվարին հաղթանակը:

ՄԻԱՊԱՂԱՂ, առանց այն էլ ծանր կյանքն անսպասելիորեն վատացավ: Սկզբում եկան ու գյուղում ծվարեցին գաղթականները. հետո, ավելի ու ավելի հաճախ, գալիս էին ասպատակիչները. դառը կյանքին միացավ և ահը: Ստիպված էին հեռանալ հայրենի գյուղից. սկզբում Արտաշատ, ապա՝ Երևան: 1919 թ. Երևանի փողոցներում «թափված էին անթաղ դիակներ...»: Ավետիսը կորցրեց ծնողներին, քույրերն ընկան որբանոց, իսկ ինքը՝ բանակ:

Ճառագում էր նոյեմբերյան հրաբորբ արևը. «եթե ուշանար, մարդ չէր մնա, տուն չէր մնա ողջ երկրում»:

Գյուղացու, հայ գյուղացու համար խաղաղությունն ամեն ինչից վեր է. եթե կա հող, ազատություն, ուրեմն կլինի և հրաշքը: Սովետական իշխանությունը նրանց տվեց այդ ամենը: Ահա թե ինչու էին կռվում Ավետիս Ավետիսյանը, Հմայակ Գասպարյանը, Գևորգ Գևորգյանը... քանի՜ քանիսն ընկան նոր կյանքի արշալույսին, նոր կյանքի համար: Նրանք կոմունիստներ էին: Դաշնակցական տիրապետության դաժան օրերին նրանք ելան՝ փրկելու կործանվող երկիրը, ծառացան ընդդեմ մահի, ավերի, կոտորածների, հանուն խաղաղության, երջանկության, հավասարության:

«Գյուղացին ազատ շունչ քաշեց»: Քսանական թվականների հայ գյուղի համար սա ամենաբնորոշ արտահայտությունն է, որովհետև հող կար, խաղաղություն կար: Նոր կյանքը դանդաղ, բայց համառորեն թափանցում էր գյուղ...

1928 թվական, սեպտեմբեր, «Զեկուցագիր Դավալուի Շահումյան կոլխոզի». ինչպե՞ս է հասել մինչև 1970 թվականը, ո՞վ է պահել-պահպանել Արարատի շրջանում առաջին կոլտնտեսության հիմնադրման այս ժլատ պատմությունը: Կոլխոզը կազմակերպվել է 1928 թ., տնտեսությունների թիվը՝ 8, աշխատունակների թիվը՝ 16, շնչերի թիվը՝ 30, սոցիալական կազմը. չքավոր՝ 7, բատրակ՝ 1, ցանելու հող՝ 12 հեկտար, այգի՝ 4 հեկտար, քարշող ուժ, եզներ՝ 1 զույգ: Շատ չանցած կոլտնտեսություն մտան և միջակները:

Ինչի՞ց են սկսել նրանք՝ մեր հայրերը: Պարզապես ոչինչ չեն ունեցել, այդպես և Թայթանում, Այգևանում, Չիմանում: Վերջինիս առաջին նախագահը՝ Նասըր Օղլի Աբասը, հանդիսավոր պայմաններում կոլտնտեսությունը հայտարարեց Իլյիչի անվան, և, ինչպես հիշում են առաջին կոլտնտեսականները, անվանակոչումն ընդունվեց խանդավառությամբ: Գյուղում ճառագել էր լենինյան արևը:

ԱՐԱՐԱՏ: Շրջանի ամենամեծ գյուղն անցյալում և հիմա: Կոլտնտեսության հիմնադիր Ավետիս Ավետիսյանը հիշում է. «Կոլտնտեսություն հիմնելու լուրը ցնցեց աշնանային խաղաղ գյուղը, անասելի բորբոքվեցին կրքերը, բայց մենք առաջին ութ անդամներս էլ համառ էինք: Ինչպե՞ս էինք աշխատում, ճիշտն ասած, ես նախագահ էի միայն ժողովներում, աշխատում էինք միասին, սիրով, համառությամբ:

1929-ին մեզ միացան ևս հինգ ընտանիք, 1930-ին, զտումից հետո, 106 տնտեսություն էր հաշվվում կոլտնտեսությունում: 1931-ին բանդիտիզմը մեծ վնաս հասցրեց, բայց տնտեսությունն օր-օրի ամրապնդվում էր. գյուղ եկավ առաջին տրակտորը: Հետո արդեն ամեն ինչ հունի մեջ ընկավ. աճեց, հզորացավ մեր տնտեսությունը, ծնվեցին առաջին հարվածայինները»:

ԿՅԱՆՔԸ եռում էր, ինչպես երբեք: Ծնվում էին համարձակ ծրագրեր ու կյանքի կոչվում նույնքան համարձակ ձեռնարկումներ: Սոցիալիզմի զարկերակը 30-ական թվականների Հայաստանում խփում էր ռիթմիկ, լիարյուն:



Առաջին հնգամյակի յուրաքանչյուր տարին իր հետ բերում էր տնտեսական ու կուլտուրական մի նոր նվաճում. հինը տեղի էր տալիս: Սովետական Հայաստանում կառուցվում էին 22 արդյունաբերական ձեռնարկություն, վեց հիդրոէլեկտրակայան: Երկրին ցեմենտ էր հարկավոր...

ՍԱԼԱՔԻԹ լեռը մխրճվել է դաշտավայրի կանաչ հարթության մեջ: Արևն այրել է ամեն ինչ, և լեռը լքված, հրդեհված է թվում: Ջրերը ճահճացել են լեռան ստորոտում: Անդրերկաթուղու հարավային սահմանագծի ուղևորների հիշողություններում լեռը մնացել է անիծյալ ու դժնդակ: Ահավասիկ առաջին հաղորդումը. ցեմենտի արդյունաբերության մասնագետ, գերմանացի Կարլ Նեսկեն 1912 թ. հայտնում է. «Ցեմենտի արտադրության համար լավագույն կրաքարը գտնըվում է Դավալուի կողքին»: 1914 թ. Բրյանսկի ցեմենտի գործարանի ինժեներ Պողոսյանը հանդես է գալիս «Դավալուի հանքերի լայն հեռանկարները» հոդվածով:

Բայց լեռը մնում էր աննվաճ. Լեռը պահում էր մեծ հարստությունը: Ցարական իշխանության համար Դավալուն ինչ-որ հեռավոր էր թվում, անհեռանկար...

Հայաստանը ցեմենտ էր ստանում Կասպիից, Նովորոսիյսկից: Տեղափոխման դժվարություններն անհամար էին:

1927 թ., երբ շահագործման է հանձնվում Երևանի կարբիդի գործարանը, հումքը բերվում է հենց Սալաքիթից: Սա առաջին գրոհն էր լեռան վրա:

Եվ ահա, 1929 թվականին ՀՍՍՀ ժողկոմխորհը որոշեց կառուցել ցեմենտի գործարան՝ 720.000 տակառ արտադրողականությամբ:

1930 թ. մարտին եկան շինարարները...

«Այստեղ դաժան, անտառազուրկ, անջրդի անապատներ էին, որտեղ արածում էին միայն ոչխարի հոտեր: Ամառային օրերին լեռներում վխտում էին օձերն ու կարիճները: Միլիարդավոր մոծակներ, որոնք գալիս էին Արարատի ճահիճներից, ապականում էին օդը, ամենուրեք իրենց հետ բերելով մալարիայի բացիլներ...»— երեք տարի հետո այսպես էր գրում Դավալուի գործարանի ինժեներ Մ. Օնլովը: Բայց կար անսահման խանդավառություն: Հորդում էր ստեղծագործ ու շինարար աշխատանքը. կառուցվում էր Զորագէսը, հիմնվում էին ջրանցքներ, քիմիական կոմբինատ՝ Կիրովականում: Դավալուի ցեմենտի գործարանը հայտարարվեց ժողովրդական կառույց:

Հերոսական, անմոռաց օրեր...

Մարդիկ գալիս էին երկրի տարբեր կողմերից: Խփվում էին առաջին վրանները, խմելու ջուր չկար. գնացքով բերում էին Երևանից: Ամռանը սաստիկ շոգեր էին, դաժան ձմեռը սառեցնում էր ամեն ինչ: Թվում էր՝ այդպիսի պայմաններում հնարավոր չէ գործարան կառուցել: Դանդաղ շարժվում էին եզները, սայլերը շինաքար էին կրում, մարդիկ աշխատում էին բահ ու քլունգով:

Օր-օրի ծավալվող շինարարությունը պահանջում էր նորանոր բանվորական ձեռքեր, իսկ մարդիկ քիչ էին...

Աշխժողկոմատը մեծ ջանքեր էր գործադրում. կառուցվում էին բանվորական ճաշարաններ ու բարաքներ, Միության տարբեր հանրապետություններից գալիս էին մասնագետներ ու բանվորներ (Կրասնոյարսկից, Թբիլիսիից, Փոթիից և այլ բնակավայրերից):

Եվ ահա ցեմշին եկան կոմերիտականները, պատանի խիզախները: 1930 թ. հոկտեմբերին Երևանի շինարար կոմերիտականների միացյալ ժողովը որոշել է՝ կազմակերպել երիտասարդական բրիգադներ և գործուղել ցեմշին: Հանրապետական երիտասարդական «Ավանգարդ» թերթը վերցնում է կառույցի շեֆությունը: «Ավանգարդի» այդ տարիների խմբագիր, գրող Ստ. Կուրտիկյանը հիշում է. «Զանգ եմ տալիս Արտաշատ՝ կոմերիտմիության շրջկոմի քարտուղար Մկրտիչ Խաչատրյանին, մեր մշտապես անհանգիստ, մշտապես փոթորկուն Մուկուչին:

— Այսօր բյուրոյի նիստում կոմերիտմիությունը վերցրեց ցեմշինի շեֆությունը,— ասում եմ նրան,— «Ավանգարդի» խմբագրությունն ինքը պետք է կազմակերպի այդ գործը: Դա մեր պատվի խնդիրն է: Առաջինը քեզ եմ զանգ տալիս: Սիրելի Մկրտիչ, քո լավ կոմերիտականներից հիսուն հոգի տրամադրիր երկու շաբաթ ցեմշինում աշխատելու:

Ես անհամբեր սպասում եմ իմ առաջին զանգի, մեր Մուկուչի պատասխանին: Իսկ նա դանդաղում է պատասխանել: Ինչո՞ւ է դանդաղում:

Եվ ահա լսափողում որոտում է մեր Մուկուչի ձայնը.

— Տալիս եմ ոչ թե հիսուն, այլ.. հինգ հարյուր կոմերիտական...»:

Շարունակվում են ցեմշին գործուղվել կոմերիտական նոր բրիգադներ: Երիտասարդ տղաներն ու աղջիկները մի քանի շաբաթով կամ ամսով հսկայական աշխատանք են կատարում գործարանի շինարարությունում: Ծավալվում է սոցմրցությունը, ծնվում են հարվածայինները՝ Ա. Հակոբյանը, Բ. Սարգսյանը, Ա. Պետրոսյանը... Կազմակերպվում են կոմերիտական շաբաթօրյակներ: 1933 թ. հիմնական աշխատանքներն ավարտվում են, ձևավորվում են Արարատ նոր քաղաքի առաջին բազմահարկերը:

1933 թվականի նոյեմբերի 25-ին, ժամը 14-ին ստացվեց առաջին ցեմենտը: Սա խոշոր նվաճում էր և այնպիսին, որի մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Աղասի Խանջյանը նշել է. «Հայկոմկուսի Կենտկոմը մար-

տական ողջույն է հղում ցեմենտի գիգանտը կառուցողներին: Ցեմենտը օդի պես անհրաժեշտ է մեր վիթխարի շինարարությանը: Համոզված ենք, որ կապահովեք արտադրության պլանի կատարումը, կտաք բարձրորակ ցեմենտ...»:

1933 թվականի նոյեմբերի 29-ը՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 13-րդ տարեդարձի օրը. «Աշխատավորության ցնծալի բացականչություններ, միալար աղմկում են հզոր սարքերը, դանդաղ պտտվում է կիզող վառարանը, թնդում են նվագախմբերը...»: Այսպես են վերհիշում այդ օրը ցեմշինի առաջին բանվորները: Աղասի Խանջյանը հեռախոսով կարգադրում է սկսել աշխատանքը. կիզող բանվոր Վարոս Խաչատրյանը վառում է ջահը... (այժմ նա մասնակցում է Հրազդանում ցեմենտի նոր գործարանի գործարկման նախապատրաստմանը):

Եվ այսպես, գործարկվեց Հայաստանի արդյունաբերական հսկաներից մեկը, որը ցեմենտ էր մատակարարելու ինչպես հանրապետության, այնպես էլ Միության կարևորագույն կառույցներին:

Երկիրը հզորաքայլ ընթանում էր դեպի ապագան, լսվում էր ծավալվող շինարարության հևքը, հիմնվում էին դպրոցներ, կուլտուրայի տներ, բուժհիմնարկներ:

Ոչինչ այլևս չէր կարող կասեցնել առաջընթացը:

## ՕՐ, ՈՐ ՏԱՐԻ ԱՐԺԵՐ

*Արարատ—1970 թ.*

«Բարեկամության 30 հեկտարանոց այգում հիմնադրվեց բարեկամության ծառուղին»:

«Շրջանում աշխատում են բժշկական գիտությունների մեկ դոկտոր, մեկ թեկնածու, 8 բժիշկ պաշտպանության են ներկայացրել իրենց գիտական աշխատությունները»:

«Այգևանում վառվում են 450 հեռուստացույցի կապույտ էկրանները»:

«Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում արտադրվում է 680 հազար տոննա ցեմենտ, 80 միլիոն սալիկ շիֆեր, 570 կիլոմետր խողովակ, 10 հազար տոննա կիր»:

«Արմաշում շահագործման հանձնվեց հոյաշեն կուլտուրայի տունը»:

Այս հաղորդումներն անվերջ կարելի է շարունակել: Շրջանի 1399 քառակուսի կիլոմետրի յուրաքանչյուր հատվածում ծնվում է հրաշքը...

ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ մայրուղին ձգվում է դեպի Արարատ: Թվում է՝ ձեռքդ պարզես, կարող ես շոշափել ծեր Մասիսի կնճիռները: Ամբողջ հասակով հայացքիդ առջև հառնում է ալեհեր լեռը ու, ասես, հրճվում այս կողմում կատարվող մեծ վերափոխումներով, իսկ այստեղ ծխում են արդյունաբերական քաղաքի ծխնելույզները, երկար ու ձիգ անցնում են ծանրաբեռն ապրանքատար գնացքները: Շուրջ բոլորը բարդիների սլացիկ շարքն է, այգիների թավ կանաչը, հեռվում դեպի լեռն են ձգվում խաղողի բետոնե հենասյուները:

Երկու-երեք տասնամյակ առաջ հենց այստեղ, ուր հիմա ծաղկում են Կիրովի անվան սովխոզի այգիները, ամայի էր, ճահճուտներ, խոպան ու անմշակ հողեր: Յուվա—Շիրազլու ամբողջ ճանապարհին ոչ մի բնակավայր: Իսկ հիմա արագ ընդարձակվում է սովխոզի բանավանը: Հանրապետության առաջավոր տնտեսությունը միայն խաղողի այգիներից ստանում է 4.000—5.000 տոննա բերք:

1968 թվականին, Երևանի 2750-ամյա տոնակատարությանը մասնակցելուց հետո, անցնելով այս ճանապարհով, ֆրանսիացի պրոֆեսոր, հայագետ, մեր լավ բարեկամ Ֆրեդերիկ Ֆեյդին, տեսնելով «Նոր կյանքի» կղմինդրածածկ, գեղեցիկ առանձնատները, հարցրեց. «Ի՞նչ գյուղ է սա»: «Նոր կյանք»— մեկեն ծնված բնակավայր՝ անմշակ տափաստանում: Սովետական Հայաստանի կառավարությունը նոր տներ էր կառուցել Իրանի Սուլթանաբադի շրջանի 1946 թ. հայրենադարձների համար: Հիմա գյուղը փոխել է թևերը, ընդարձակվել: Գյուղը գտել է իր երջանկության ուղին:

«Հիանալի է: Երբ կմտածեմ գաղթաշխարհի հայերուն ապագային մասին, միշտ կհանգիմ այն եզրակացության, որ անոնց վերջին կայանը Հայաստանն ըլլալու է: Ամեն ժողովուրդ միայն իր մայր հողին վրա կրնա արմատներ ձգել ու խորացնել,— ասում է պրոֆեսոր Ֆեյդին և ավելացնում,— հայ ժողովուրդը հիմա իր նոր, ավելի շքեղ ոսկեդարը կապրի»: «Նոր կյանքից» դեպի Արաքս, ուր անմշակ հողեր էին, հիմա շենանում է մի նոր «Դվին» սովխոզ՝ տասնամյա կենսագրությամբ ու 500 հեկտարանոց այգիներով: Յուրաքանչյուր տասնամյակում Արարատում ծնվել է նորը՝ Արմաշ ու Սուրենավան, «Նոր կյանք» ու Դվին:

Թերևս աշխարհի ամենաինտերնացիոնալ գյուղը Շիրազլուն է. հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր... Հետաքրքրական գյուղ է, հետաքրքրական ճակատագրեր: Հնագույն բնակիչ, գյուղի առաջին հին կոմերիտական Հասան Մամեդովը սիրում է հիշել այն օրերը, երբ Շիրազլուն դարձավ մեծ իրադարձությունների վայր: «Հայ գաղթականները եկան իրենց ավերված, կրակված երկրից: Կիսամերկ էին, քաղցած: Գյուղն ալեկոծվեց, ադրբեջանցի գյուղացիները հարազատ եղբոր պես նեցուկ դարձան հայերին: Սկզբում ապրում էին միևնույն տանը, միասին, իրար հետ կիսում այգիների բերքը», «ինձ նույնիսկ այգի տվեցին, անվարձահատույց»,— հիշում է հայ գյուղացիներից մեկը: Եվ միասին, ձեռք-ձեռքի, սկսեցին կառուցել նոր կյանք, հիմնադրեցին կոլտնտեսություն:

Հասան Մամեդովը շարունակում է. «Անասելի դժվար էր պայքարել բանդիտիզմի դեմ, սահմանը հաճախ խախտող թուրքերի դեմ: Մի անգամ Երևանից եկան երկու բուժքույր՝ բռնկվող դողերոցքի դեմ պայքարելու համար: Գիշերը վրա հասան սահմանախախտ թուրքերը: Որտեղից որտեղ նրանք իմացել էին աղջիկների մասին: Ատրճանակով սպառնալով՝ պահանջում էին. «Ո՞ւր են նրանք, ասե՛ք»: Ես լռում էի: Օգտվելով առիթից՝ հետնադռնից նրանց ուղարկեցի եղբորս տուն, իսկ ես կազմակերպեցի սահմանախախտների հետապնդումը՝ վրա հասնող կոլտնտեսականների ու սահմանապահների հետ: Նրանք քշեցին տարան մեր բոլոր անասունները»: Ծեր ադրբեջանցին տխրում է հիշողություններից: Բայց հանկարծ պայծառանում է նրա դեմքը. «Առավոտյան պատահաբար գյուղ եկավ Աղասի Խանջյանը: Նրան ասել էին գիշերվա դեպքի մասին: Հետագայում մենք լավ բարեկամներ դարձանք— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարը և ես՝ ադրբեջանցի Մամեդովը: Նա ինձ իր հետ Բաքու տարավ, Մոսկվա...»:

Վերջերս կենտրոնական ունիվերմագում զարմացած հաճախորդներն ականատես եղան սրտաշարժ մի դեպքի: Մի կին փաթաթվել էր ծեր մի մարդու և լալիս էր: Ի՞նչ է պատահել, երևի հայր ու աղջիկ են գտել իրար: Ո՛չ: Հասան Մամեդովը ճանաչեց այն երբեմնի փոքրիկ բուժքրոջը, որին գիշերը թուրքերից փրկել էր ինքը: Հետո տիկին Սեդան «ընկեր Մամեդովին» տուն հրավիրեց: Նա հիշեց 30-ական թվականների Շիրազլուն, մարդկանց և շնորհակալությամբ փարվեց Հասան հայրիկին:

«Ինտերնացիոնալ տղա» մականվամբ Հասան Մամեդովը էլի դեմքեր ու դեպքեր է հիշում և պարզապես ավելացնում. «Մի գյուղ ենք, մի տուն, մի ընտանիք, մեր գյուղում ազգությունը հիշում ենք, երբ որևէ մեկը հարցնում է...»:

Նույնը կարելի է ասել և տասնհինգամյա կենսագրությամբ Արմաշի մասին. զարմանալի պատմություն ունի գյուղը. հին է, բայց մարդիկ նրա ծնունդը հաշվում են 1956 թվականից, երբ հիմք դրվեց քաղաքատիպ ավանին: Համարձակ ծրագրեր են ծնվում այստեղ. հիանալի կուլտուրայի պալատ և՛ հարսանյաց տան նախագիծ, քաղաքատիպ առաջին փողոցը, և՛ ամառանոց Խոսրովի անտառի փեշերին: Քսանական թվականների գաղթականներ և բժշկական գիտությունների դոկտոր Արսեն Հայրիյան, 1930 թվականին 12 աշակերտ, և հիմա միջնակարգ դպրոցը չի բավարարում:

1919 թվականին շրջանի միակ բուժակը տնից տուն էր վազում, իսկ հիվանդությունները շարունակում էին մոլեգնել: Միակ բուժակը: Իսկ 1970 թվականին 7 հիվանդանոց, 75 բժիշկ, 700 բուժաշխատող. միայն այս գյուղում՝ 25 մահճակալանոց հիվանդանոց:

ԵՐԵՔ ԱՐԱՐԱՏ— Լեռը, քաղաքը, գյուղը: Լեռը հին է, շատ հին: Գյուղն աչքը բացել է նրա փեշերի տակ՝ տարիներ ու տարիներ լույս երազելով: Քաղաքը չորս տասնամյակի կենսագրություն ունի: Հիշո՞ւմ եք հին գյուղը, առաջին կոլտնտեսությունը՝ մի զույգ եզով: Իսկ հիմա՝ 20 ավտոմեքենա, 24 տրակտոր ու գյուղգործիքներ, այգիներ, բանջարանոցներ, առանձնատներ՝ կանաչ ծառերի գրկում... և աշխօրին մինչև 5 ռուբլի դրամ: Շուստովյան յոթ գինեհորեր և Արարատի գինու ժամանակակից գործարան, պահածոների գործարան...

Եվ քաղաքը՝ իր հիանալի մարդկանցով:

Մինաս Խաչերոսովը 1935 թվականին Արմավիրից հասավ Արարատ: Ոչինչ չուներ, բացի պատանեկան եռանդից: Եվս 35 տարի, ու նա դարձավ ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, արժանացավ Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

Եվ մի գյուղացի՝ Մկրտիչ Մարտիրոսյան, որ երկու տասնամյակ առաջ թողեց գյուղը և քաղաք եկավ, հիմա ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ է, Լենինի շքանշանակիր:

ԿԱ՛ՆԳ առ, անցորդ, այստեղ հավերժացած է հիշատակը նրանց, ովքեր ընկան հայրենիքի համար:

Խոնարհի՛ր գլուխդ մեծ Հայրենականում զոհված այն հարյուրավոր արարատցիների համար, որ պաշտպանեցին քո երկիրը, տունը, պատիվը:

Ցայտում է ջուրը աղբյուր-հուշարձաններից, խրոխտ իր հայրենիին է նայում քարակոփ պատվանդանին բարձրացած զինվորը: Դպրոցում այս լավ պատանիներն ու աղջիկները երդվում են չմոռանալ նրանց: Արարատցին Բեռլին հասավ: Ավետիս Ավետիսյանը, Անդրանիկ Բաղդասարյանը, Արամ Միրաքյանը, Հասան Մամեդովը, Մինաս Խաչերեսովը տեսան պատերազմի արհավիրքը, հաղթեցին կռվում՝ հայրենի տան խաղաղ շենության համար: Աղբյուր-հուշարձանները հիմա անքակտելի մասն են Արարատի շրջանի գյուղերի, այդ քարակոփ կոթողները մեր ժամանակների, մեր օրերի մարդկանց երդում-արարողությունների սուրբ վկաներն են...

ԽԱՂԱՂ, պայծառ աշուն է Արարատում: 1970-ի աշունը: Առատություն է ամենուր— ավարտվող այգեկութի, խաղողի արևային լուսե վազերի, եռացող հնձանների մեջ...

Ոսկեփայլ, կեսդարյա աշուն...





Ռ Խ Փաշինյան

# ԲՈՐՅԱՆՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

Միխայլովկա...

Այսպես է կոչվել այն գյուղը, որը ներկայումս Կրասնոսելսկի շրջկենտրոնն է:

Անցյալ դարի առաջին կեսին ռուսական ինքնակալն իր տերության անհնազանդ տարրերի մի զգալի զանգվածին արտաքսել է Անդրկովկաս: Նրա մի մասը բնակություն է հաստատել հայկական լեռնաշխարհի բանուկ և ստրատեգիական տեսակետից կարևոր մայրուղիների մերձակա վայրերում: Մուրղուզի և Արեգունի լեռների միջև ընկած թեք տափարակում ապաստան հիմնողներն իրենց նոր գյուղը կոչել են Միխայլովկա:

Նորեկները հարևանություն են հաստատել հայերի, ադրբեջանցիների, մորդվինների, քրդերի և այլ ազգության պատկանող մարդկանց հետ՝ կազմելով մի մեծ ընտանիք, ապրել որպես նրա հավասար անդամներ:

Ապրել... Իսկ ինչպիսի՞ ապրուստ է եղել: Ամենուրեք իշխել են խավարն ու տգիտությունը: Սովն ու համաճարակն ուղեկցել են մարդուն, դարձել նրա ճակատագրի անբաժանելի մասը: Ժամանակակիցները գրում են, որ Ղազախի գավառի մեջ մտնող Միխայլովկայի, Ճամբարակների, Ղարաղայայի և Նաղեժդինոյի (ներկայիս Ծործայի) գյուղախմբերը հայոց գեղեցիկ բնաշխարհում եղել են թշվառների, ընչազուրկների և մուրացիկների բնակավայրեր: Ժամանակի վկաներից մեկը, Մուխարաձե ազգանունով մի բուժակ գրել է. «Ամենուրեք կարելի է հանդիպել մարդկանց, որոնց դեմքերին նայելիս կարծում ես կա՛մ նոր են երկարատև աքսորից վերադարձել, կա՛մ գտնըվում են ամենավատթար պայմաններ ունեցող աքսորավայրում: Տները կարծես հավաքներ են, մարդիկ մեծ մասամբ ապրում են անասունների հետ միասին՝ գոմերում: Արդեն տասներորդ տարին է՝ լինում եմ այստեղ, դեռևս չեմ հանդիպել մի գրագետ մարդու»:

Ոչինչ չես կարող ասել, դժբախտաբար, բուժակն իրավացի էր ու ճիշտ է նկարագրել այն ժամանակվա գյուղացու վիճակը: Եվ նրա պատկերած խավարամտությունն է եղել գըլխավոր պատճառներից մեկը, որ նա, 5—6 ամիսը մեկ ժամանելով իր սպասարկած գյուղերը, չկարողանալով «դեղ ու դարման անել» հիվանդների ամենահասարակ ցավերին անգամ, նրանց դարձյալ թողել է «դալլաքների» ու «մոլլաների» հույսին, հավաքել իր «ապրուստն» ու հեռացել:

Այո՛, ծանր, շա՜տ ծանր էր աշխատավոր ժողովրդի վիճակը Ղազախի գավառի մեջ մտնող այդ գյուղախմբերում: Բոլոր գյուղերը, առանց բացառության, զուրկ էին կուլտուրայի օջախներից, կապի, կոմունալ և կենցաղային սպասարկման միջոցներից: Դրանց մասին գյուղացին պատկերացում անգամ չի ունեցել: Բնակիչները զբաղվել են երկրագործությամբ,



սակայն հողը մշակելու համար նրանց մեծ մասը չուներ նույնիսկ արոր: Գութանը երևացել է միայն XX դարի սկզբներին, այն էլ մի քանի աղաների ու բեգերի մոտ:

Շրջանի (եթե կարելի է այդպես անվանել) գյուղերի տարբեր ազգերի մարդիկ իրենց գոյատևումը և փրկությունը տեսել են միմյանց հետ հարևանություն անելու, բարեկամանալու մեջ՝ լավ իմանալով այն իմաստուն խոսքը, որ թռչունն իր թևերով է ուժեղ, մարդը՝ բարեկամությամբ: Հայն օգնել է ադրբեջանցուն՝ վար ու ցանք անել, ադրբեջանցին հային՝ անասնապահություն վարել: Ռուսը հարևանին տրամադրել է հարուստ տրանսպորտը, մորդվինը՝ սեփական բազուկները: Ու նրանք գիտակցել են, որ իրենց կյանքի ու կենցաղի բարելավումը պետք է որոնել ոչ թե աշխարհագրական տեղերի, այլ իշխող կարգերի փոփոխման մեջ:

Նյութական ու հոգևոր աղքատության, ինչպես նաև ազգամիջյան հրահրվող կռիվներ բորբոքելու պայմաններում, XX դարի սկզբներին, ցարական կառավարության տիրապետության տակ խարխափող այդ փոքրիկ, բայց զարմանահրաշ հայոց աշխարհը հասան մեծ Լենինի գաղափարները: Դրանք իրենց հետ բերին այն համագյուղացիները, որոնք, սեփական ընտանիքների գոյությունը պահպանելու համար, անքուն գիշերներ էին անցկացրել օտար երկնքի տակ: Նրանցից շատերը, շփվելով ժամանակի առաջադեմ, հեղափոխականորեն տրամադրված բանվորների ու ծառայողների հետ, բացել են դարերով փակ աչքերն ու սեփական կարծիք կազմել հասարակությանը հուզող հարցերի վերաբերյալ:

Հեղափոխական, մարքսիստական գաղափարները շրջանում տարածել են նաև նրանք, ովքեր մասնակցել են առաջին համաշխարհային պատերազմին ու սեփական մաշկի վրա զգացել նրա սարսափները: Նրանցից շատերը, ճիշտ հասկանալով Լենինի կուսակցության նպատակներն ու խնդիրները, կյանքի լավն ու վատը, վերջնականապես որոշել են իրենց ձեռքը վերցնել ժողովրդի ու սեփական բախտը տնօրինելու իրավունքը: Առավել առաջադիմականները, ավելի խոր ուսումնասիրելով մեծ Լենինի ուսմունքը, ընդմիշտ զինվորագրըվել են ժողովրդին ստրկական կապանքներից ազատագրելու գործին: Սուրբ նպատակի համար էլ հայրենիքի զոհասեղանին իրենց կյանքն են տվել շատ կարմիրցիներ:

Մեծ պայքարում, վեհ նպատակի ու նոր կյանքի համար ընկածների համաստեղության մեջ արժանի տեղ են գրավում մեր հայրենակիցներ, եղբայրներ Բագրատ, Արմենակ և Խոնկիկ Բորյանները, մարդիկ, որոնցից ամեն մեկի կատարած հեղափոխական գործը մի գեղեցիկ ու հերոսական լեգենդ է:

Նրանք երեքն էին... երեք եղբայրներ, որոնք ընտրեցին միևնույն դժվարին, բայց լենինյան փառավոր ուղին: Ոչ թե պատահականությունը մղեց նրանց դեպի ժողովուրդների ազատագրության գործը, այլ՝ սոցիալական մեծ հակասությունների խոր ըմբռնումը, մարդկության կապիտալիզմի կապանքներից փրկելու վեհ նպատակը, մարքսիզմ-լենինիզմի վերջնական հաղթանակի նկատմամբ ունեցած անսահման հավատը:

Տակավին վաղ պատանեկան տարիներին ճաշակելով աշխատավոր մարդու թշվառության պտուղները՝ Բորյան եղբայրները թողեցին հայրենական տունը, դիմեցին օտարության և մեկը մյուսի ետևից հայտնվեցին պրոլետարական Բաքվում, ուր նրանց սպասում էր մոլեգնող հեղափոխական փոթորիկը:

Նրանք երեքն էին... երեք եղբայրներ... Երեքն էլ լենինյան տիպի հեղափոխականներ, որոնք իրենց կյանքն առանց մնացորդի նվիրաբերեցին ժողովրդի ազատագրության սուրբ գործին: Ժամանակը չի խամրել նրանց հիշատակը, ընդհակառակը, ավելի է վեհացրել նրանց անունը, քանզի նրանք ընկան հանուն այսօրվա երջանիկ կյանքի: Բորյանների հեղափոխական ավանդույթներն այժմ ոգևորության աղբյուր են նրանց հայրենակիցների համար: Նրանց հիշատակի ամենալավ հավերժացումը կարմիրցու՝ հայի ու ռուսի, ադրբեջանցու, քրդի ու մորդվինի այսօրվա երջանիկ և ունևոր կյանքն է: Հավերժացում են և այն դպրոցն ու փողոցը, որ նրանց հայրենի աշխարհում կոչվում է Բորյան եղբայրների անունով, այն տուն-թանգարանը, որ ներկայումս բարձրանում է անմահների ծննդավայրում:

Բորյան եղբայրների հեղափոխական ակտիվ գործունեությունը բարերար ազդեցություն է ունեցել շրջանի հեղափոխական շարժման զարգացման վրա: Ընդհատակյա կապի մեջ մտնելով Բորյան եղբայրների հետ՝ նրանց գիտությամբ և անմիջական ցուցումներով շրջանի աշխատավոր ժողովրդի առավել աչքի ընկնող ներկայացուցիչները 1918—1919 թթ. կուսակցական բջիջներ են ստեղծում Թթուջրում, Ճամբարակներում, Միխայլովկայում, Գյոլքենդում, Նաղեժդինոյում և այլուր: Դրանց ամենաակտիվ կազմակերպիչներից էին Ի. Հակոբյանը, Բ. Հարությունյանը, Գ. Սարիբեկյանը, Ս. Տեր-Մարգարյանը, Տ. Բորոդինը, Ի. Աստախովը, Ս. Մալաշիխինը, Յու. Պիկալովան, Բ. Էֆենդիևը, Դ. Յուրտաևը, Ա. Դանիլովը, Վ. Սանդիկովը և ուրիշներ:

Երբ 1920-ի մայիսին Հայաստանում ապըստամբության դրոշն է ծածանվում, շրջանի ճնշված աշխատավորությունը, կոմունիստների

# ՖՐԻԴՐԻԽ ԷՆԳԵԼՍԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԸ

*Իր բարեկամ Կարլ Մարքսից հետո... ամբողջ քաղաքակիրթ աշխարհում... արդի պրոլետարիատի ամենանշանավոր գիտնականը ևս ուսուցիչը Ֆրիդրիխ Էնգելսն էր...*

*Այդ խստաբարո մարտիկն ու լրջախոհ մտածողը խորապես սիրող հոգի ուներ:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ



*Ա. Մ. Թելունց*

# ՄԵԾ ՄՏԱԾՈՂՆ ՈՒ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԸ

## I

Այս տարվա նոյեմբերի 28-ին լրանում է գիտական կոմունիզմի հիմնադիրներից մեկի՝ Կարլ Մարքսի հավատարիմ բարեկամ ու պինակից, մեծ մտածող ու հեղափոխական Ֆրիդրիխ Էնգելսի ծննդյան 150-ամյակը: Մարքսի հետ միասին նա կերտել է գիտական կոմունիստական աշխարհայացքը, ղեկավարել պրոլետարիատի ազատագրական պայքարը, ստեղծել անմահ աշխատություններ, որոնց օգնությամբ դաստիարակվում ու ճշմարիտ գաղափարներով են տոգորվում նորանոր սերունդներ: Կարլ Մարքսի և Վլադիմիր Իլյիչ Լենինի նման Էնգելսն ապրում է աշխարհը հեղափոխականորեն վերափոխող մարտիկների սրտերում, ոգեշնչում նրանց սխրագործության, ապրում որպես մեր ժամանակակիցը, ուսուցիչն ու խորհրդատուն:

Ուսանելի են Էնգելսի կյանքն ու գործը: Դեռ պատանեկան տարիներին, իր առաջին իսկ գրական փորձերում նա հանդես է գալիս առաջավոր գաղափարներով, անհաշտ ամեն տեսակ սոցիալական ու գաղափարական ռեակցիայի հանդեպ, կրքոտ սիրով լուսավորության ու գիտության նկատմամբ, քննադատական սուր մտքով, ստեղծագործական ավյունով:

Դեռ չավարտած գիմնազիան, Էնգելսը հոր պահանջով անցնում է աշխատանքի և ապա՝ կրում պինվորական ծառայություն, միաժամանակ ինքնակրթությամբ ջանասիրաբար լրացնում ուսման պակասը: 1840-ական թվականների սկզբին նա հանդես է գալիս մի շարք հոդվածներով և բրոշյուրներով, որոնց մեջ մանավորապես սուր քննադատում է Շելինգի փիլիսոփայական հայացքները: Երիտասարդ մտածողն ու մարտիկը ինքնուրույնաբար կանգնում է հեղափոխական դեմոկրատիզմի դիրքերում և ուշի-ուշով փնտրում համախոհներ: Դեռևս

անձամբ անծանոթ Մարքսին, 1842 թվականին գրած իր մի պոեմում նա գուշակում է «արծվահայաց» այդ երիտասարդի փոթորկահույզ գործունեությունը.

Հուզումնալից՝ տարածել է բազուկները դեպի վեր,
Երկնի կամարն, ասես, պիտի խորտակի նա՝ անվեհեր:

Եվս երկու տարի և, 1844 թվականի օգոստոս-սեպտեմբերին, XIX դարի երկու մեծագույն հեղափոխականներն ու մտածողները մոտիկից ծանոթանում են, համոզվում, որ տարբեր ուղիներով հասել են միևնույն գաղափարներին. և սկսում են իրենց համատեղ գործունեությունը: Երկուսն էլ ուսումնասիրել էին եվրոպական սոցիալ-քաղաքական ու փիլիսոփայական ուսմունքները. հատկապես գերմանական դասական փիլիսոփայությունը, և դրանց քննադատական օգտագործումը մեծապես նպաստել էր նրանց աշխարհայացքի ձևավորմանը: Բայց վերջինս ձևավորվում էր ո՛չ միայն ժամանակի ու անցյալի գաղափարական ժառանգության քննադատական վերամշակման, այլև այն բանի շնորհիվ, որ Մարքսը և Էնգելսը մոտիկից ծանոթ էին եվրոպական առաջավոր երկրների կյանքին, խորապես ուսումնասիրում էին ժամանակի հասարակական հարաբերություններն ու քաղաքական իրադարձությունները, անմիջական ու եռանդուն մասնակցում հեղափոխական խմորումներին՝ Գերմանիայում, Ֆրանսիայում, Անգլիայում:

1842—1844 թվականներին գտնվելով Անգլիայում, Էնգելսը հանգամանորեն ուսումնասիրում է անգլիական տնտեսագիտական տեսությունները, և նրա գիտական լուրջ ծառայություններից մեկն այն էր, որ նա առաջինը տվեց այդ տեսությունների գնահատականը նոր դիրքերից և առաջադրեց մի շարք գաղափարներ, որոնք մտան մարքսիստական տնտեսագիտական մտքի ոսկե ֆոնդը: Էնգելսի *Քաղաքատնտեսության քննադատության ուրվագծերը*, որ հրատարակվել են 1844 թվականին Մարքսի կողմից խմբագրվող «Գերմանա-ֆրանսիական տարեգրքում», Մարքսը հետագայում գնահատել է որպես «տընտեսագիտական կատեգորիաների քննադատության հանճարեղ ակնարկ»: Սոցիալիստական գրականության մեջ նոր էջ է բացում Էնգելսի *Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում* աշխատությունը, որը հրատարակվում է 1845 թվականին: Սեփական դիտողությունների և ուսումնասիրությունների արդյունք հանդիսացող փաստերով հարուստ այդ երկում Էնգելսը մարդկությանը ներկայացնում է այն սոսկալի վիճակը, որին դատապարտել էին կապիտալիստական կարգերը բանվոր դասակարգին, այն դասակարգին, որն իր աշխատանքով ու քրտինքով էր դարձրել Անգլիան աշխարհի արհեստանոց, ապահովել նրա տընտեսական ու սոցիալական հզորությունը: Բայց Էնգելսի աշխատության գլխավոր արժանիքը մի բազմամարդ դասակարգի տառապյալ վիճակի բացահայտումը չէ միայն:

Այս երկում Էնգելսը զարգացնում է գաղափարներ, հատկապես, պրոլետարիատի պատմական դերի մասին, որոնք արդեն ավետում էին այն մեծագույն գիտական սխրանքը, որը սոցիալիզմը պետք է ուտոպիայից դարձներ գիտություն: Հիրավի, սոցիալիզմը չէր կարող իր ուտոպիական բնույթը հաղթահարել, քանի դեռ չէր գիտակցվում բանվոր դասակարգի պատմական միսիան և սոցիալիզմը չէր ըմբռնվում իբրև քաղաքական պայքարի նպատակ: Գիտական կոմունիզմի հիմնադիրների մեծագույն ծառայությունը եղավ հենց այն, որ նրանք «բանվոր դասակարգին սովորեցրին ինքնաճանաչողություն ու ինքնագիտակցություն և երազանքների տեղը դրին գիտություն» (Լենին):



## II

Տակավին Մարքսի և Էնգելսի առաջին համատեղ աշխատության մեջ՝ *Սուրբ ընտանիքում*, ցայտուն դրսևորվում է նրանց հայացքը պրոլետարիատի հեղափոխական դերի վերաբերյալ: Նրանք ցույց են տալիս, որ հենց պրոլետարիատի սոցիալական կեցությունն է, որ հարկադրում է նրան կատարելու մի պատմական դեր, որը պիտի արտահայտվի ամբողջ հասարակության հեղափոխական վերափոխման և դասակարգային հասարակության վերացման մեջ: Պրոլետարիատի «նպատակը,— ասված է այդ աշխատության մեջ,— և նրա պատմական անելիքը ամենաորոշակի և անառարկելի կերպով նախանշվում են նրա սեփական կենսական դրությամբ, նմանապես և արդի բուրժուական հասարակության ամբողջ կազմակերպությամբ» (*Սուրբ ընտանիք կամ քննադատական քննադատության քննադատություն*, Երևան, 1967, էջ 58):

Բացահայտելով պրոլետարիատի պատմական դերը՝ Մարքսը և Էնգելսը ոչնչացնող քննադատության են ենթարկում իդեալիստական այն հայացքները, որոնք ժխտում էին պատմության մեջ ժողովրդական մասսաների դերը, հետևաբար և՝ պրոլետարիատի դերը, և պատմության միակ շարժիչ ուժ հռչակում «տիեզերական ոգին», «քննադատական միտքը», ականավոր անձնավորությունների կամքը և այլն: Այս աշխատության մեջ է ձևակերպվել մարքսիստական մտքի արմատական դրույթներից մեկը՝ ժողովրդական մասսաների պատմական դերի աճման մասին. «Պատմական գործողության հիմնավորության հետ միասին հետևաբար կաճի նաև մասսայի ծավալը, որը պետք է կատարի այդ պատմական գործողությունը» (նույն տեղը, էջ 132): Պրոլետարիատի պատմական դերի ծավալուն բնութագիրը մարքսիզմի հիմնադիրները տալիս են հատկապես իրենց մյուս համատեղ աշխատության՝ *Կոմունիստական կուսակցության մանիֆեստի* մեջ:

*Սուրբ ընտանիք* և դրան նախորդող մի շարք աշխատություններում կատարվում է Մարքսի և Էնգելսի անցումն իդեալիզմից մատերիալիզմին և հեղափոխական դեմոկրատիզմից՝ սոցիալիզմին: Իդեալիստական աշխարհայացքը քննադատվում է մասնավորապես *Գերմանական իդեոլոգիա* աշխատության մեջ: Այստեղ տրված են նաև պատմության մատերիալիստական ըմբռնման հիմնական դրույթները: Ի հակադրություն իդեալիստական փիլիսոփայության, որ երկնքից է իջնում երկիր, մարքսիզմի հիմնադիրները ելնում են պատմության երկրային բնույթից. «Մեզ համար,— գրում են նրանք,— ելակետ են հանդիսանում իսկապես գործուն մարդիկ, և նրանց իրական կենսապրոցեսից մենք մակաբերում ենք նաև գաղափարական արտացոլումների և այդ կենսապրոցեսի արձագանքների զարգացումը... Ոչ թե գիտակցությունն է որոշում կյանքը, այլ կյանքն է որոշում գիտակցությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 25):

Նոր, դիալեկտիկական-մատերիալիստական աշխարհայացքի ստեղծումը մարքսիզմի հիմնադիրներից պահանջում էր քննադատական վերաբերմունք նաև անցյալի ու ժամանակի մատերիալիստական ուսմունքների նկատմամբ, որոնք իրենց բնույթով մետաֆիզիկական էին: Ըստ արժանվույն գնահատելով գերմանացի մեծ փիլիսոփա, մատերիալիստ Ֆոյերբախին, որը մարտնչելով իդեալիզմի, մասնավորապես հեգելյան իդեալիզմի դեմ, ապացուցեց «հումանիզմին համընկնող մատերիալիզմը», նրանք միաժամանակ քննադատում են նրա փիլիսոփայության հայեցողական բնույթը, այն, որ այդ փիլիսոփայությունը «ձգտում է միայն *գոյություն ունեցող* փաստի ճիշտ գիտակցմանը,

այնինչ իսկական կոմունիստի խնդիրը հանգում է նրան, որ տապալի այդ գոյություն ունեցողը», «հեղափոխականացնի գոյություն ունեցող աշխարհը... հանդես գա իրերի գոյություն ունեցող դրության դեմ և փոխի այն» (նույն տեղը, էջ 41, 42):

Մարքսի և Էնգելսի 40-ական թվականների տեսական գործունեության պսակը հանդիսացավ *Կոմունիստական կուսակցության մանիֆեստը*, որը դարձավ համաշխարհային կոմունիստական շարժման ծրագրային հիմնորոշ փաստաթուղթը: Այստեղ մարքսիզմի հիմնադիրները հանճարեղորեն կիրառում են իրենց իսկ կերտած դիալեկտիկական մեթոդը պատմության անցյալի ու ներկայի նկատմամբ, բացահայտում են հասարակության զարգացման մայրուղին, դասակարգային հարաբերությունների էությունը, ապացուցում դասակարգային հասարակության խորտակման ու կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունն ամբողջ աշխարհում: Գաղափարների փիլիսոփայական խորությունն ու տրամաբանական ուժը միահյուսված են այստեղ հեղափոխական կրքին ու նպատակասլացությանը, պատմության օբյեկտիվ ընթացքի ըմբռնումը՝ հեղափոխական դասակարգի կենսագործունեությանը, ժամանակի արմատական խնդիրների գիտակցումը՝ պատմական հեռանկարներին: Պատմության մեջ երբեք ոչ մի հասարակական շարժում ու քաղաքական կազմակերպություն չի ունեցել և չէր կարող ունենալ տեսականորեն այդպես բովանդակալի ու հստակ ծրագիր, որ մշակված է երկու հանճարի կողմից:

## III

40-ական թվականներին եվրոպական երկրների մեծ մասը լի էր հասարակական խոր տեղաշարժերով: Էնգելսը, Մարքսի հետ միասին, հեղափոխական շարժման ակտիվ մասնակիցն էր, նրա հետ ղեկավար դեր էր խաղում «Կոմունիստների միություն» կազմակերպության մեջ, խմբագրում «Նոր Հռենոսյան լրագիրը», կենքը ձեռքին մասնակցում 1848 թվականի պինված ապըստամբությանը Գերմանիայում: Հեղափոխության պարտությունից հետո նա անցնում է արտասահման և հարկադրված նորից ծառայության անցնում Մանչեստրում: Լոնդոն է տեղափոխվում Մարքսը և եվրոպական ռեակցիայի մռայլ տարիներին նյութական ծանր կացության մեջ աշխատում իր գլխավոր տեսական երկի՝ *Կապիտալի* վրա:

Մարքսի և Էնգելսի բարեկամությունը, որն արդեն լուրջ քննություն էր բռնել հեղափոխական պոռթկումների տարիներին, շարունակում է խորանալ: Ուրիշ այդպիսի մեծ բարեկամություն չգիտե պատմությունը: Խոր էր Էնգելսի սերն ու հարգանքը իր հանճարեղ բարեկամի նկատմամբ. ոչ ոք նրա նման չգիտեր Մարքսի մեծությունն ու վեհությունը: Սրտառուչ են նրա խոսքերը Մարքսի մահվան օրը. «Նրան ենք մենք պարտական այն ամենով, ինչ դարձել ենք. և այն ամենով, ինչին հիմա հասել է ժամանակակից շարժումը, այն պարտական է նրա տեսական ու պրակտիկ գործունեությանը. առանց նրա մենք մինչև օրս կխարխափեինք խավարում» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 35, стр. 383):

Էնգելսը ոչինչ չէր խնայում, որպեսզի հնարավորություն տա մեծ բարեկամին կերտելու իր հանճարեղ երկը: Մարքսը հպարտանում էր իր վեհանձն բարեկամով, նրա խոր ու բազմակողմանի գիտելիքներով. անվանելով նրան «իսկական հանրագիտարան», խոստովանում է, որ առանց նրա ինքնազոհության ինքը չէր կարող հաղթահարել իր հիմնական երկի ահռելի դժվարությունները: Դա բարեկամության նոր տիպ էր՝ խարսխված համոզմունքների նույնության ու հասարակական պարտքի գիտակցման վրա, որին խորթ էր ամեն տեսակ շահախնդրություն,—բարեկամություն, որն ամենևին չէր խանգարում երկու հզոր անձնավորությունների անհատականությանը: «Որքան ավելի էին միահյուսվում նրանց մտածողությունն ու ստեղծագործությունը, այնքան ավելի ամբողջական անձնավորություն էր նրանցից յուրաքանչյուրը»,— նշել է Ֆ. Մերինգը:

1870 թվականների սկզբից Էնգելսին հաջողվում է թողնել ծառայությունն առևտրական գրասենյակում և ամբողջովին նվիրվել հեղափոխական գործունեությանն ու տեսական պրպտումներին: Նա եռանդուն մասնակցում է Մարքսի գլխավորած ինտերնացիոնալի աշխատանքներին, օգնում եվրոպական ազգային սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների կազմավորմանն ու զարգացմանը: Թեև այդ ժամանակ նա հիսունից անց էր, բայց երիտասարդական ավյունով ձեռնամուխ է լինում գիտության այլ և այլ ճյուղերի ուսումնասիրությանը, մարքսիստական տեսության զարգացմանը, պաշտպանությանն ու պրոպագանդմանը: Տեսության մեջ նույնքան խառնակիչ, որքան և ամբարտավան Դյուրինգի դեմ նրա վարած փայլուն բանավեճը ցույց տվեց, որ անհնար է հուսալ, թե մարքսիզմի հզոր ուսմունքի դեմ կարելի է անպատիժ ճամարտակել: Բայց դա գործի միայն մի և այն էլ ոչ գլխավոր կողմն էր: Դյուրինգի դեմ մղած Էնգելսի բանավեճից ծնվեց մի աշխատություն, որը մարքսիստական տեսության մի իսկական հանրագիտարան է, մարքսիզմի բաղադրիչ մասերի՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, մարքսիստական քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի, հիմունքների փայլուն շարադրանք, մարքսիստական ուսմունքի զարգացման դասական օրինակ:

Մարքսի մահից հետո Էնգելսը պրոլետարական շարժման ճանաչված ղեկավարն էր, տեսաբանն ու ուսուցիչը: Նրա գլխավոր հոգածությունն էին նախ Մարքսի թողած գրական ժառանգության խմբագրումը և հրապարակումը: Մի ամբողջ տասնամյակի լարված աշխատանքի արդյունք հանդիսացան *Կապիտալի* երկրորդ և երրորդ հատորների խմբագրումն ու հրապարակումը: Էնգելսի կատարած աշխատանքը հսկայական էր. *Կապիտալի* այդ երկու հատորները իսկապես նրանց երկուսի աշխատությունն են,— գրել է Վ. Ի. Լենինը:

Խոշոր է Էնգելսի դերը գիտական սոցիալիզմի հիմնական աշխատության ստեղծման մեջ և Մարքսի կենդանության օրոք: Մարքսն իր գլխավոր երկի բոլոր հիմնական պրոբլեմները քննարկում էր Էնգելսի հետ: Տարիներ շարունակ նրանց նամակագրության առանցքն էր *Կապիտալը*: Այդ հանճարեղ երկի հրատարակման պրոցեսում անգամ Մարքսն ուշի-ուշով հետևում էր իր մեծ բարեկամի ու գիտնականի ամեն մի դիտողությանը: Գովեստներ չսիրող Մարքսը, սակայն, ամենևին անտարբեր չէր իր աշխատության վերաբերյալ Էնգելսի խրախուսական խոսքերին: «Մինչև հիմա դու գոհ ես եղել, և դա ինձ համար ավելի կարևոր է, քան այն ամենը, ինչ կարող է ասել ամբողջ աշխարհն այդ առիթով»,— գրում է նա Էնգելսին 1867 թվականի հունիսի 22-ին, մասնավորապես նկատի ունենալով Էնգելսի խոստովանությունը, որ *Կապիտալի* ընթերցած մամուլներն իրեն «մեծ հրճվանք են պատճառել» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 31, стр. 258, 259): Մեծ էր Էնգելսի ծառայությունը և *Կապիտալի* պրոպագանդման ասպարեզում: Նա գրել է մի շարք գրախոսականներ *Կապիտալի* մասին, կազմել նրա առաջին հատորի կոնսպեկտը, լրացումներ կատարել մյուս հատորների համար, որոնց մեջ հանճարեղ խորաթափանցու-

թյամբ կանխատեսել է կապիտալիզմի բարձրագույն փուլի՝ իմպերիալիզմի մի շարք բնորոշ կողմեր: Էնգելսն առանձնապես ընդգծում էր *Կապիտալի* վիթխարի գիտական նշանակությունը և պատմական դերը: Սոցիալիզմը դարձել է գիտություն շնորհիվ Մարքսի երկու մեծ հայտնագործությունների,— ասում է նա.— պատմության մատերիալիստական ըմբռնման և կապիտալիստական արտադրության գաղտնիքի՝ հավելյալ արժեքի օրենքի հայտնաբերման: Բայց *Կապիտալի* նշանակությունը միայն կապիտալիստական հասարակության տնտեսական վերլուծությունը չէ: Գրեթե բացառապես Մարքսին ենք պարտական այն ամենի համար, ինչ կատարված է և մինչբուրժուական էկոնոմիկայի տեսական հետազոտության բնագավառում (տե՛ս *Անտի-Դյուրինգ*, Երևան, 1967 թ., էջ 200):

Էնգելսն առանձնապես ընդգծում է Մարքսի երկի պատմական այն արժեքը, որ նա սոցիալիզմի ուսմունքը հիմնավորում է տնտեսական առումով, ցույց տալիս, որ արտադրաուժերի կարգացման որոշակի մակարդակի վրա պատմական անհրաժեշտություն է դառնում արտադրամիջոցների հանրայնացումը և, հանձին պրոլետարիատի, պատմության բեմ է իջնում մի դասակարգ, որը կոչված է ստեղծելու նոր տիպի արտադրություն ու հասարակություն:

## IV

Պատմական մեծ արժեք են ներկայացնում Էնգելսի 80—90-ական թվականներին գրած աշխատությունները: Գիտության նոր տվյալների հիման վրա նա իր *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը* աշխատության մեջ մարքսիստական ուսմունքը հարստացնում է նախնադարյան համայնական հասարակարգի բնութագրությամբ, հետամուտ լինում մասնավոր սեփականության, դասակարգերի, պետության ծագման պրոցեսին, հետազոտում ընտանիքի պատմական ձևերը և էվոլյուցիան: Էնգելսի այդ աշխատությունն արժեքավոր ներդրում էր պատմության մատերիալիստական ըմբռնման մեջ:

80-ական թվականների վերջին Էնգելսը հրապարակում է իր *Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը* մեծարժեք աշխատությունը, որն առանձնակի տեղ է գրավում մարքսիստական փիլիսոփայության մեջ: Փոքրածավալ այս երկը աչքի է ընկնում գաղափարների լայն ընդգրկմամբ, շարադրանքի կարմանալի հստակությամբ ու վարպետությամբ: Էնգելսն այստեղ բնութագրում է մարքսիզմի փիլիսոփայական ակունքները, Հեգելի և Ֆոյերբախի փիլիսոփայությունը, ուրվագծում մարքսիզմի ծագման ընթացքը, մարքսիստական փիլիսոփայության ձևավորումը, ցույց տալիս նրա հեղափոխիչ դերը փիլիսոփայական մտքի պատմության մեջ: Էնգելսը տալիս է փիլիսոփայության հիմնական հարցի դասական սահմանումը, գիտական հողի վրա դնում փիլիսոփայության հիմնական ուղղությունների՝ մատերիալիզմի և իդեալիզմի, պայքարի ուսումնասիրությունը:

Դժբախտաբար անավարտ մնաց Էնգելսի *Բնության դիալեկտիկա* հետազոտությունը. Մարքսի մահից հետո նա այլևս չանդրադարձավ այդ երկին: Բայց և այդ ձևով Էնգելսի փիլիսոփայական հիշյալ հետազոտությունը, որը տասնյակ տարիներ Մարքսի և Էնգելսի չհրապարակված այլ գործերի հետ միասին մնացել էր գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության արխիվում և առաջին անգամ հրատարակվել Մարքսի և Էնգելսի ինստիտուտի կողմից 1925 թվականին,— մեծարժեք գործ է: Այստեղ բնութագրվում են մատերիա-



լիստական դիալեկտիկայի օրենքները և մի շարք կատեգորիաներ, կիրառվում է մատերիալիստական դիալեկտիկան բնագիտության տարբեր բնագավառների նկատմամբ, ցույց է տրվում իդեալիզմի և մետաֆիզիկայի սնանկությունը ժամանակակից բնագիտության տվյալների փիլիսոփայական ամփոփման գործում: Փիլիսոփայական և սոցիոլոգիական առանձնահատուկ արժեք է ներկայացնում Էնգելսի հետազոտությունը՝ նվիրված մարդու ծագման պրոցեսում աշխատանքի դերին, ինչպես և գրքի ներածությունը, որը մի հակիրճ, բովանդակալից ու իմաստալից փիլիսոփայական ակնարկ է ժամանակակից բնագիտության ծագման և կարգացման հիմնական տենդենցների վերաբերյալ:

Բնագիտական հետազոտությունների բնագավառում Էնգելսի ուշադրության կենտրոնում է գտնվում բնագիտության և փիլիսոփայության հարաբերության հարցը, որը քննարկվում է և *Անտի-Դյուրինգում:* Ժամանակակից բնագիտության կարգացումը լիովին հաստատեց Էնգելսի այն միտքը, թե բնագիտությունն այն աստիճան առաջ է գնացել, որ չի կարող այլևս խուսափել դիալեկտիկական ընդհանրացումից և, հետևաբար, կառչել «իրենից դուրս և իրենից վեր կանգնած բնափիլիսոփայությանը», ինչպես և մտածողության սահմանափակ, էմպիրիկ ու մետաֆիզիկական մեթոդին: Դիալեկտիկայի վարպետ կիրառումը բնագիտության ոլորտում Էնգելսին հնարավորություն է ընձեռում կանխատեսելու նրա կարգացման հիմնական գծերը:

Այն ժամանակ, երբ դեռ մետաֆիզիկորեն մտածող բնագետներն ու փիլիսոփաները կարծում էին, թե բնությունն ունի իր վերջնական ու անփոփոխ աղյուսները, որոնք իբրև արդեն հայտնագործված են մոլեկուլների և ատոմների ձևով, դիալեկտիկ Էնգելսն ընդգծում էր, որ բնության մեջ հակադրությունններն ու տարբերություններն ունեն միայն հարաբերական նշանակություն և որ բռնազբոսիկ ամրակայած սահմանագծերը խորթ են բնագիտության կարգացման արդի մակարդակին:

Դեռևս 1867 թվականին նա քննադատում էր այն մետաֆիզիկական տեսակետը, թե իբր գոյություն ունեն իրոք անբաժանելի ատոմներ. ինչպես մոլեկուլը նա համարում էր բաժանումների անսահման շարքի «հանգուցակետ», «որը չի շրջափակում այդ շարքը, բայց հաստատում է որակական տարբերությունը», այնպես էլ ատոմը համարում էր միայն *հարաբերություն* (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 31, стр. 258):

Էնգելսը հանճարեղորեն «նոր հեղաշրջումներ» էր կանխատեսում բնագիտության, հատկապես մատերիայի կառուցվածքի հետազոտման մեջ, և միայն ցավով կարելի է նշել, որ նա ականատես չեղավ բնագիտության այն մեծ հեղափոխությանը, որն սկսվեց նրա մահից քիչ հետո, XIX դարի վերջին, հեղափոխություն, որի սկզբնական շրջանին էր վերաբերում էլեկտրոնի հայտնագործումը, այսինքն՝ ատոմի բաժանելիության ապացուցումը: Էնգելսի բնագիտական կանխատեսումները միանգամայն օրինաչափ էին: Տալով արդի բնագիտության նվաճումների փիլիսոփայական բնութագրումը՝ Վ. Ի. Լենինն ընդգծում է. «Ատոմի քայքայելիությունը, նրա անսպառելիությունը, մատերիայի բոլոր ձևերի և նրա շարժման փոփոխականությունը միշտ էլ եղել են դիալեկտիկական մատերիալիզմի հենարանը» (Երկեր, հ. 14, էջ 375):

Զարգացնելով Էնգելսի արծարծած գաղափարները բնության դիալեկտիկական ընթացքի մասին, Լենինն առաջադրում է մատերիայի անսպառելիության հիմնադրույթը, ընդգծելով, թե բնության բոլոր սահմանները պատմական են, հարաբերական, շարժուն, արտահայտում են մեր մտքի մոտեցումը մատերիայի

ճանաչմանը և, միաժամանակ, մերկացնում իդեալիզմի փորձերը՝ մատերիան ներկայացնելու որպես սիմվոլ, պայմանական նշան: Բնագիտության և փիլիսոփայության փոխհարաբերության վերաբերյալ Էնգելսի մտքերն իրենց հետագա բեղմնավոր կարգացումը գտան մարքսիստական փիլիսոփայության մեջ, հատկապես բնագիտության և մատերիալիստական փիլիսոփայության դաշինքի լենինյան դրույթում:

## V

Խոսելով Էնգելսի ծառայությունների մասին մարքսիզմի, հատկապես մարքսիստական փիլիսոփայության հիմնադրման ու զարգացման ասպարեզում, չի կարելի չընդգծել և այն դերը, որ նա կատարել է մարքսիզմը օպորտունիստական, անարխիստական, աղանդավորական, դոգմատիկական և այլ բնույթի հակամարքսիստական հոսանքներից պաշտպանելու և նրա գաղափարական հաղթանակն ապահովելու բնագավառում: Մարքսիզմը ծագել ու կարգացել է պայքարում, և նրա հիմնադիրները հարկադրված էին վիթխարի ջանքեր գործադրել իրենց ուսմունքը աղավաղումներից ու հարձակումներից պաշտպանելու համար: Մարքսի մահից հետո այդ պայքարի ողջ ծանրությունը կրեց Էնգելսը, և նա փայլուն կերպով կատարեց իր այդ պարտքը ևս:

Էնգելսը բանվորական կուսակցություններին անհաշտվողականություն էր ուսուցանում բուրժուական ու մանրբուրժուական գաղափարախոսության նկատմամբ: Նա 1891 թվականին հրապարակեց Մարքսի՝ 1875 թվականին գրած *Գոթայի ծրագրի քննադատությունը*, որտեղ սուր քննադատության էր ենթարկված կուսակցության ծրագիրը օպորտունիստական սխալների, լասալականությանը լուրջ զիջումներ կատարելու և այլ թերությունների համար: Հրապարակելով Գոթայի ծրագրի մարքսյան քննադատությունը, Էնգելսը նկատի ուներ և այն, որ դա մեծ դեր կխաղա կուսակցությունը օպորտունիստական սայթաքումներից կերծ պահելու համար, և այն, որ լայն մասսաները կըմբռնեն Մարքսի այդ աշխատության հանճարեղ մտքերը պետության, պրոլետարիատի դիկտատուրայի, կոմունիստական հասարակության մասին: Գոթայի ծրագրի՝ Էնգելսի քննադատությունը, որը տրված էր Բեբելին գրած նամակում, հրատարակվեց շատ ավելի ուշ՝ 1911 թվականին:

Վ. Ի. Լենինը *Պետություն և հեղափոխություն* աշխատության մեջ հանգամանորեն պարզաբանել է Մարքսի աշխատության և Էնգելսի նամակի, հատկապես կոմունիստական հասարակության վերաբերյալ մարքսյան գաղափարների պատմական վիթխարի նշանակությունը: Գիտական կոմունիզմի հիմնադիրների հիշյալ աշխատություններում առաջադրված գաղափարները և Վ. Ի. Լենինի կողմից դրանց հետագա կարգացումը ո՛չ միայն տեսական, այլև անմիջական, գործնական հատուկ նշանակություն ունեն արդի՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում:

Անհաշտ էր Էնգելսը հեղափոխական տեսության քարացման, դոգմայի վերածման ամեն մի փորձի նկատմամբ: Մարքսիզմի հիմնադիրները դոգմատիզմի դեմ պայքարել են տեսության բոլոր բնագավառներում և պրակտիկայում: Նրանք ցույց են տվել, որ ամեն մի նախանշ դիալեկտիկայից հղի է դոգմատիզմով: Բարձր գնահատելով Հեգելի դիալեկտիկան, Էնգելսն ընդգծել է, որ այն գտնվում է խոր հակասության մեջ նրա դոգմատիկական սիստեմի հետ, որն, ի հակադրություն դիալեկտիկայի սկզբունքների, ավդարարում էր, թե Հեգելի փիլիսոփայությամբ մարդկությունն իբր հասել է բացարձակ իդեայի ճանաչ-



ման, և, հետևաբար, ինչպես իմացության, նույնպես և պատմության ավարտին: Ստեղծելով մատերիալիստական դիալեկտիկա, Մարքսը և Էնգելսը տարածեցին նրա սկզբունքները հետազոտության բոլոր բնագավառների վրա, ամենուրեք տեսությանը տալով հակադոգմատիկական, խոր ստեղծագործական բնույթ: Նույն մոտեցումը նրանք պահանջում էին իրենց աշակերտներից ու հետևորդներից, ազդարարելով, թե իրենց ուսմունքը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց: «Մարքսի աշխարհըմբռնումը,— գրել է Էնգելսը մահից քիչ առաջ՝ 1895 թ. մարտի 11-ին,— տալիս է ոչ թե պատրաստի դոգմաներ, այլ հետագա հետազոտության ելակետեր և մեթոդ՝ այդ հետազոտության *համար*» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 39, стр. 352):

Ստեղծագործաբար վերաբերվել տեսությանը և ստեղծագործաբար այն կիրառել պրակտիկայում— մարքսիզմի հիմնադիրների այս ցուցումն ամենայն խորությամբ ու հետևողականությամբ կիրառում էր Լենինը: Դեռևս 1897 թ. նա ընդգծել է, որ հետևողական մարքսիստները չեն նայում Մարքսի տեսությանը որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. այդ տեսությունը դրել է միայն հիմնաքարերն այն գիտության, որ սոցիալիստները *պետք է* առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ուզում ետ մնալ կյանքից (տե՛ս Երկեր, հ. 4, էջ 262): Տեսության մեջ և պրակտիկայում գործելով ստեղծագործաբար, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրներն ավանդել են այդպես գործել պրոլետարիատի կուսակցությանը, նոր հասարակարգ կառուցողներին:

## VI

Մարքսի և Էնգելսի ուսմունքն ու գործն արդեն նրանց կենդանության օրոք առատ հունձք էին տալիս և դառնում իր ժամանակի ամենաազդեցիկ գաղափարական ու պրակտիկ ուժը: 1893 թվականին երկրորդ ինտերնացիոնալի Ցյուրիխի կոնգրեսում արտասանած ճառում Էնգելսն այսպես է բնութագրել իրենց ուսմունքի և գործի պատմական բախտը. «Անցել է ճիշտ 50 տարի այն ժամանակից, երբ Մարքսն ու ես մտանք շարժման մեջ, հրապարակելով առաջին սոցիալիստական հոդվածները... Այդ ժամանակից սոցիալիզմը մանր աղանդներից կարգացել, դարձել է հզոր կուսակցություն, որն ահ ու դողի մեջ է պահում ամբողջ պաշտոնական աշխարհը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 425): Նույն թվականին նա օրինական հպարտությամբ ազդարարում էր. «Մենք— մեծ տերություն ենք, որ սարսափ է ազդում, տերություն, որից կախված է ավելին, քան ուրիշ մեծ տերություններից» (նույն տեղը, էջ 427): Նա ցավով էր նշում, որ Մարքսին չվիճակվեց տեսնել իրենց գործի և ուսմունքի այն հաղթարշավը, որ տեսնում է ինքը, և որ իրեն մենակ է վիճակվել հնձելու իր հանգուցյալ բարեկամի փառքի հունձքը: Այն մեծ հարգանքը, որ նրա նկատմամբ տածում էր համաշխարհային պրոլետարական շարժումը, Էնգելսն իր համեստությամբ անդավաճան վերագրում էր ոչ թե անձամբ իրեն, որ Մարքսից հետո համաշխարհային պրոլետարական շարժման ճանաչված առաջնորդն էր, այլ իր հանգուցյալ բարեկամին: Բայց միջազգային կոմունիստական շարժումը գիտե, թե ի՛նչ հարգանքի ու պատվի է արժանի և ինքը՝ Էնգելսը, որի անունը պատմության մեջ է մտել մեծ Մարքսի անվան հետ:

Նշելով Ֆրիդրիխ Էնգելսի ծննդյան 150-ամյակը, առաջավոր մարդկությունն իր երախտագիտությունն է ցուցաբերում մի մարդու նկատմամբ, որի ծառայությունները վերաբերում են ոչ միայն անցյալին: «Գործողության կենդանի տեսություն»— այսպես էր անվանում Էնգելսն իր մեծ բարեկամի և իր

ստեղծած ուսմունքը. այդ հկոր, անմահ ուսմունքի հիմնադիրներն ապրում են իրենց կենդանի ուսմունքի մեջ:

Մարքսի և Էնգելսի ուսմունքին և գործին ավելի մեծ հաղթանակ ու հունձք էր սպասում հետագայում, երբ նորանոր ժողովուրդներ ու երկրներ էին մտնում սոցիալիստական շարժման ոլորտը, կազմավորվում էին սոցիալիստական նոր կուսակցություններ, պատմությունը հարստանում էր դասակարգային պայքարի նոր փորձով: Այդ ուսմունքն իսկ, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, «խոր. փիլիսոփայական աշխարհայեցողությամբ և պատմության հարուստ գիտելիքով լուսաբանված՝ փ ո ր ձ ի  հ ա ն ր ա գ ո ւ մ ա ր ո ւ մ ն  է» (Երկեր, հ. 25, էջ 525):

Պատմության խոր, փիլիսոփայական իմաստավորումը, հետազոտության դիալեկտիկական մեթոդը հնարավորություն էին ընձեռում մարքսիզմի հիմնադիրներին թափանցելու ո՛չ միայն իրենց աչքի առջև ծավալվող իրադարձությունների էության մեջ, այլև կանխատեսելու իրադարձությունների ծավալման ընթացքը ապագայում, մշակելու հեղափոխական գործունեության տակտիկա և ստրատեգիա:

Պատմությունն իրականացրեց Մարքսի և Էնգելսի կանխատեսումները Ռուսաստանի հեղափոխական մեծ ապագայի վերաբերյալ: Նրանք ուշի-ուշով հետևում էին Ռուսաստանի տնտեսական զարգացմանն ու սոցիալ-քաղաքական պրոցեսներին, զոհունակությամբ դիտում, թե ինչպես իրենց ուսմունքը առաջին բողբոջներն է տալիս մի երկրում, որը պատմական անհրաժեշտությամբ դուրս էր գալիս հեղափոխական շարժման առաջաեմ: Օրինաչափորեն Ռուսաստանին է պատկանում *նոր* սոցիալական վերափոխման հեղափոխական նախաձեռնությունը,— մարգարեաբար կանխատեսել էր Էնգելսը 1883 թվականին ռուս հեղափոխական Գ. Լոպատինի հետ ունեցած զրույցում (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 490):

Մարքսը և Էնգելսը Ռուսաստանի հեղափոխական շարժումը դիտում էին որպես համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող երևույթ, և պատմությունը ցույց տվեց նրանց իրավացիությունը— Ռուսաստանը բացեց պատմության նոր դարաշրջանը, դարձավ սոցիալիզմի առաջին երկիրը: Ռուսաստանի հեղափոխական շարժման փորձն է, որ մեր դարում ամենից շատ հարստացրեց համաշխարհային հեղափոխական պրակտիկան ու հեղափոխական տեսությունը:

Պատմության փորձի և այդ փորձի իմաստավորման հետ մեկտեղ հարստանում է մարքսիզմի ուսմունքը և, համապատասխանաբար, աճում նրա պրակտիկ-վերափոխիչ դերը: Պատմական նոր դարաշրջանում՝ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում, Մարքսի և Էնգելսի ուսմունքը զարգացրին ու նոր աստիճանի բարձրացրին մեծ Լենինը, նրա հիմնադրած Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ մարքսիզմ-լենինիզմի անպարտ ուսմունքի կրողն ու իրականացնողը:

Նշելով Ֆ. Էնգելսի ծննդյան 150-ամյակը՝ կոմունիզմ կառուցող սերունդը հպարտությամբ է նայում իր անցյալին, վերաիմաստավորում նրա փորձը և, ոգեշնչված կոմունիստական շարժման առաջնորդների կյանքով ու գործով, տիրապետելով նրանց ստեղծած ուսմունքին, զարգացնելով ու կենսագործելով այն, գրոհում է ապագան, իրականացնում ամենահումանիստական ու հեղափոխական իդեալները:





*Ս. Ա. Միքայելյան*

# ՎԵՀ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՋԱՀԱԿԻՐԸ

Ֆ. Էնգելսը Մարքսի մեծ զինակիցն ու մերձավորագույն բարեկամն է: Նրանք միասին են ստեղծել բոլոր ժամանակների ամենաառաջավոր դասակարգի՝ պրոլետարիատի հեղափոխական ուսմունքը՝ մարքսիզմը, թեկուզ և դա կրում է մեկի անունը:

Մարքսիզմի երևան գալը պատմական անհրաժեշտություն էր, օրինաչափ՝ մարդկության պատմության մեջ բեկումնային մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ մոլեգնում էր սոցիալական փոթորիկը, սրվում էր աշխատանքի ու կապիտալի հակամարտությունը, երբ հարկավոր էր գիտականորեն հիմնավորել բանվոր դասակարգի հեղափոխական միսիան, ցույց տալ նրա նպատակն ու ուղին, զինել նրան առաջավոր տեսությամբ, պատասխան տալ օրակարգում ծառացած հարցերին... և այդ կատարեց մարքսիզմը: Մարքսն ու Էնգելսը ո՛չ միայն ստեղծել են պրոլետարիատի ամբողջական աշխարհայացք, փիլիսոփայական, տնտեսագիտական ու սոցիալ-քաղաքական հայացքների կառուցիկ համակարգը, այլև կազմակերպել ու ղեկավարել են պատմության մեջ նոր տիպի առաջին կոմունիստական կուսակցությունն ու բանվորների միջազգային ընկերությունը:

Մարքսի և Էնգելսի մատերիալիստական-կոմունիստական հայացքների ընդհանրությունը, որին նրանք հանգել էին ինքնուրույնաբար, գաղափարական պայքարի միևնույն դիրքերում գտնվելը, դարձավ նրանց անխախտ բարեկամության հիմքը: «Եվրոպական պրոլետարիատը կարող է ասել, որ նրա գիտությունն ստեղծել են երկու գիտնականներ ու մարտիկներ, որոնց հարաբերությունները գերազանցում են հնադարյան մարդկանց բոլոր ամենասրտաշարժ զրույցներից մարդկային բարեկամության մասին» (Լենին, Երկեր, հ. 2, էջ 15):

* * *

Էնգելսը ծնվել է Գերմանիայի տեքստիլ արդյունաբերության կենտրոններից մեկում, Պրուսիայի Բարմեն քաղաքում 1820 թ. նոյեմբերի 28-ին խոշոր գործարանատիրոջ ընտանիքում: Նախնական կրթությունն ստացել է տեղի դպրոցում ու ապա ընդունվել Բարմենի մոտ գտնվող Էլբերֆելդի գիմնազիան: Հայրը կամենում էր, որ իր ավագ որդին դառնա առևտրական: Սակայն եվրոպական երկրներում ընթացող արդյունաբերական հեղաշրջումը, բուրժուական հասարակությունը ցնցող ճգնաժամային փոթորիկները բախտորոշ ազդեցություն ունեցան դյուրազգաց ու խոհուն պատանու հայացքների ձևավորման վրա:

Դեռևս գիմնազիայում սովորելու ժամանակ նա խոր ատելությամբ է լցվում ինքնակալության ու իշխանավորների կամայականությունների

նկատմամբ, կասկածում աստծո գոյության վրա, հրապուրվում պոեզիայով:

Հայրն անհանգստացած էր Ֆրիդրիխի հայացքների կազմավորման այդպիսի ընթացքով: Եվ ահա հոր պահանջով նա 1837-ին թողնում է գիմնազիայի վերջին դասարանն ու աշխատում հոր ձեռնարկության գրասենյակում, ապա հաջորդ տարին ուղարկվում Բրեմեն՝ առևտրական գրասենյակում ծառայելու, առևտրային գործում կատարելագործվելու: Ծառայության հետ միասին, Էնգելսն զբաղվում է պոեզիայով ու հրապարակախոսությամբ, մոտիկից ծանոթանում բանվոր դասակարգի վիճակին, որի նկատմամբ նա դեռ Բարմենում համակրանք էր տածում, կարդում քաղաքական կյանքին վերաբերող գրքեր, մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում Հեգելին, չհամաձայնվելով նրա որոշ դրույթներին: Բրեմենում որոշակիորեն ձևավորվում են նրա քաղաքական հայացքները:

1841 թ. հոկտեմբերին գալիս է Բեռլին, զորակոչվում բանակ: Այդ առիթ է դառնում ռազմագիտություն ուսումնասիրելու, որի նկատմամբ նա իր հետաքրքրասիրությունը պահպանեց մինչև վերջ: Ազատ ժամերին դասախոսություններ է ունկնդրում Բեռլինի համալսարանում, խորացնում իր փիլիսոփայական ու քաղաքական գիտելիքները, ընդունվում երիտասարդ հեգելականների, այսպես կոչված՝ «Ազատների» խմբակը:

Լ. Ֆոյերբախի *Քրիստոնեության էությունը* գրքի ընթերցումը, որը լույս էր տեսել 1841-ին, Էնգելսին մղեց դեպի մատերիալիզմը:

1842 թ. վերջերին ավարտելով զինվորական ծառայությունը, նա վերադառնում է Բարմեն և հոր ցանկությամբ մեկնում Անգլիա, Մանչեստրում գտնվող «Էրմեն և Էնգելս» բամբակամանվածային խոշոր ֆիրմայի (հայրը դրա փայատերն էր) գրասենյակում պաշտոնավարելու համար: Բայց նախքան Անգլիա մեկնելը, նա ցանկացավ հանդիպել «մոլեգնող հոգու տեր տափաստանային մրրիկին», ինչպես բնութագրել էր նա Մարքսին, ծանոթ լինելով վերջինիս հրապարակախոսական կրակոտ ելույթներին: Առաջին հանդիպումը տեղի ունեցավ Քյոլնում 1842 թ. վերջին, ուր գտնվում էր «Հռենոսյան թերթի» խմբագրությունը:

Մարքսը, որ խզել էր կապերը «Ազատների» հետ, սառը դիմավորեց Էնգելսին, որպես այդ խմբակի ներկայացուցչի:

Մանչեստրը, ուր նա մնաց քսանմեկ ամիս, վճռական նշանակություն ունեցավ Էնգելսի գաղափարական ձևավորման համար: Նա աստիճանաբար ու վերջնականապես անցավ մատերիալիզմի ու գիտական կոմունիզմի դիրքերը: Անգլիայում նա դարձավ սոցիալիստ: Այստեղ Էնգելսն այցելում էր բանվորական թաղամասերը, ծանոթանում բանվոր դասակարգի վիճակին, լինում բանվորական միտինգներում ու ցույցերում, ուսումնասիրում Անգլիայի տնտեսական ու քաղաքական կյանքը, ծանոթանում հեղափոխական գաղտնի «Արդարների միության» ղեկավարների հետ, հոդվածներ զետեղում չարտիստների ու օուենականների թերթերում:

1844 թ. փետրվարին «Գերմանա-ֆրանսիական տարեգրքում» տպագրվում է նրա *Քաղաքատնտեսության քննադատության ուրվագծեր* խորագիրը կրող աշխատությունը: Դա Էնգելսի տնտեսագիտական առաջին աշխատությունն է, որով նա սկիզբ դրեց բուրժուական քաղաքատնտեսության քննադատությանը պրոլետարիատի դիրքերից: Նա ցույց տվեց կապիտալիստական հասարակության բևեռացումը, նշելով, որ կապիտալիզմի հակասությունների ու ճգնաժամերի խորացումը «պետք է առաջ բերի այնպիսի սոցիալական հեղափոխություն, որպիսին չի եղել երբևէ»: Էնգելսն առաջին անգամ առաջ քաշեց արտադրության հետ գիտության կապի հարցը, նշեց, որ ապագա բանական հասարակության մեջ գիտությունը դառնալու է արտադրաուժ, երբ հիմա այն «ուղղված է աշխատանքի դեմ»:

*Ուրվագծերի* մեջ Էնգելսը տվել է դիալեկտիկական վերլուծման հիանալի օրինակ, «...սոցիալիզմի տեսակետից քննարկել էր արդի տնտեսակարգի հիմնական երևույթները, իբրև մասնավոր սեփականության տիրապետության անհրաժեշտ հետևանքներ» (Լենին, Երկեր, հ. 2, էջ 12):

*Ուրվագծերը* արժանացան Մարքսի բարձր գնահատմանը: Նա բնութագրեց դա որպես հանճարեղ ուրվագծեր տնտեսական հասկացությունների քննադատության մասին (տե՛ս *Քաղաքատնտեսության քննադատության շուրջը* գրքի առաջաբանը), որում արդեն ձևակերպված էին գիտական սոցիալիզմի մի քանի ընդհանուր սկզբունքները: Մարքսը քանիցս հիշատակել է այդ մասին *Կապիտալի* առաջին հատորում:

Ավելին. *Ուրվագծերն* ու շփումը Էնգելսի հետ առիթ դարձան, որ Մարքսը վճռեց զբաղվել տնտեսագիտությամբ, որի բնագավառում նրանք հեղաշրջում կատարեցին: Սկզբնական շրջանում,— ասում է Ֆ. Մերինգը,— տնտեսագիտության ասպարեզում «Էնգելսը նա էր, ով տալիս էր, իսկ Մարքսը նա, ով ընկալում էր»: Հետագայում էլ Մարքսը հաճախ է դիմել իր զինակցի օգնությանն ու խորհրդին:

1844 թ. օգոստոսի վերջին Գերմանիա վերադառնալիս Էնգելսը գալիս է Փարիզ, հանդիպելու Մարքսին, որի հետ աշխույժ նամակագրության մեջ էր *Ուրվագծերը* հրապարակելուց հետո: Հանդիպումների ժամանակ նրանք պարզում են իրենց տեսական ու քաղաքական հայացքների նույնությունը, որը դառնում է նրանց բարեկամության անսասան հիմքը:



Այդ ժամանակ է գրվել Մարքսի ու Էնգելսի առաջին համատեղ *Սուրբ ընտանիք կամ քննադատական քննադատության քննադատությունը: Ընդդեմ Բրունո Բաուերի և կոմպանիայի* աշխատությունը, որի միջոցով նրանք իրենց հաշիվներն են մաքրել երիտհեգելականների սուբյեկտիվ փիլիսոփայության հետ, ընդհուպ մոտեցել պատմության մատերիալիստական ըմբռնման հիմնական գաղափարին՝ արտադրաեղանակի վճռական նշանակությանը հասարակական զարգացման գործում, բնորոշել պրոլետարիատի պատմական միսիան: Թեկուզ Էնգելսին պատկանող մասը ծավալով փոքր է այդ աշխատության մեջ, բայց անկասկած է, որ նրանում շարադրված են երկուսի հայացքները:

Վերադառնալով Բարմեն, Էնգելսն ի մի է բերում Անգլիայում ժողոված իր նյութերը և 1845 թ. մայիսին լույս ընծայում *Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում* իր հռչակավոր աշխատությունը, գրված հափշտակիչ ոճով, սեփական դիտումների ու արժանահավատ աղբյուրների հիման վրա: Նա ցույց է տվել, որ պրոլետարիատն ու բուրժուազիան կապիտալիստական հասարակության երկու հիմնական դասակարգերն են հակոտնյա շահերով, երկու տարբեր ժողովուրդներ մեկ ազգի մեջ՝ տարբեր գաղափարներով ու պատկերացումներով, տարբեր բարքերով ու բարոյական սկզբունքներով: Էնգելսը եզրակացրել է, որ այն, ինչ տեղի է ունենում Անգլիայում, տեղի ունի նաև կապիտալիզմի մյուս երկրներում, այդ թվում և Գերմանիայում:

Վ. Ի. Լենինն այսպես է բնութագրել այդ աշխատության նշանակությունն ու հիմնական մտքերը. «*Առաջինն* Էնգելսն էր, որ ասաց, թե պրոլետարիատը տառապող դասակարգ *չէ միայն*, թե հենց այն տնտեսական խայտառակ դրությունը, որի մեջ գտնվում է պրոլետարիատը, նրան անզսպելի թափով առաջ է մղում և հարկադրում է մարտնչելու իր վերջնական ազատագրության համար: Իսկ մարտնչող պրոլետարիատն *ինքը կօգնի իրեն:* Բանվոր դասակարգի քաղաքական շարժումը բանվորներին անխուսափելիորեն կբերի այն գիտակցության, թե նրանց համար սոցիալիզմից դուրս ելք չկա: Մյուս կողմից՝ սոցիալիզմը միայն այն ժամանակ ուժ կլինի, երբ կդառնա բանվոր *դասակարգի քաղաքական* պայքարի նպատակ» (Երկեր, հ. 2, էջ 10): Իր ժամանակի համար սրանք նոր մտքեր էին և որոշիչ նշանակություն ունեցան: Էնգելսը խորապես համոզված էր բանվոր դասակարգի ուժի ու հեղափոխական կարողության նկատմամբ, գտնում էր, որ բանվոր դասակարգն արդեն կարող է ինքնուրույն շարժում ստեղծել և կոչ էր անում Անգլիայի բանվորությանը շարունակելու իր առաջխաղացումը, որի յուրաքանչյուր քայլը կորած չի լինի համայն մարդկության գործի համար:

1845 թ. ապրիլին Էնգելսը գալիս է Բրյուսել, ուր գտնվում էր Փարիզից արտաքսված Մարքսը: Նրանք հանդիպում են ամեն օր, միասին աշխատում տեսական պրոբլեմների վրա: Այդ նույն տարվա սեպտեմբերին նրանք ձեռնարկում են *Գերմանական գաղափարախոսություն* համատեղ աշխատության շարադրումը ու ավարտում այն հաջորդ տարվա գարնանը, որում առաջին անգամ տրված է գիտական կոմունիզմի տեսության փիլիսոփայական հիմնավորումը:

Մարքսի ու Էնգելսի գործունեությունը չի սահմանափակվել պրոլետարիատի գիտական աշխարհայացքի ստեղծմամբ: Նրանք ստեղծել են պրոլետարիատի հեղափոխական կուսակցությունն ու գործնականորեն ղեկավարել այն: Նրանց հաջողվեց արմատապես վերակառուցել 1846 թ. գոյություն ունեցող գերմանական բանվորների «Արդարների միությունը» և դրա հիման վրա ստեղծելու «Կոմունիստների միությունը»:

1847 թ. նոյեմբեր-դեկտեմբերին Մարքսն ու Էնգելսը գրեցին ստեղծված կուսակցության ծրագիրը՝ հռչակավոր *Կոմունիստական կուսակցության մանիֆեստը*, որը լույս տեսավ 1848 թ. փետրվարին Լոնդոնում: *Մանիֆեստը* շուտով հրատարակվեց եվրոպական մի շարք լեզուներով, իսկ 1869 թ. արտասահմանում նաև ռուսերեն:

Մարքսիզմի այդ դասական երկը հայերեն հոդվածաշարով առաջին անգամ հրապարակ եկավ 1894, իսկ առանձին գրքով՝ 1904 թվականին:

*Մանիֆեստը* համաշխարհային պրոլետարիատին տվեց հեղափոխական գործողությունների գիտականորեն հիմնավորված ծրագիր:

Երբ 1848 թ. փետրվարին բռնկվեց հեղափոխությունը Ֆրանսիայում, որ ցնցեց Եվրոպան՝ Մարքսն ու Էնգելսը Բրյուսելից մեկնեցին Փարիզ, ուր նրանք ամրապնդում էին կոմունիստների միությունը և օգնում նրա մասնակից գերմանացիներին տեղափոխվելու հայրենիք, զինելով նրանց «Կոմունիստական կուսակցության պահանջները Գերմանիայում» ծրագրով: Մարտին սկսվեց հեղափոխությունը նաև Գերմանիայում: Պարզելով 1848 թ. հեղափոխությունների բուրժուական բնույթը, Մարքսն ու Էնգելսը գտնում էին, որ հեղափոխության հաջող ընթացքը կարող է հնարավոր դարձնել սոցիալիստական վերափոխումներ: Հեղափոխական պայքարին անմի-

ջականորեն մասնակցելու համար նրանք ապրիլի 11-ին վերադարձան Քյոլն և 1848 թ. հունիսի 1-ին սկսեցին «Նոր հռենոսյան թերթի» հրատարակումը, հայտարարելով այն «դեմոկրատիայի օրգան», որի գլխավոր խմբագիրն էր Մարքսը:

Էնգելսն ամենաեռանդուն մասնակցություն ունեցավ թերթի հրատարակությանը: Հրապարակեց բազմաթիվ հոդվածներ ազգային հարցի, հունիսյան ապստամբության մասին Փարիզում, Մարքսի հետ միասին պայքարեց ձախերի ու աջ օպորտունիստների դեմ: 1849 թ. սկզբից Մարքսն ու Էնգելսը դուրս եկան դեմոկրատական կուսակցության շարքերից, կոչ արեցին գերմանական պրոլետարիատին ստեղծել իր ինքնուրույն հեղափոխական կուսակցությունը, մտածում էին բանվորական միությունների համագերմանական կոնգրես հրավիրելու մասին: Սակայն ռեակցիայի հաղթանակը արգելակեց այդ: Պրուսական իշխանությունները փակեցին «Նոր հռենոսյան թերթը». Նրա վերջին համարը լույս տեսավ 1849 թ. մայիսի 19-ին, տպագրված կարմիր ներկով:

Մարքսը արտաքսվեց երկրից և ի վերջո 1849 թ. օգոստոսին ապաստան գտավ Լոնդոնում: Հոկտեմբերին Անգլիա գնաց նաև Էնգելսը, խուսափելով ձերբակալումից, որին, ինչպես գրել էր Մարքսը, պրուսակները երկու անգամ կգնդակահարեին բարիկադային պայքարին մասնակցելու համար: «Հենց Մարքսի ու Էնգելսի գործունեության մեջ 1848—1849 թվականների մասսայական հեղափոխական պայքարին նրանց մասնակցելու ժամանակաշրջանն աչքի է ընկնում իբրև կենտրոնական կետ»,— գրել է Լենինը (Երկեր, հ. 13, էջ 30): 1848—1849 թթ. հեղափոխությունը ցույց տվեց, որ Մարքսի ու Էնգելսի ստեղծած գիտական կոմունիզմը միակ ուսմունքն է, որը կարող է ճշտորեն որոշել տարբեր դասակարգերի ու կուսակցությունների դիրքը, նրանց պայքարի օրինաչափությունները, կանխատեսել դրա հետևանքները: Ժողովրդական մասսաների հեղափոխական պայքարի փորձը մեծ նշանակություն ունեցավ պրոլետարիատի մարտական տեսության ու պայքարի տակտիկայի մշակման գործում.

Մարքսն ու Էնգելսն Անգլիայում ապրեցին մինչև իրենց կյանքի վերջը: Նրանց վտարանդիական կյանքը կապված էր նյութական մեծ դժվարությունների հետ, հատկապես Մարքսի բազմանդամ ընտանիքի համար: Էնգելսը հարկադրված եղավ տեղափոխվել Մանչեստր, գրասենյակային ծառայության մտնել այն գործարանում, որի տիրակիցն էր հայրը, որպեսզի կարողանա նյութապես օգնել Մարքսին և հնարավորություն տալ նրան ապրելու և աշխատելու,

Շուրջ քսան տարի Մարքսի ու Էնգելսի փոխադարձ կապի գլխավոր միջոցը նամակագրությունն էր, որոնցում լուսաբանվում էին բազմազան հարցեր, կապված բանվորական շարժման ու քաղաքական կյանքի, փիլիսոփայության ու քաղաքատնտեսության, դիվանագիտության ու ռազմական գործի և այլ հարցերի հետ:

Անգլիայում նրանք մի շարք աշխատություններ հրապարակեցին նվիրված հեղափոխության դասերին, ղեկավարում էին կուսակցական կազմակերպությունները, ստեղծեցին ու ղեկավարեցին բանվորների միջազգային ընկերությունը (I ինտերնացիոնալը), որի գլխավոր խորհրդի անդամն էր Էնգելսը 1870 թ. հոկտեմբերից:

Անգլիայում է ստեղծվել Մարքսի ստեղծագործությունների գլուխ-գործոցը՝ *Կապիտալը*, որի պրոբլեմների մշակմանն ամենամոտիկ մասնակցություն է ունեցել Էնգելսը նամակագրության միջոցով ու անձնական հանդիպումների ժամանակ, նախապես կարդացել նրա մամուլները, արել էական դիտողություններ: Ուղարկելով առաջին հատորի վերջին մամուլի սրբագրությունը, գիշերվա ժամը 2-ին Մարքսը գրել է Էնգելսին. *«Այսպես ուրեմն այս հատորը պատրաստ է: Միայն քեզ եմ պարտական, որ այդ հնարավոր եղավ: Առանց քո անձնազոհության ես ոչ մի կերպ չէի կարող կատարել երեք հատորի վրա դրված հսկայական աշխատանքը: Գրկում եմ քեզ երախտագիտությամբ լի»* (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, *Նամակներ «Կապիտալի»* մասին, Ե. 1954, էջ 150): Հանրահայտ է, որ առանց Էնգելսի օգնության, Մարքսը չէր ավարտի *Կապիտալը:*

1870 թ. սեպտեմբերին Էնգելսը վերադառնում է Լոնդոն և ամբողջովին նվիրվում գիտական ու հեղափոխական գործունեության: Նա ակտիվ գործում էր բանվորների միջազգային ընկերության գլխավոր խորհրդում:

Մեծ էր Էնգելսի դերը Փարիզի կոմունայի ժամանակ: Իր մի շարք ելույթներում նա տեղեկացնում էր Գլխավոր խորհրդին Փարիզի իրադարձությունների մասին: Նա առաջինն է ցույց տվել, որ կոմունան բանվոր դասակարգի մասսայական շարժումն է, քննադատել է նաև կոմունայի սխալները, գերմաներենի թարգմանել Մարքսի *Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում* աշխատությունը, օգնելով մերկացնելու բուրժուական մամուլի զրպարտանքը կոմունայի հասցեին:

*Կապիտալը* նվաճում էր մարդկանց սրտերն ու մտքերը, որի դեմ սարքված լռության դավադրությունն Էնգելսը ոչ միայն խափանեց, այլև հարկադրեց նրանց բանավիճել: Էնգելսը փայլուն կերպով կատարեց իր առաջ ծառացած երկմիասնական խնդիրը, այն է՝ հակահարված տալ մարքսիզմի բազմապիսի թշնամիներին ու կեղծարարներին և մշակել մի շարք պրոբլեմներ, որոնք *Կապիտալում* քննարկված էին ընդհանուր գծերով: Դրանց է նվիրել մի շարք աշխատություններ, որոնց թվում առանձին տեղ է գրավում Բեռլինի համալսարանի պրիվատ-դոցենտ Դյուրինգի հայացքների քննադատությունը: Անհրաժեշտ էր մերկացնել նրա հավակնոտ ու վնասակար հայացքները: Դրան ձեռնարկեց Էնգելսը հոդվածաշար հրապարակելով գերմանական սոցիալ-դեմոկրատիայի «Ֆորվերտս» թերթում: Այդ հոդվածաշարը հետո վերածվեց մի լուրջ երկի: Դա, իրավի, մարքսիզմի մի հանրագիտարան է, որը սկզբից մինչև վերջ արտահայտում է Էնգելսի ու Մարքսի տեսակետները: *Անտի-Դյուրինգը* շուտով թարգմանվեց բազմաթիվ լեզուներով և դարձավ գիտակից ամեն մի բանվորի սեղանի գիրքը, խոշոր նշանակություն ունեցավ մարքսիզմի պրոպագանդման գործում:

1883 թ. փետրվարի 14-ին վախճանվեց Մարքսը: Միջազգային բանվորական շարժման ղեկավարության ամբողջ գործը ծանրացավ Էնգելսի ուսերին: Եվ նա հաջողությամբ կատարեց այդ 12 տարի շարունակ:

Եթե Մարքսի կենդանության ժամանակ Էնգելսը իր բնորոշումով երկրորդ ջութակ է նվագել, ապա այժմ նա պետք է առաջին ջութակը լիներ: Նրան էին դիմում բոլոր երկրների սոցիալիստները: Նա հետևում էր սոցիալիստական կուսակցությունների աշխատանքին, օգնում նրանց ընթացիկ գործերում: Իր բազմաթիվ հոդվածներում ու նամակներում նա պայքարում էր օպորտունիզմի ու ռեֆորմիստական տենդենցների դեմ, մերկացնում մարքսիզմի թշնամիներին, պահպանում մարքսիզմի անաղարտությունը ու զարգացնում այն:

Էնգելսը մեծ նշանակություն էր տալիս Մարքսի ստեղծագործություններին բանվորական շարժման զարգացման գործում և ձեռնարկեց բազմաթիվ աշխատությունների վերահրատարակումն ու հրատարակումը, օժտելով նրանց առաջաբաններով:

1883 թ. վերջին նա վերահրատարակեց Մարքսի «Կապիտալի» առաջին հատորը, փոխանցելով ֆրանսիական հրատարակության մեջ կատարված փոփոխություններն ու Մարքսի անձնական օրինակում եղած նշումները: 1886 թ. լույս ընծայեց *Կապիտալի* առաջին հատորի անգլերեն հրատարակությունը, որ գլուխ չեկավ Մարքսի կենդանության օրով, հակառակ Մարքսի մեծ ցանկության: 1890 թ. լույս ընծայեց *Կապիտալի* առաջին հատորի չորրորդ հրատարակությունը, մեծ աշխատանք կատարելով տեքստի և ծանոթագրությունների վերջնական խմբագրման նպատակով:

Բայց շատ ավելի մեծ ջանքեր պահանջեցին *Կապիտալի* երկրորդ և առանձնապես երրորդ հատորի հրատարակությունը: Մարքսը թողել էր նրանց ձեռագիր և անավարտ վիճակում: Այդ դժվարին ու ծանր գործը կարող էր կատարել միայն Էնգելսը, որը, իր խոր ու բազմակողմանի գիտելիքներից բացի, շարունակ իրազեկ է եղել Մարքսի աշխատանքի ընթացքին և նամակագրությամբ ու անձնական հանդիպումների ժամանակ Մարքսի հետ քննարկել է *Կապիտալին* վերաբերող բազմաթիվ պրոբլեմներ, կատարել կարևոր լրացումներ:

*Կապիտալի* երկրորդ հատորը լույս տեսավ 1885 թ., իսկ երրորդը՝ 1894 թ. վերջին, Էնգելսի մահից վեց ամիս առաջ: Հեշտ բան չէր բազմաքանակ ձեռագրերից ու զանազան տարբերակներից, առանձին դեպքերում միայն վերնագիր պարունակող նյութերից, գրված ոչ միշտ դյուրընթեռնելի ձեռագրով, կազմել *Կապիտալի* հատորները: Բայց Էնգելսը կատարեց այդ մեծ սիրով և դա Մարքսի հիշատակի հանդեպ նրա ակնածության դրսևորումն էր:

Էնգելսի մասին գրված հոդվածում Լենինը բերում է ավստրիացի սոցիալ-դեմոկրատ Վ. Ադլերի ասույթն այն մասին, թե *Կապիտալի* երկրորդ և երրորդ հատորների հրատարակությամբ Էնգելսը իր հանճարեղ ընկերոջը հոյակապ արձան է կանգնեցրել, որի վրա անջնջելի գծերով ակամայից քանդակել է և իր սեփական անունը: «Իսկապես *Կապիտալի* այս երկու հատորը երկուսի— Մարքսի ու Էնգելսի— աշխատությունն են»,— արդարև գրել է Լենինը:

Մարքսի աշխատությունների հրատարակման հետ զուգընթաց Էնգելսը կարողացավ ժամանակ գտնել և տեսական իր հետազոտությունների համար: 1884 թ. նա հրատարակեց *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը*՝ ժամանակակից սոցիալիզմի հիմնական երկերից մեկը, 1888 թ.՝ *Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը*, որի գլխավոր նպատակը փիլիսոփայական մատերիալիզմի պաշտպանությունն էր և որում շարադրել է դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի հիմնական դրույթները, 1894 թ.՝ *Գյուղացիական հարցը Ֆրանսիայում ու Գերմանիայում*, որ ծրագրային նշանակություն ունի:

Էնգելսը մեծ աշխատանք կատարեց միջազգային բանվորական շարժման միավորման համար, որի հետևանքը եղավ Երկրորդ ինտերնացիոնալի կազմակերպումը 1889 թ.: Նա շարունակ պայքարել է օպորտունիզմի դեմ, մերկացրել ռեֆորմիստական ճիգերը և գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը օպորտունիստական վարակից զերծ պահելու համար, որ պարզորոշ էր Էրֆուրտի ծրագրի նախագծում, 1891 թ. հրապարակել Մարքսի *Գոթայի ծրագրի քննադատությունը:* 1895 թ. մարտին Էնգելսը ընդարձակ ներածություն գրեց Մարքսի *Դասակարգային պայքարը Ֆրանսիայում 1848-ից 1850 թթ.* աշխատության նոր հրատարակության համար. Այս նրա վերջին մեծ հոդվածն էր:

Մարքսի *Կապիտալի* և մյուս երկերի հրատա-

րակությունն ու ընթացիկ աշխատանքը հնարավորություն չտվին Էնգելսին իրագնել հետազոտական աշխատանքի իր ընդարձակ ծրագիրը: Այսպես անավարտ մնաց նաև նրա *Բնության դիալեկտիկան*, որի վրա իր աշխատանքը ընդհատեց նա *Անտի-Դյուրինգի* հրատարակության կապակցությամբ և այդ վիճակում առաջին անգամ հրատարակվեց Սովետական Միությունում 1925 թ. գերմաներեն և ռուսերեն լեզուներով:

«Չի կարելի մարքսիզմը հասկանալ և չի կարելի այն ամբողջականորեն շարադրել, հաշվի չառնելով Էնգելսի *բոլոր* երկերը»,— գրել է Լենինը (Երկեր, հ. 21, էջ 103):

Էնգելսը, ինչպես և Մարքսը, գիտեին ռուսերեն: Ի դեպ, Էնգելսը իսկական բազմալեզու էր: Նրա մտերիմները կատակով ասում էին, թե նա կակազում է 20 լեզվով: Նա շարունակում էր լեզուներ ուսումնասիրել մինչև իր կյանքի վերջը: 1892 թ. նա սովորում էր լեհերեն, 1894 թ. բուլղարերեն ու չեխերեն և սկսել էր նաև նորվեգերեն սովորել:

Էնգելսը, ինչպես և Մարքսը, ուշադիր կերպով հետևում էր Ռուսաստանում տեղի ունեցող իրադարձություններին: Նրանք ուսումնասիրել էին Ռուսաստանի էկոնոմիկան, կուլտուրան, պատմությունը, աշխատավորների դրությունը:

1882 թ. Պլեխանովը թարգմանում է *Կոմունիստական կուսակցության Մանիֆեստը*, որի հրատարակության առթիվ Լավրովի խնդրանքով Մարքսի ու Էնգելսի գրած առաջաբանում ասված է, թե «Ռուսաստանը իրենից ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 12, стр. 305): Նրանք նամակագրություն են ունեցել ռուս հեղափոխական գործիչների հետ: Այդ կապերը շարունակվել են Մարքսի մահից հետո էլ: Էնգելսը կապված է եղել Պլեխանովի, Լավրովի, Լոպատինի, Զասուլիչի, Ստեպնյակ-Կրավչինսկու և ուրիշների հետ, հանդիպել է նրանց հետ, օգնել խորհուրդներով: Տարիների ընթացքում նամակագրություն է ունեցել *Կապիտալի* առաջին հատորի թարգմանիչ Ն. Դանիելսոնի հետ: Նա բացառիկ հետաքրքրություն է ցուցաբերել ռուս ժողովրդի ապագայի նկատմամբ: Նա նշել է, որ Ռուսաստանում միշտ «եղել է և՛ քննադատական միտք և՛ ինքնազոհ որոնումներ զուտ տեսական բնագավառում, որոնք արժանի են այն ժողովրդին, որը տվել է Դոբրոլյուբով ու Չերնիշևսկի»: Անկեղծ ուրախությամբ է դիմավորել Էնգելսը «Աշխատանքի ազատագրում» խմբի ստեղծումը: Գրել է խմբի հանդեսի համար «Ռուսական ցարիզմի արտաքին քաղաքականությունը» հոդվածը: 1894 թ. Էնգելսը հեռատեսորեն գրել էր. «...ռուսական հեղափոխությունը նոր խթան կտա նաև Արևմուտքի բանվորական շարժմանը, նրա համար կստեղծի պայքարի նոր լավագույն պայմաններ և դրանով իսկ կարագացնի ժամանակակից արդյունաբերական պրոլետարիատի հաղթանակը...» (К. Маркс и Ф, Энгельс, соч. т. 22, стр. 453):

Հյուրընկալ ու բարի էր Էնգելսը, միշտ պատրաստ օգնելու իր ընկերներին: 1895 թ. սկզբին, երբ նա տառապում էր հիվանդությամբ, Լոնդոնում բժշկական խորհրդատվություն կազմակերպեց Վերա Զասուլիչի համար և օգնեց նրան դրամով:

* * *

1895 թ. օգոստոսի 5-ին երեկոյան 10—30 րոպեին վախճանվեց Ֆրիդրիխ Էնգելսը: Միջազգային բանվորական շարժումը կորցրեց իր սիրելի ու ականավոր առաջնորդին: Նրա դագաղը ծածկվեց բազմաթիվ երկրներից, ինչպես և Ռուսաստանից ու Հայաստանից ուղարկված ծաղիկներով ու պսակներով:

Լոնդոնում լույս տեսնող ռուս քաղաքական վտարանդիների «Летучие листки» փոքրիկ թերթում օգոստոսի 15-ին տպագրված մահախոսականում ասված էր. «Մենք ռուսներս չենք կարող շնորհակալությամբ չհիշել նրա ջերմ համակրանքը ռուսական հեղափոխության և հետաքրքրությունը ռուսական ամեն բանի նկատմամբ: Ավարտվում էր մահախոսականն այսպես. «...մենք չենք կասկածում, որ ոչ մի տեղ բացի Գերմանիայից, Ֆրիդրիխ Էնգելսի մահվան լուրը այնպիսի խոր տպավորություն չի գործի, ինչպես բուն Ռուսաստանում»:

Եվ իրոք այդպես էր: Երիտասարդ Լենինն այդ ժամանակ հրապարակեց իր հիանալի «Ֆրիդրիխ Էնգելս» հոդվածը, արժանին հատուցելով նրան:

Ֆ. Էնգելսի երկերը վաղուց ի վեր թարգմանված են հայերեն և աշխատավոր զանգվածների սեղանի զարդն են:



# Բովանդակություն

# Содержание




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 03275 Պատվեր 1865 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12700 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 17/XI 1970 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյանի փող. № 28:*




Գինը 25 կ.



Օգնություն
ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ
ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

*ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ*

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

## ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

Մ. ԲՈՐ

Երբ երկրում հաջողությամբ կենսագործվում է տնտեսական ռեֆորմը, տնտեսական ղեկավարման գործում ուշադրության առանցքն են դառնում սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացումը, նյութական, աշխատանքային ու ֆինանսական միջոցների, բնական հարստությունների նպատակահարմար օգտագործումը, արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արմատավորումը: Կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում նշված է. «Տնտեսավարման նոր սիստեմն ավելի բարենպաստ պայմաններ է ստեղծում երկրի վիթխարի արտադրողական ուժերի ռացիոնալ օգտագործման, ժողովրդի բարեկեցության արագ բարձրացման, սոցիալիստական կարգերի առավելությունների բացահայտման համար»:

Ռեֆորմի հիմնական նպատակը, կարդում ենք կուսակցական որոշումներում, տնտեսավարման այնպիսի սիստեմի ստեղծումն է, որը նպաստեր ՍՍՀՄ ինդուստրիալ-ագրարային էկոնոմիկայի արագ ու արդյունավետ զարգացմանը՝ գիտատեխնիկական առավել խորացող հեղափոխության պայմաններում: Այս առիթով հարկ է ընդգծել տնտեսական ռեֆորմի կարևորագույն առանձնահատկությունը՝ նրա կոմպլեքսայնությունը, տնտեսության ղեկավարման բոլոր կողմերի ընդգրկումը: Ելնելով սոցիալիստական էկոնոմիկայի գիտական կառավարման՝ Լենինի հիմնավորած սկզբունքներից ու մեթոդներից, ռեֆորմը դրանք զարգացնում ու կատարելագործում է նոր պայմաններում, լուրջ փոփոխություններ առաջացնելով արտադրության կառավարման գործում:

Սովորաբար կառավարումը բնորոշում են որպես նպատակային ներազդում կոլեկտիվներում միավորված անհատների գործունեության վրա: Գործնականում դա նշանակում է գործողությունների որոշակի, փոխկապված

հաջորդականության կենսագործում: Այն ընդգրկում է որոշման մշակումն ու ընդունումը, դրա կատարման կազմակերպումը, հաշվառումը, վերահսկողությունը և որոշման կատարման ընթացքի կարգավորումը: Մի որոշման կատարմանը հաջորդում է նորի մշակումը, դրա իրականացումը և այլն:

Կառավարչական ցիկլի այդ փուլերը կամ աստիճանները փոխկապված են: Կառավարման ոլորտում որոշումներն ընդունվում են արտադրանքի արտադրության կամ աշխատանքների կատարման հետ կապված պրոցեսների բոլոր փուլերում: Կազմակերպման ֆունկցիաները ևս կենսագործվում են կառավարման բոլոր աստիճաններում: Հաշվառում կատարվում է սկզբնական փուլերում (նախկինում ընդունված որոշումների հաշվառում), միջակա (վերահսկողություն ու կարգավորում) և ավարտման փուլում (վերջնական արդյունքի հաշվառում): Այսպիսով, կառավարչական ցիկլը այն սիստեմի միասնական ու անբողջական էությունն է, որի ընթացքում սոսկ պայմանականորեն, գերազանցապես մեթոդական նպատակներով, կարող են առանձնանալ հետևողականորեն տրամաբանական առանձին աստիճանները:

Ի՞նչ նոր բան է մտցնում տնտեսական ռեֆորմը տնտեսության կառավարման ոլորտում, որո՞նք են այստեղ հերթական խնդիրները: Այդ հարցը քննարկենք ըստ կառավարման ցիկլի առանձին փուլերի:

Տնտեսական ռեֆորմը բազմակողմանի ազդեցություն է ունենում ամենից առաջ կառավարման որոշման նախապատրաստման և ընդունման պրոցեսում: Այդպիսի որոշում մշակել, նշանակում է՝ նպատակ դնել կառավարվող օբյեկտի (ձեռնարկության, ճյուղի, ողջ երկրի տնտեսության) առաջ, նշել անելիքների ընդհանուր ուղղությունն այդ նպատակին հասնելու համար, նախատեսել այդ որոշումների կատարման անհրաժեշտ ռեսուրսներն ու պատասխանատու անձինք (կամ կազմակերպությունները):

Կառավարման որոշումները խիստ բազմազան են: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1968—1970 թվականների հնգամյա պլանի առթիվ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվները, ՍՍՀՄ Գերագույն սովետի 1970 թվականի հուլիսին հաստատված «ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների աշխատանքային օրենսդրության հիմունքները», տնտեսական քաղաքականության զանազան հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի համատեղ որոշումները, ձեռնարկության գործարկման մասին մինիստրի հրամանը, գործարանի դիրեկտորի հրամանը, գործարկոմի որոշումը



և այլն՝ այդ բոլորը կառավարման որոշումներ են, թեև դրանք, բնականաբար, տարբեր են իրենց բնույթով:

Առանց կենտրոնացված պլանավորման հնարավոր չէ հաջողությամբ զարգացնել սոցիալիստական արտադրությունը, հասարակական ողջ կյանքը: Այդպիսի պլանավորումը՝ կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունն է, նոր հասարակարգի տարբերիչ գիծը: Կենտրոնացված պլանավորումը, ինչպես ցույց է տալիս ՍՍՀՄ և սոցիալիզմի մյուս երկրների փորձը, էկոնոմիկայի զարգացման բարձր ու կայուն տեմպերի, աշխատավորության կենսամակարդակի բարձրացումն ապահովող կարևորագույն պայմանն է:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ռեֆորմի ընթացքում կենսագործեցին ժողովրդական տնտեսության պլանավորումը կատարելագործող մի շարք միջոցառումներ: Բարձրանում է հեռանկարային պլանների դերը: Այժմ ավելի մեծ ուշադրություն է նվիրվում պլանների ողջ սիստեմի գիտական հիմնավորմանը, պլանային մարմինների աշխատանքի հստակ կազմակերպմանը: Ժողովրդատնտեսական պլանավորման հիմնական ձևը, ինչպես հայտնի է, միջժամկետային պլաններն են՝ հնգամյակները, կարևորագույն առաջադրանքների տարեկան բաժանումով, ինչպես ողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ յուրաքանչյուր ձեռնարկության համար: Սկզբունքային փոփոխություններ են մտցված արդյունաբերության պլանի ցուցանիշների սիստեմում (իսկ 1971 թվականից նաև կապիտալ շինարարության ցուցանիշների սիստեմում):

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել էկոնոմիկայի ճյուղերի զարգացման պլանների գիտական մակարդակի բարձրացման և տեխնիկա-տնտեսական հիմնավորվածության բարելավման ասպարեզում: 1966—1970 թվականների գիտական հետազոտությունների պետական պլաններին համապատասխան աշխատանքներ են տարվում տնտեսական ու գիտատեխնիկական կանխատեսումների, այդ թվում՝ վառելիքա-էներգետիկ հաշվեկշռի, միասնական տրանսպորտային ցանցի զարգացման, գյուղատնտեսության քիմիացման և այլ պրոբլեմների ուղղությամբ: Ընթացիկ հնգամյա պլանում նախատեսված է հետազոտել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ընդգրկող մոտ 250 գիտատեխնիկական պրոբլեմ: Մշակվում է ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների տնտեսական շրջանների արտադրաուժերի տեղադրման գլխավոր սխեմա մինչև 1980 թվականն ընկնող ժամանակաշրջանի համար, ուր ավելի հանգամանորեն նշված են 1971—1975 թվականների ցուցանիշները:

Սակայն պլանավորման գործում դեռևս կան մի շարք թերություններ, որոնք թույլ չեն տալիս լիովին իրացնելու սոցիալիստական արտադրության վիթխարի հնարավորությունները: Այսպես, բավարար չափով հաշվեկշռված ու կայուն չեն տարեկան պլանները: Պլանավորումը բարելավելու և կատարելագործելու անհրաժեշտության վրա ուշադրություն հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևն իր զեկուցման մեջ, Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան հարյուրամյակին նվիրված հանդիսավոր նիստում. «Այժմ չափազանց կարևոր նշանակություն է ստանում պլանավորման ճիշտ դրվածքը... Էկոնոմիկայի բնագավառում հանդիպող շատ բարդությունների արմատները պլանավորման զանազան թերությունների մեջ են, պլանների անկատարելության, ինչպես նաև դրանց ոչ բավականաչափ հստակ կատարման մեջ: Ուստի կարևորագույն խնդիրներից մեկն է մշտապես կատարելագործել պլանավորման մեթոդները, մեծացնել թե՛ ընթացիկ, և թե՛ հեռանկարային պլանների գիտատեխնիկական և տնտեսական հիմնավորվածությունը. (Բրեժնև **Լենինի գործն ապրում է և հաղթանակում**, «Հայաստան» հրատ., 1970, էջ 34):

Ինչպես վերը նշել ենք, կառավարման որոշման (օրինակ՝ հնգամյա կամ տարեկան պլանի) մշակումն ու ընդունումը կարևոր, բայց կառավարման սկզբնական աստիճանն են միայն: Այնուհետև պետք է կազմակերպել ընդունված որոշման կատարումը: Իսկ դրա համար ինչպիսի՞ աշխատանք պետք է կատարել: Ամենից առաջ՝ ընտրել արտադրության տիպը և կառուցվածքը, որոշել տեխնիկայի, տեխնոլոգիական պրոցեսների բնույթը, ստեղծել արտադրական կոլեկտիվ և նրա գործունեությունը կառավարող ապարատ, առանձնացնել անհրաժեշտ միջոցներ, կազմակերպել աշխատանքը և այլն:

Կառավարման տեսությունը սովորեցնում է, որ որոշման կատարման կազմակերպումը, որպես կառավարման ցիկլի մի փուլ, աստիճան, կապված է կառավարման սուբյեկտի (ո՛վ է կառավարում) և օբյեկտի (ի՛նչն է կառավարվում) ձևավորման հետ: Այդպիսիք են կառավարման ամեն մի սիստեմի պարտադիր բաղադրամասերը՝ ստորինից մինչև բարձրագույն աստիճանը:

Սոցիալիստական էկոնոմիկայի կառավարումը մի բարդ կազմակերպական սիստեմ է, որը հետևողականորեն կապակցում է մի շարք աստիճաններ: Այդ սիստեմն ընդգրկում է ողջ ժողովրդական տնտեսության կառավարումը



մեկ միասնական կենտրոնից, բարդ ճյուղերի և տերիտորիալ արտադրակոմպլեքսների կառավարումը, սկզբնական տնտեսական միավորների՝ ձեռնարկությունների, կառավարումը: Սոցիալիստական տնտեսավարման կենտրոնական խնդիրներից մեկը կառավարման ռացիոնալ սիստեմի ստեղծումն է: Դրա որոշումից մեծ չափով կախված է հասարակական արտադրության արդյունավետությունը:

Տնտեսական ռեֆորմը կառավարման կազմակերպչական ձևերի լուրջ փոփոխություններ հարուցեց: Արդյունաբերության բնագավառում, ինչպես հայտնի է, վերացվեցին երկրի տնտեսական շրջանների ժողտնտխորհները ու ճյուղային պետական կոմիտեները և կազմակերպվեցին ճյուղային արդյունաբերական մինիստրություններ: Ներկայումս սոցիալիստական արտադրության կառավարման մարմինների սիստեմը կառուցված է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թվական) պլենումի որոշումներին համապատասխան՝ ճյուղային սկզբունքով:

Հաճախ պնդում են, թե իբր ներկայիս ռեֆորմը պայմանավորված է տնտեսության կառավարման գործում կենտրոնացումն ու ապակենտրոնացումը ճիշտ զուգորդելու անհրաժեշտությամբ: Բայց այսպես չէ: Տերիտորիալ և ճյուղային պետական կառավարման մեջ իրականացվում է կառավարման հիմնադիր սկզբունքներից մեկը— դեմոկրատական ցենտրալիզմը: Կառավարման ոլորտում տնտեսական ռեֆորմը ելնում է նոր պայմաններում այս սկզբունքի հետագա զարգացման խնդիրներից:

Հետևաբար խոսքը կենտրոնացման ու դեմոկրատացման առավել կատարյալ զարգացման մասին է և ոչ թե կենտրոնացման և ապակենտրոնացման զուգորդման: Կառավարման մեջ կենտրոնացման և ապակենտրոնացման այս կամ այն զուգորդման մասին կարելի է խոսել միայն այն հասարակության վերաբերյալ, ուր տիրում է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը: Սոցիալիզմի հասարակարգը, որը խարսխվում է արտադրամիջոցների հանրային սոցիալիստական սեփականության վրա, կարող է հաջողությամբ զարգանալ հասարակական օրգանիզմի բոլոր օղակների, մասերի կենտրոնացված կառավարման պայմաններում:

Երբեմն սխալմամբ կառավարման ճյուղային սկզբունքը մեկնաբանում են իբրև կենտրոնացման, իսկ տերիտորիալ կազմակերպմանը՝ կառավարման ապակենտրոնացման սկզբունք: Իրականում թե՛ մեկ, թե՛ մյուս սկզբունքները ներառնում են ինչպես կենտրոնացման, այնպես էլ լայն դեմոկրատիայի տարրեր, ուստի չի

կարելի դրանք նույնացնել կենտրոնացում և ապակենտրոնացում հասկացություններին: Ճյուղային և տերիտորիալ սկզբունքները հարկավոր է քննարկել որպես ավելի ընդհանուր սկզբունքի— դեմոկրատական ցենտրալիզմի կոնկրետացում՝ էկոնոմիկայի պետական կառավարման սիստեմի համեմատ:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը բխում է պլանաչափ զարգացող հասարակական արտադրության բուն էությունից, այն ներհատուկ է միայն ցենտրալիզմին: Լենինը նշել է, որ դեմոկրատական ցենտրալիզմն անհամատեղելի է՝ և բյուրոկրատական ցենտրալիզմին, որն օրգանապես հատուկ է կապիտալիզմին և անարխո-սինդիկալիզմին, որն արտահայտում է ցենտրալիզմի, պրոլետարական կարգապահության, սոցիալիստական շինարարության մեջ կամքի միասնության մանրբուրժուական բացասումը: Մերկացնելով անարխո-սինդիկալիզմը՝ իբրև սոցիալիզմի թշնամու, Լենինն ուսուցանում էր, որ սոցիալիստական էկոնոմիկա ստեղծելու գործում հաջողությունների հասնելու համար խիստ անհրաժեշտ է լիակատար միասնություն, արտադրական պրոցեսի բոլոր մասնակիցների անառարկելի ենթարկում միասնական կամքին: Դրա հետ մեկտեղ նա ընդգծել է, որ սոցիալիստական արտադրության կառավարման բնագավառում միանձնյա ղեկավարությունն արդյունավետ չէ առանց մասսաների ստեղծագործության, նախաձեռնության և ինքնագործունեության: Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի երկու կողմերի՝ կենտրոնացման և սոցիալիստական դեմոկրատիայի միասնությունն ու սերտ փոխկապը Լենինը համարում էր տնտեսական ղեկավարման ալֆան ու օմեգան:

Արտադրության կառավարման գործում ժողովրդական մասսաների վճռական դերը սոցիալիստական շինարարության օբյեկտիվ օրինաչափությունն է: Ռեֆորմի ընթացքում կուսակցությունն ու սովետական պետությունը հետևողականորեն բարձրացնում են աշխատավորների ակտիվությունը տնտեսության կառավարման գործում: Այդ նպատակին են ծառայում, մասնավորապես, սոցիալիստական մրցության զարգացման ու կատարելագործման միջոցառումները, մշտական արտադրական խորհրդակցությունների, աշխատանքի գիտական կազմակերպման խորհուրդների, տնտեսական վերլուծության բյուրոների ու խմբերի, ժողովրդական վերահսկողությանն օժանդակող խմբերի ու պահակակետերի գործունեության ընդլայնումն ու խորացումը:

Ներկայիս մինիստրությունների գործունեությունը ցույց է տալիս, որ կառավարման ճյուղային սկզբունքը հնարավորություն է ընձեռում կենսագործելու միասնական պետական տեխնիկական քաղաքականություն, նպաստում է գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը: Սակայն, հարկ եղավ ստեղծել արտադրության կառավարման ավելի ռացիոնալ կազմակերպական սիստեմներ, մինիստրությունների ապարատի ավելի կատարյալ կառուցվածքներ, որոնք կառավարման գործում դրանց դերի բարձրացման նոր ուղիներ: Մասնավորապես, էկոնոմիկայի կառավարումը բարելավելու նպատակով անհրաժեշտ եղավ ստեղծել խոշոր արտադրական միավորումներ: Համեմատաբար ոչ մեծ արդյունաբերական ձեռնարկությունները (մեր ձեռնարկությունների ընդհանուր թվի մեկ երրորդ մասում բանվորների թիվը հասնում է մինչև հարյուրի) չեն կարող, ինչպես ցույց է տվել պրակտիկան, բավականաչափ արդյունավետ օգտագործել այն ողջ նորը, որ իր հետ բերում է տնտեսական ռեֆորմը արտադրության տեխնիկական կատարելագործման, արտադրանքի իրացման ասպարեզում և այլն:

Վերջին տարիներին մեր երկրում կազմակերպվել են զգալի թվով ֆիրմաներ և արտադրական այլ միավորումներ: Փորձը վկայում է, որ դրանք ի վիճակի են լայն մասշտաբներով ներդնելու գիտատեխնիկական նվաճումները, իրականացնելու արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը և այլն: Դրա շնորհիվ բարձրանում է արտադրության արդյունավետությունը, ավելի արագ է աճում աշխատանքի արտադրողականությունը, իջնում է արտադրանքի ինքնարժեքը:

Էկոնոմիկայի բոլոր ճյուղերում խոշոր արտադրական միավորումների կազմակերպումը ժամանակի պահանջն է: Դա՝ սոցիալիստական արտադրության կառավարման ռացիոնալ, գիտականորեն հիմնավորված սիստեմ ստեղծելու գլխավոր ուղիներից մեկն է:

Ընդունված որոշման կատարումը կազմակերպելու փուլին հաջորդում են ընդունված որոշման կատարման ընթացքի հաշվառման, վերահսկողության և կանոնավորման փուլերը: Հաշվառումը կենսագործվում է նրա երեք հիմնական՝ վիճակագրական, հաշվապահական, օպերատիվ-տեխնիկական ձևերի զուգորդմամբ: Խնդիր է դրվում ապահովել եղած միջոցների, որոշումների կատարման, այդ կապակցությամբ ծագող դժվարությունների վերաբերյալ ինֆորմացիայի ստացումը, մշակումը, համակարգումը և վերլուծությունը: Այժմ, մասնավորապես մեծ պահանջներ են



առաջադրվում վիճակագրական հաշվառմանը: Տեխնիկական ռեֆորմի պայմաններում վիճակագրական մարմինները կոչված են բարձրացնելու տնտեսական վերլուծության մակարդակը, կատարելագործելու հաշվետու տվյալների հավաքման ու մշակման մեթոդը և դրա հիման վրա բարելավելու ղեկավար պլանային ու տնտեսական օրգանների ինֆորմացիան ժողովրդատնտեսական պլանների կատարման ընթացքի մասին: Հաշվառման տվյալների հիման վրա իրականացվում է ցիկլի չորրորդ փուլը՝ կառավարման որոշման կատարման ընթացքի վերահսկողությունն ու կարգավորումը:

Վերահսկողությունն ու կարգավորումն անբաժանելի են. դրանք ներկայացնում են կառավարման երկմիասնական ֆունկցիա: Վերահսկողությունը դիտարկման սիստեմ է, այն բանի ստուգումը, թե կառավարվող ենթասիստեմի գործունեության պրոցեսը որքանո՞վ է համապատասխանում ընդունված կառավարման որոշումներին, նորմաներին, ստանդարտներին, կանոններին: Դրա նպատակն է՝ հայտաբերել կառավարման որոշումների պահանջներից, նրա կազմակերպման հիմքում ընկած սկզբունքներից, արված շեղումները: Կարգավորման խնդիրն է կառավարման օբյեկտը պահել այնպիսի վիճակում, որի առկայությամբ ապահովվի ընդունված ծրագրի կատարումը: Անհրաժեշտ է, օրինակ, հաշվի առնել այնպիսի գործոններ, որոնք կապված են այն բանի հետ, որ աշխատողների արտադրության պայմանների փոխվելուն զուգընթաց ծագում են նոր խնդիրներ, կոլեկտիվին առաջադրվում նոր պահանջներ: Այդ բոլոր, ինչպես կոլեկտիվից կախված, այնպես էլ նրանով չպայմանավորված փոփոխությունները պետք է կարգավորվեն, ճշտվեն՝ ընդունված որոշումը հաջողությամբ կատարելու նպատակով:

Կարգավորման կոնկրետ ձևերը խիստ բազմազան են: Դրանք վարչա-կազմակերպական, նյութական խրախուսման, դաստիարակչական ներգործության ձևեր են՝ աշխատողներին որոշակի պահանջներ ներկայացնելու, նրանց արարքները խրախուսելու կամ դատապարտելու միջոցով: Կարգավորման ենթաֆունկցիայի տարբերիչ գիծն այն է, որ դա այժմ ավելի մեծ չափով է հենվում տարբեր տեսակի տեխնիկական միջոցների կիրառման վրա:

Հաշվառման, վերահսկողության և կարգավորման բնութագրված փուլերն անմիջականորեն կապված են կառավարման որոշումների հեռանկարային և ընթացիկ պլանների կատարման պրոցեսների և այդ կապակցությամբ՝ կառավարման մեթոդների սիստեմի հետ: Վերջիններս տնտեսական, վարչական (կազմակերպական) և դաստիարակչական մեթոդներն են, որոնք համատեղ կիրառվում են՝ արտադրական կոլեկտիվների գործունեության վրա ներազդելու նպատակով: Մեթոդների այդ ողջ սիստեմը սահմանված և հիմնավորված է Լենինի հետհոկտեմբերյան շրջանի աշխատություններում: Մեր կուսակցությունն ու պետությունն այդ սիստեմը կիրառել և կիրառում են սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում, թեև տարբեր շրջաններում, բնականաբար, առաջին պլանի վրա են դրվել տարբեր մեթոդներ: Այժմ, երբ արտադրության մեջ ամենուրեք արմատավորվում է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմ, հատուկ ուշադրություն է նվիրվում կառավարման տնտեսական մեթոդների բազմակողմանի զարգացմանը:

Տնտեսավարման էկոնոմիկական մեթոդները ապրանքադրամական կատեգորիաների («լծակների») օգնությամբ կառավարվող օբյեկտի վրա ներգործելու, կոլեկտիվներին և առանձին աշխատողների նյութապես խրախուսելու, արտադրողների և սպառողների միջև անմիջական կապերի հաստատման ամբողջություն են:

Վարչական (կազմակերպական) մեթոդները՝ դրանք ամբողջությունն են կառավարվող օբյեկտի վրա ներգործող այն միջոցների, որոնք հիմնված են կառավարման ստորին մակարդակի շահերը բարձրագույն մակարդակի՝ գիտականորեն հիմնավորված պահանջներին անմիջականորեն ենթարկելու վրա (օրինակ, ողջ հասարակության շահերի գերադասումը մարդկանց խմբերի կամ առանձին անհատի շահերից. կոլեկտիվի շահերի գերադասումը հասարակության առանձին անդամի շահերից): Վարչական (կազմակերպական) մեթոդների հենարանն են՝ ղեկավարի, բարձրագույն մարմնի հեղինակությունը, իրավաբանական նորմերը:

Տնտեսական ռեֆորմի պայմաններում էկոնոմիկայի կառավարման մեջ առաջնային նշանակություն է ստանում տնտեսական մեթոդների դերը: Սակայն դա ամենևին չի նշանակում թե վարչական մեթոդները պետք է փոխարինվեն տնտեսականով: Դժբախտաբար, այդպիսի սխալ կարծիքը տեղ է գտել մեր ընդհանուր քաղաքական ու տնտեսական գրականության մեջ: Կասկածելի է համարվում հատկապես, սոցիալիզմի ժամանակ տնտեսության կառավարման վարչական մեթոդների օգտագործման իրավասությունը: Մյուս կողմից, որոշ իրավաբաններ պնդում են, թե իբր, իրոք, գոյություն ունեն միայն կազմակերպական, վարչական մեթոդներ:

Իրականում առանց վարչական մեթոդների ոչ մի կառավարում հնարավոր չէ: Տնտեսական մեթոդների զարգացման ու կիրառման նպատակով կազմված ամեն մի որոշում առնչված է կազմակերպական գործողությունների, որոշակի կանոնների, նորմերի վրա հիմնված որոշումներ ընդունելու հետ:

Վարչական մեթոդները չպետք է նույնացնել բյուրոկրատական վարչարարական մեթոդների հետ, որոնց հիմքում ոչ թե օբյեկտիվ իրականության բազմակողմանի վերլուծությունն է, այլ այս կամ այն ղեկավարի կամայական, սուբյեկտիվ կարծիքը: Այդպիսի մեթոդները խորթ են սոցիալիզմի ոգուն, ուստի կուսակցությունը, սովետական կառավարությունը վճռական պայքար են մղում դրանց դրսևորումների դեմ:

Տնտեսական մեթոդները գոյություն ունեն և զարգանում են կազմակերպական (վարչական) մեթոդների ներդաշնակ: Տնտեսության կառավարման գործում վարչական մեթոդների կիրառման գիտական հիմունքների կատարելագործման ու զարգացման անհրաժեշտության վրա ուշադրությունը հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թվականի) պլենումը: Ընդգծվեց, մասնավորապես, հանձնարարված գործի, սահմանված պլանների կատարման, արտադրական և պետական կարգապահության ամրապնդման համար ձեռնարկությունների, միավորումների, մինիստրությունների ղեկավարների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու անհրաժեշտությունը:

Նշելով վարչական (կազմակերպական) մեթոդները տնտեսական մեթոդներին հակադրելու սխալականությունը, չպետք է, սակայն, ընկնել մյուս ծայրահեղության մեջ — նսեմացնել տնտեսական մեթոդների նշանակությունն արդի էտապում, մեթոդներ, որոնց անշեղ զարգացումն առավել ակնհայտ դրսևորվում է արտադրության տնտեսական և անձնական նյութական շահագրգռվածության խթանների սիստեմի կատարելագործման մեջ: Լավագույն, բարեխիղճ աշխատանքի համար՝ աշխատողներին և ավելի արդյունավետ գործունեության համար՝ արտադրական կոլեկտիվներին նյութապես խրախուսելու անհրաժեշտությունը պայմանավորված է նրանով, որ սոցիալիզմը կոմունիստական ֆորմացիայի սկզբնական, չզարգացած փուլն է:

Ինչպես հայտնի է, սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամ վճռական արտադրամիջոցների սեփականության տնօրինման հարցում մյուսներին հավասար մասնակից է: Այդ պայմաններում նրա արմատական շահերը միաժամանակ համընկնում են հասարակության մյուս անդամների արմատական շահերին: Այլ կերպ՝ սոցիալիզմի ժամանակ, անձնական արմատական շահը օբյեկտիվորեն զուգորդվում է հասարակական արմատական շահին և ոչ թե հակադրվում դրան: Միաժամանակ արտադրաուժերի՝ սոցիալիզմի ժամանակ ձեռք բերված մակարդակը դեռևս բավական չէ, որպեսզի լիովին բավարարվեն հասարակության բոլոր անդամների հարաճուն պահանջմունքները: Ուստի տնտեսական անհրաժեշտություն է՝ սպառման առարկաները բաշխել ըստ աշխատանքի քանակի և որակի: Մարդկանց տարբեր ունակությունները, կուլտուր-տեխնիկական տարբեր մակարդակը, սոցիալիստական արտադրության աշխատողների բարձր ու ցածր որակավորման առկայությունն այն օբյեկտիվ հիմքն են, որից բխում են անձնական ու խմբային (կոլեկտիվ) տնտեսական տարբեր շահերը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ տասնյակ միլիոնավոր մարդկանց կոմունիզմի կառուցմանը ներգրավել կարելի է տնտեսությունը կազմակերպելով «Ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա» (Երկեր, հ. 33, էջ 46): Նա բազմիցս և համառորեն պահանջում էր նկատել և խրախուսել տնտեսական պլանների հաջող կատարումը, տնտեսական կյանքում հետևողականորեն կիրառել յուրաքանչյուր աշխատողի և յուրաքանչյուր կոլեկտիվի նյութական շահագրգռվածության սկզբունքը:

Սոցիալիստական էկոնոմիկայի կառուցման պրակտիկան համոզիչ ցույց տվեց, որ տնտեսական լծակները (գին, ինքնարժեք, շահույթ, վարկ, տոկոս և այլն) միայն այն ժամանակ են խթանում հասարակական տնտեսության զարգացումը, երբ դրանք ճիշտ են կապվում աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքի կենսագործման հետ՝ աշխատավարձի, պարգևատրումների, զանազան արտոնությունների միջոցով: Շեղումն անձնական շահագրգռվածության սկզբունքից անխուսափելիորեն հանգեցնում է արտադրության արդյունավետության իջեցման:

Ողջ հասարակության շահերի գիտակցումը որպես իր սեփականը, անձնականը՝ անհրաժեշտ պայման է լենինյան այն կարևորագույն խնդրի կենսագործման համար, որ գիտակից բանվորն իր գործարանում ո՛չ միայն տեր զգա իրեն, այլև՝ երկրի ներկայացուցիչ, պատասխանատվություն զգա (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 500): Հենց դա էլ սոցիալիստական հասարակության աշխատավորի մեջ հարուցում է



քարոզչական խթաններ: Դրանք չեն հակասում նյութական շահագրգռվածությանը, այլ, ընդհակառակը, փոխկապված են, փոխադարձաբար ներազդում են:

Իսկ ինչպե՞ս անել, որ համաժողովրդական շահագրգռվածությունը համակի յուրաքանչյուր ձեռնարկության, առնչվի կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի շահերին: Այլ խոսքով, ինչպե՞ս զուգակցել հասարակության, կոլեկտիվների, անհատների տնտեսական շահերը՝ համաժողովրդական շահերի առաջատար դերի առկայությամբ:

Տնտեսական ռեֆորմի ընթացքում ստեղծվում է խթանման նոր, ավելի արդյունավետ մեխանիզմ, որը կենտրոնացված պլանավորումը միացնում է ձեռնարկությունների տնտեսական-օպերատիվ ինքնուրույնությանը, լրիվ տնտհաշվարկին, արտադրության տնտեսական խթանման ֆոնդերին և աշխատանքի առավել բարձր արդյունքների նվաճման մեջ անձնական շահագրգռվածությանը:

Արտադրության տնտեսական խթանների արդյունավետության բարձրացման հիմնական ուղղություններն են. ժողովրդատնտեսական պլանների ցուցանիշների սիստեմի կատարելագործումն այն հաշվով, որ դրանք չկաշկանդեն, այլ, հակառակը, խթանեն կոլեկտիվների նախաձեռնությունը, գնագոյացումների կատարելագործումը (արդյունաբերության արտադրանքի մեծածախ գների և գյուղատնտեսության արտադրանքի գնման գների ռեֆորմը), ձեռնարկությունների անցումը լրիվ տնտհաշվարկի, ներգործարանային տնտհաշվարկի զարգացմամբ և կառավարման ճյուղային մարմինների գործունեության մեջ դրա տարրերի արմատավորումը:

Ձեռնարկությունների լրիվ տնտհաշվարկն ապահովվում է ռեֆորմի ընթացքում կենսագործվող բոլոր միջոցներով: Դրանք են՝ թե՛ էկոնոմիկայի պլանավորման մեթոդների կատարելագործումը, թե՛ խթանման ֆոնդերի գոյացումը, թե՛ վարձատրությունը ձեռնարկության համար սահմանված արտադրական ֆոնդերի դիմաց, թե՛ ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական պատասխանատվությունը փոխադարձ պարտավորությունների կատարման համար:

Ներկայումս մեծ աշխատանք է տարվում՝ կատարելագործելու տնտեսական ռեֆորմի մեխանիզմը: Կատարելագործվում է, հատկապես, տնտեսական զարգացման խթանների սիստեմը (կարգավորվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման և միջին աշխատավարձի հարաբերակցությունը, մի շարք ձեռնարկություններում փորձեր են արվում շահույթից որոշակի տոկոսներ հատկացնելու խթանման ֆոնդերին և այլն): Կարևոր դեր կխաղան երկարաժամկետ գործողության ֆոնդագոյացման նորմատիվների սիստեմի մշակումն ու արմատավորումը: Ինչպես հայտնի է, ձեռնարկության գործունեության արդյունավետությունը բարձրացնելու մարզում աշխատողների նյութական շահագրգռվածությունն ապահովվում է ամենից առաջ աշխատավարձի պլանային ֆոնդի, ինչպես նաև նյութական խրախուսման ֆոնդերի օգտագործմամբ: Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական առավել շահագրգռվածությունն ապահովելու նպատակով այժմ լայնորեն տարածվում է, այսպես կոչված՝ «շչեկինյան փորձը» (աշխատանքի արտադրողականության բարձրացման համար խրախուսել աշխատավարձի տնտեսված մասի հաշվին), ինչպես և նյութական խրախուսման ֆոնդի գոյացման փորձերը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվառմամբ:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն ամենօրյա ուշադրություն են նվիրում տնտեսության կառավարման հարցերին: Այժմ կատարելագործվում են ճյուղային ո՛չ միայն ստորին (ձեռնարկությունների), այլև միջին ու բարձր օղակների կառավարման մեթոդները: Դա, անշուշտ, կբարձրացնի ժողովրդական տնտեսության կառավարման արդյունավետությունը, կարևոր քայլ կհանդիսանա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

«Политическое самообразование», № 10, 1970 г.

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները: *Երկեր, հ. 24, էջ 279—333:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Միասնական տնտեսական պլանի մասին: *Երկեր, հ. 32, էջ 158—169:*

Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ *ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները (Հատված II, թեզիսներ 6, 7, 8, Հատված IV, թեզիսներ 19, 20), «Հայաստան» հրատ., 1970:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինի գործն ապրում է և հաղթանակում: *«Հայաստան» հրատ., 1970:*

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին: *Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1965 թվականի սեպտեմբերի 27-ին, «Հայաստան» հրատ., 1965:*

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԽԹԱՆՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Լ. ԶՈՏՈՎԱ, Բ. ՑՎԵՏԿՈՎ

Արդի փուլում տնտեսական զարգացման կարևորագույն խնդիրն է հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը: Տնտեսական շինարարության մեջ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումում, հիմնական դեր կխաղան արտադրության ինտենսիվացումը, արտադրանքի որակի բարելավումը, աշխատանքային ու նյութական ծախքերի առավելագույն կրճատումը: Անցումը ինտենսիվ տնտեսավարման և արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումն անհնար է ապահովել առանց արդյունաբերության մեջ գիտա-տեխնիկական մտքի նորագույն նվաճումների, տեխնիկական առաջընթացի օգտագործման:

Բոլոր զարգացած երկրներին այսօր բնորոշ է գիտա-տեխնիկական հեղափոխության հարաճուն ազդեցությունը տնտեսական զարգացման տեմպերի և համամասնությունների վրա: Սակայն սոցիալիստական պլանային էկոնոմիկան է միայն ի վիճակի առավելագույն պայմաններ ապահովելու գիտա-տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման համար: Պլանային տնտեսավարումը հնարավորություն է ընձեռում կանխագծելու կենտրոնացված, համապետական մասշտաբի նպատակներ, հաշվի առնելով տնտեսական ու սոցիալ-քաղաքական բոլոր գործոնները, արտադրության բոլոր օղակների համար ըստ այդմ սահմանելու կոնկրետ խնդիրներ և վերահսկելու դրանց կենսագործումը:

Կատարելագործելով երկրի քաղաքական ու տնտեսական ղեկավարությունը՝ կուսակցությունը հենվել է մարքս-լենինյան տեսության, տնտեսավարության լենինյան գաղափարների վրա: Երբ օբյեկտիվ պայմաններ ստեղծվեցին զարգացման ինտենսիվ եղանակին անցնելու համար, համապատասխանորեն փոխվեցին տնտեսական ղեկավարության կարևորագույն ձևերը: Տնտեսական ռեֆորմը նպաստեց գիտա-տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը: Ճյուղերի տեխնիկական ու տնտեսական միասնական ղեկավարությունը և ձեռնարկությունների տնտեսական իրավունքների ընդլայնումը հնարավորություն ընձեռեցին վերջիններիս ավելի ճկուն օգտագործելու արտադրության արդյունավետության բարձրացման տնտեսական լծակները: Արդի պայմաններում արտադրության ինտենսիվացման և գիտա-տեխնիկական առաջընթացի շարժումը տնտեսավարման բնագավառում հարուցում է նոր խնդիրներ, որոնց մեջ կարևորագույններից է արդյունաբերության ոլորտի տեխնիկական առաջադիմության խթանման կատարելագործումը:

Գիտա-տեխնիկական առաջընթացի առավել խթանումը և արտադրության տեխնիկական վերազինման տեմպերի արագացումը պետք է սկսվեն պլանից: Նոր խնդիրները պահանջում են որոշակի փոփոխություններ տեմպերի արագացման համար ծավալված պլանային մշակումների մեթոդոլոգիայում, պլանային առաջադրանքների իրականացման և տնտեսական լծակների օգտագործման հետագա կատարելագործում: Խոսքը, ամենից առաջ, հեռանկարային պլանավորման և երկարաժամկետ կանխորոշման սիստեմի կատարելագործման մասին է: Ավելի քան բարդանում է տեխնիկական զարգացման նոր, խոշոր ծրագրերի իրականացումը սոսկ տարեկան ու հնգամյա պլանների հիման վրա:



Թեև հնգամյա պլանը հանդիսանում է ժողովրդատնտեսական համամասնությունների գլխավոր կարգավորիչը, սակայն զգալիորեն աճում է հեռանկարային՝ 15—20-ամյա պլանի և երկարաժամկետ կանխորոշումների դերը: Վերջիններիս գլխավոր ֆունկցիաներն են՝ ստեղծված իրադրության գիտական վերլուծությունը, տնտեսական զարգացման հանգուցային խնդիրների բացահայտումը, լուծելի նոր խնդիրների կանխատեսումը: Տնտեսական զարգացման ռեալ ալտերնատիվներն ամենից առաջ կապված են գիտա-տեխնիկական առաջընթացի, նոր մեքենաների, մեխանիզմների, էներգիայի նոր աղբյուրների և նման այլ նոր երևույթների հայտաբերման ու զարգացման հնարավորությունների հետ: Սակայն, որպեսզի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները ապահովեն արտադրության արդյունավետության բարձրացումը և տնտեսական զարգացման տեմպերի արագացումը, անհրաժեշտ է այդ նվաճումների իրացումը զուգակցել արտադրության կառուցվածքի որոշ փոփոխությունների, առավել առաջավոր ճյուղերի արագ զարգացման, կապիտալ ներդրումների որոշ հաջորդականության հետ: Այսպիսով, գիտատեխնիկական առաջընթացի բնագավառում կանխորոշումը դառնում է պետական միասնական քաղաքականության մշակման առավել կարևոր միջոց:

Սոցիալիստական պլանավորման բնորոշ առանձնահատկությունն այն է, որ պլանը ո՛չ միայն առաջադրում է պլանային տվյալ ժամանակահատվածի ընթացքում լուծելի խնդիրներ, այլև նշում դրանց լուծման միջոցները, կանխատեսելով անհրաժեշտ նախադրյալների ստեղծումը և տնտեսական լծակների օգտագործումը:

Գիտատեխնիկական զարգացումը նախատեսող ծրագրերի իրականացումն ապահովող դիրեկտիվ պլանավորման զորեղ միջոց են կապիտալ ներդրումների կենտրոնացված ֆոնդի պլանաչափ բաշխումն ու օգտագործումը: Սոցիալիստական էկոնոմիկայի պլանային կառավարման անհրաժեշտ պայմանն ու նախադրյալ են կուտակումների գլխավոր ռեսուրսների կենտրոնացումը պետության ձեռքում և դրանց հատկացումը նախատեսված խնդիրների լուծմանը: Պլանավորող մարմինները, բանիմաց տնօրինելով կապիտալ ներդրումների կենտրոնացված ֆոնդը, կանխորոշում են տեխնիկական առաջընթացի կարևորագույն ուղղությունները պլանավորվող ժամանակահատվածում, նյութական և կազմակերպական պայմաններ ապահովում ավելի առաջավոր ճյուղերի առավելագույն զարգացման համար, նպաստում հեռանկարային գիտական որոշումների ամենաարագ կենսագործմանը և այլն:

Տեխնիկական առաջընթացի պլանային կարգավորման ու խթանման հիմնական տարրերից է տնտեսական այնպիսի լծակների ակտիվ օգտագործումը, որոնք արտադրության զարգացման վրա ինչպես հարկն է (պլանային առաջադրանքին համապատասխան) կարող են ազդել միայն համատեղ և այդ լծակների սիստեմի ու պետական հիմնական ցուցանիշների սերտ առնչությամբ: Ուստի և դրանք պետք է համարել ժողովրդա-տնտեսական պլանավորման բաղադրիչ մասը և վերանայել կամ ճշտել պլանի մշակման ու ճշգրտման հետ մեկտեղ:

Մինչև վերջին ժամանակներս տնտեսական լծակների օգտագործումը սահմանափակվում էր տարեկան պլանի շրջանակներում, որը խիստ իջեցնում էր դրանց ազդեցությունը արտադրության կառուցվածքային տեղաշարժերի, տեխնիկական առաջընթացի համամասնությունների փոփոխման տեմպերի արագացման վրա: Այժմ հարկ է տնտեսական լծակների համակարգը ներառնել հեռանկարային պլանի մեխանիզմի մեջ:

Տեխնիկական առաջընթացի խթանման նպատակներին պետք է համապատասխանի նաև գների քաղաքականությունը, քանի որ գները ծառայում են ժողովրդատնտեսական պլանի որոշակի մտահղացումների ու խնդիրների կենսագործմանը: Ժողովրդատնտեսական պլանավորման մեջ գների և դրամական մյուս ցուցանիշների դերի բարձրացման առնչությամբ ծագեց հեռանկարային գների սիստեմի մշակման և հեռու ապագայում դրանց դինամիկայի կանխորոշման անհրաժեշտությունը:

Տեխնիկական առաջընթացի արագացման նպատակով տնտեսական լծակների գործունեության բարձրացման գլխավոր պայմանն է ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանի և ձեռնարկությունների հեռանկարային պլանների միջև օրգանական կապի ստեղծումը: Այդ խնդրի լուծմամբ հնարավոր կլինի ստեղծել երկարաժամկետ նորմատիվներ, որոնք արտադրական կոլեկտիվների տնտեսական խրախուսման հուսալի հիմք կհանդիսանան ռեզերվների օգտագործման, տեխնիկական առաջընթացի արագացման և արտադրության արդյունավետության բարձրացման համար:

Պլանային ղեկավարության սիստեմի կատարելագործումն անխզելիորեն կապված է սոցիալիստական արտադրության կառավարման հետագա բարելավման միջոցառումների հետ: Որքան էլ լավ կազմված լինի պլանը և

որքան էլ գործուն լինեն տնտեսական լծակները, դրանք չեն կարող նկատելիորեն խթանել տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը, եթե արտադրությունը կենտրոնացված է չմասնագիտացված մանր ձեռնարկություններում:

Արտադրության խոշոր չափեր պահանջող գիտա-տեխնիկական հեղափոխության, արտադրաուժերի զարգացման արդի մակարդակի պայմաններում զարգացման արագ տեմպերին այլևս չի համապատասխանում արտադրության կազմակերպումն արտադրական փակ ցիկլ ունեցող փոքր ձեռնարկության բազայի վրա: Ուստի և ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1968 թ.) պլենումը խնդիր դրեց ստեղծել տնտհաշվարկային ճյուղային միավորումներ: Ներկայումս երկրի արդյունաբերության մեջ կան ավելի քան 600 արտադրական միավորումներ և խոշորացված ձեռնարկություններ, որոնք թողարկում են արտադրանքի ավելի քան 8 տոկոսը և տալիս ողջ շահույթի 10 տոկոսից ավելին: Չնայած աշխատանքի կարճատև փորձին, միավորումները արդեն ցույց են տվել իրենց առավելությունները: Աշխատանքի արտադրողականությունն այդ ձեռնարկություններում 1968 թ. աճել է 7,1, արտադրության ծավալն ավելացել է 8,5 տոկոսով, մինչդեռ ողջ արդյունաբերության մեջ այդ ցուցանիշները համապատասխանորեն կազմել են 4,8 և 7 տոկոս: Փորձը ցույց է տալիս, որ միավորումներում մեկ և կես—երկու անգամ ավելի արագ են մշակվում և յուրացվում նոր արտադրատեսակները, քան սովորական ձեռնարկություններում:

Նյութական, տեխնիկական և այլ ռեսուրսների կենտրոնացումը միավորման շրջանակներում ինքնին վիթխարի չափով խթանում է գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը: Միանման ձեռնարկությունների միավորումը մեծ հնարավորություններ է ընձեռում զարգացնելու արտադրության մասնագիտացումը, արմատավորելու նոր տեխնիկան, կատարելագործելու աշխատանքի կազմակերպումը: Միավորումները հանդես են գալիս և կհանդիսանան արտադրության պրոցեսն անմիջականորեն կազմակերպող օպերատիվ-տնտեսական բարձրագույն մարմիններ: Ճյուղային մինիստրություններին, գլխավոր վարչություններին այդ հնարավորություն է ընձեռում ուշադրությունը կենտրոնացնելու ճյուղի պլանավորման կատարելագործման և միասնական տեխնիկական քաղաքականության իրականացման վրա:

Հատուկ նշանակություն ունեն գիտա-արտադրական այնպիսի միավորումները, որոնք ներկայացնում են գիտատեխնիկական առաջընթացի կառավարման որակապես նոր ձև: Երկրի տարբեր քաղաքներում արդեն գիտաարտադրական միավորումներ են ստեղծվել արդյունաբերության, էլեկտրատեխնիկական, սննդի, քիմիական, մեքենաշինական և այլ ճյուղերում: Գիտատեխնիկական միավորումները փորձնա-փորձարարական և կոնստրուկտորական բազա ունեցող ինստիտուտներ չեն: Միավորումներում պահպանվում է նոր տեխնիկայի առավել բարդ այնպիսի նմուշների սերիական արտադրությունը, որպիսիք մշակվում են հենց այդտեղ: Դրանով իսկ ապահովվում է գիտական որոնում—հետազոտություն—մշակում—արտադրություն պրոցեսի անքակտելիությունը, որի շնորհիվ անընդհատ նորացվում է արտադրանքը, արմատավորվում են տեխնոլոգիական նոր պրոցեսները, նոր մեքենաներ ու մեխանիզմներ: Գիտա-արտադրական միավորումների աշխատանքի արդյունքները խիստ հեռանկարային են: Այսպես, նոր տեխնիկայի ստեղծման աշխատանքի արդյունավետության բարձրացման նպատակով կազմակերպված Լենինգրադի «Պոզիտրոն» միավորումը գիտահետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների 1969 թվականի պլանը կատարել է 108,5 տոկոսով, մշակել 298 թեմա (պլանով նախատեսված 182-ի փոխարեն) յուրացրել է 20 նոր արտադրատեսակներ, 17-ի փոխարեն:

Անցումն առանձին ձեռնարկություններից տնտհաշվարկային միավորումների՝ պահանջում է նոր ձևով գնահատել արտադրության զարգացման, նոր տեխնիկայի, նյութական խրախուսման ֆոնդերի և գիտա-տեխնիկական առաջընթացի խթանումն ապահովող այլ աղբյուրների ստեղծման մեթոդները: Խոսքը, օրինակ, այնպիսի գործոնների մասին է, ինչպես՝ արտադրության զարգացման ֆոնդի, ամորտիզացիոն մասհանումների կենտրոնացումը հիմնական վերանորոգման, նոր արտադրանքի յուրացման համար սահմանված ֆոնդի կազմակերպումը, գիտատեխնիկական առաջընթացի միասնական ֆոնդի ստեղծումը, որը կարելի է օգտագործել այնտեղ, ուր ամբողջ միավորման շահերից ելնելով, առավել նպատակահարմար է: Նոր ձևով են դրվում նաև ձեռնարկությունների ու պետական բյուջեի փոխհարաբերությունների կենտրոնացման աստիճանի հարցերը: Պետք է լուծվեն գիտատեխնիկական առաջընթացի խթանումն ուժեղացնելու նպատակին ծառայող ֆինանսական քաղաքականության և այլ խնդիրներ: Շատ բան այստեղ պայմանավորված է միավորումների ձևով, արտադրության կենտրոնացման աստիճանով, մեծ չափով կօգնի նաև կուտակված փորձը, որը լիովին հաշվի կառնվի «Սոցիալիստական արտադրական միավորման վերաբերյալ» ներկայումս մշակվող կանոնադրության մեջ:

Այժմ իսկ պարզ է, որ արտադրական միավորումները հնարավորություն են ընձեռում ավելի նպատակայաց օգտագործելու նոր տեխնիկայի յուրացումը և արտադրության տեխնիկական վերազինումն արագացնող ու արտադրանքը յուրացնող աշխատողների պարգևատրմանը հատկացվող միջոցները: Դա մեծ նշանակություն ունի, քանի որ դրան հատկացվող փողը միշտ չի օգտագործվում այդ նպատակներով: Երկրի շատ մինիստրություններ ու գերատեսչություններ, ուր միլիարդավոր ռուբլիների են հասնում գիտատեխնիկական առաջընթացի խթանման հատկացումները, նոր տեխնիկայի ստեղծմանն ու արմատավորմանը տրամադրված պարգևատրման ֆոնդն օգտագործում են միայն 50—60, արտադրության զարգացմանը՝ 60—70, նոր տեխնիկայի յուրացման ֆոնդը՝ 40—50 տոկոսով: Ստեղծվում է այնպիսի իրավիճակ, երբ միայն անմիջականորեն արտադրության տեխնիկական վերազինմանը հատկացված միջոցների մնացորդները ամբողջ արդյունաբերության մեջ հասնում է այնպիսի չափերի, որով հնարավոր կլինի ապահովել տեխնիկական առաջընթացն արդյունաբերության մեջ կամ նույնիսկ երկու խոշոր ճյուղերում: Դրա հետ մեկտեղ վերլուծությունը ցույց է տալիս, որ արդյունաբերական շատ ձեռնարկություններ, գիտահետազոտական և նախագծման շատ ինստիտուտներ չունեն անհրաժեշտ միջոցներ նոր տեխնիկայի ստեղծման ու յուրացման ծախսերը ծածկելու համար: Դա բացատրվում է նրանով, որ դեռևս անբավարար է մշակված գիտատեխնիկական առաջընթացի խթանման ֆոնդերի ըստեղծման սիստեմը: Այդ սիստեմը հաճախ խթանում է առավելապես այն միջոցառումները, որոնք տալիս են անմիջական արդյունք—ավելացնում են շահույթը, բարձրացնում արտադրության շահութաբերությունը: Հայտաբերվում և օգտագործվում են արտադրության գլխավորապես տեխնիկական կամ կազմակերպական կատարելագործման ռեզերվները: Մինչդեռ տեխնիկական առաջադիմության ասպարեզում ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում այնպիսի միջոցառումների կիրառումը, որոնք արմատական փոփոխություններ են հարուցում արտադրության տեխնոլոգիայի ու կազմակերպման մեջ: Դրանց իրականացումը պահանջում է նոր տեխնիկա, աշխատանքի նոր, ավելի առաջավոր միջոցներ, տևական ջանքեր և զգալի միանվագ ծախքեր:

Նոր տեխնիկայի մշակումն ու յուրացումը մեծ ծախսերի հետ են կապված: Գիտահետազոտական ու նախագծա-կոնստրուկտորական աշխատանքները, արտադրատեսակների նոր նմուշների ստեղծումը և դրանց սերիական, մասսայական թողարկման կազմակերպումը նախապես (նոր տեխնիկայի տնտեսական ողջ արդյունքը տալուց առաջ) պահանջում են դրամական, նյութական ու աշխատանքային ծախսումներ: Այսպես, մեքենաների սկզբնական նմուշների պատրաստման աշխատատարությունը մոտ երկու անգամ ավելի բարձր է, քան նույն մեքենաների սերիական թողարկմանը: Այդ նմուշները կարիք ունեն վերջնական մշակման և փորձարկման, որոնց ընթացքում հնարավոր է առանձին հանգույցների ճշգրտում և նույնիսկ՝ վերափոխում: Հաճախ փորձնական շահագործումից հետո հարկ է լինում կոնստրուկցիայի լրացուցիչ մշակման, որը պահանջում է նոր ծախսեր: Դրանք չեն կարող լրիվ ներառվել արտադրության ընթացիկ ծախքերի մեջ, քանի որ բարձրացնում են նոր արտադրանքի գները, որը ձեռնտու չէ սպառողներին, ուստի և չեն իրացվի: Դրա հետ մեկտեղ իջնում են պատրաստող ձեռնարկության աշխատանքի արդյունավետության ցուցանիշները, քանի որ նոր արտադրատեսակի յուրացումը կապված է տեխնոլոգիայի փոփոխումների և լրացուցիչ ծախքերի հետ: Ուստի որքան ձեռնարկության պլանում բարձր է նոր տեխնիկայի տեսակարար կշիռը, այնքան փոքր են իրացված արտադրանքի փաստացի ծավալը և ֆոնդահատույցը: Այդպիսի պայմաններում ձեռնարկությունները ձգտում են ստանալ նոր արտադրանքի մշակման ու թողարկման նվազագույն առաջադրանքներ: Դա կարելի է տեսնել Մոսկվայի մետաղյա իրերի «Պրոլետարսկի տրուդ» գործարանի օրինակով: Ձեռնարկությանը պատվեր էր տրըված նախագծելու և պատրաստելու մեխերի փաթեթավորման ավտոմատ գիծ: Վերջինս, որն ըստ էության նոր արտադրատեսակ է, պետք է դրվեր նոր տեխնիկայի պլանում, սակայն գործարանը դրա պատրաստումը զետեղեց ընթացիկ արտադրության պլանի մեջ, որպես 40 ինքնուրույն հանգույցներ:

Ձեռնարկությունների անբավարար շահագրգռվածությունը նոր տեխնիկայի արագ յուրացմամբ ու արմատավորմամբ բացատրվում է մասնավորապես նրանով, որ տնտեսական սիստեմն առնչված չէ նոր տեխնիկայի պլանի կատարման հետ: Այս ամենը չի նպաստում նոր արտադրանքի արագ թողարկմանը:

Տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման համար անհրաժեշտ է ժամանակին և լիովին փոխհատուցել նոր մեքենաների ու

ցումներում նախատեսվում է նաև ժամանակին իջեցնել այնպիսի արտադրանքի գները, որն արդեն երկար ժամանակ է, ինչ թողարկվում է և տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հնացել է:

Նոր տեխնիկայի գները պետք է խթանեն այդ տեխնիկայի ձեռքբերումը և օգտագործումը սպառողների կողմից: Ներկայումս նախապատրաստվել է արդյունաբերական նոր արտադրատեսակների համար գների որոշման գիտականորեն հիմնավորված մեթոդիկա: Դա մի քայլ է դեպի այն, որ նոր մեքենայի գինը սահմանվի այն ժամանակ, երբ նախագծողներին ու կոնստրուկտորներին կտրվի արտադրատեսակների մշակման տեխնիկական առաջադրանքը. այդ կշահագրգռի ձեռնարկություններին՝ արագ յուրացնելու արտադրատեսակների թողարկումը:

Արտադրության զարգացման ֆոնդը կոչված է ֆինանսավորելու նոր տեխնիկայի արմատավորումը, արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, սարքավորման, հիմնական ֆոնդերի նորացումը, արտադրության կազմակերպման կատարելագործումը և հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման մյուս միջոցառումները: Ձեռնարկություններին թույլ է տրված այդ ֆոնդից մարել նաև նոր տեխնիկայի արմատավորման համար բանկերից ստացված վարկերը:

Արտադրության զարգացման ֆոնդն ստեղծվում է շահույթից կատարվող մասհանումների, հիմնական ֆոնդերը լրիվ վերականգնելու համար կատարվող ամորտիզացիոն մասհանումների և շարքից դուրս եկած ու ավելորդ հիմնական միջոցների իրացումից ստացվող դրամամուտքի հաշվին:

Արտադրության զարգացման ֆոնդի ստեղծմամբ վերանում է ձեռնարկությունների նկատմամբ վերադաս կազմակերպությունների մանրախնդիր խնամակալությունն արտադրության մշտական կատարելագործման այնպիսի կենսական խնդիրների լուծման գործում, որը կարող է իրականացվել ձեռնարկությունների սեփական աղբյուրների հաշվին: Ձեռնարկությունների նյութա-տեխնիկական բազայի զարգացումն այժմ հիմնականում պայմանավորված է տնտեսական հաջող գործունեությամբ: Արտադրության տեխնիկական վերազինման համար ձեռնարկությունների սեփական միջոցների օգտագործման տնտեսական առավելությունները անվիճելի են: Արտադրության կատարելագործումն այդ պայմաններում ավելի լրիվ է առնչվում տնտեսական հաշվարկի հետ: Պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում զարգացման ֆոնդն օգտագործվում է արտադրանքի թողարկման ընդլայնման, արտադրության արդյունավետության բարձրացման, ինչպես նաև նրա մեքենայացումն ու ավտոմատացումն ապահովող միջոցառումների անցկացման համար: Նոր պայմաններում աշխատող ձեռնարկություններում արտադրության զարգացման ֆոնդի ծավալը, անցյալում նման նպատակների համար հատկացվող միջոցների համեմատությամբ, աճել է մոտ 3,5 անգամ, իսկ որոշ ձեռնարկություններում՝ նույնիսկ ավելի: Այսպես, Նովոչերկասկի նավթամեքենաշինական գործարանում զարգացման ֆոնդը 1967 թվականին կազմում էր 91 հազար ռուբլի: Իսկ նոր տեխնիկայի արմատավորման և սարքավորման արդիականացման համար նախկինում հատկացվող գումարը չէր անցնում 15—17 հազար ռուբլուց: Զարգացման ֆոնդի հաշվին կատարված աշխատանքների ցուցակը վկայում է արտադրության որակական ու քանակական տեղաշարժերի մասին: Տեսնենք, օրինակ, թե ինչ է տվել գործարանին փականների պատրաստման հոսքային գծի արմատավորումը զարգացման ֆոնդի հաշվին: Նոր սարքավորումը և ավելի կատարելագործված տեխնոլոգիան շեշտակի բարելավեցին արտադրատեսակի որակը: Եվ այժմ Նովոչերկասկի փականներն իրենց հուսալիությամբ և տեխնոլոգիական այլ հատկություններով չեն զիջում արտասահմանյան լավագույն նմուշներին, իսկ քաշով երեք կիլոգրամով թեթև են: Կիրառված միջոցառումներից ստացված խնայողությունը երիցս գերազանցեց արտադրության զարգացման ֆոնդից օգտագործված միջոցները: Բալխաշի հանքամետալուրգիական կոմբինատում 1969 թվականին արտադրության զարգացման ֆոնդի հաշվին ձեռք բերված նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տնտեսական արդյունքը կազմեց ավելի քան կես միլիոն ռուբլի: Տարեցտարի աճում է նոր տեխնիկայի, ավտոմատացման ու մեքենայացման համար արտադրության զարգացման ֆոնդից օգտագործվող միջոցների տեսակարար կշիռը:

Դրա հետ մեկտեղ շատ ձեռնարկություններում արտադրության զարգացման ֆոնդն անբավարար է: Մեքենաշինական գործարանների մեծ մասում այն կազմում է հիմնական արտադրաֆոնդերի միջին տարեկան արժեքի 1—2 տոկոսը միայն, թեև գիտատեխնիկական առաջադիմության նորագույն նվաճումների արմատավորումը հաճախ նոր սարքավորում ձեռք բերելու համար պահանջում է զգալի միանվագ ներդրումներ: Ուստի և ձեռնարկություններում հարկ է լինում որոշ գումարներ ետ գցել արտադրության զարգացման ֆոնդից: Բայց ներկայումս միշտ չէ, որ դա հնարավոր է, քանի որ ֆինանսական մարմինները վեր-



ցնում են ազատ միջոցները, թեև զարգացման ֆոնդի վերաբերյալ կանոնադրության մեջ ասված է, որ այդ ֆոնդը մնում է ձեռնարկության տնօրինության տակ և վերցման ենթակա չէ:

Կան նաև այնպիսի ձեռնարկություններ, որոնք տեխնիկական առաջադիմության նպատակով բավարար չափով չեն օգտագործում արտադրության զարգացման ֆոնդը: Որոշ ձեռնարկություններ այդ ֆոնդին են հատկացնում ստացած ողջ շահույթի 1 տոկոսից պակաս մասը: Շատ տնտեսագետներ նպատակահարմար են գտնում ավելացնել զարգացման ֆոնդին շահույթից կատարվող մասհանումները, որ կուժեղացնի նրա խթանիչ դերը: Առաջարկվում է զգալիորեն ավելացնել զարգացման ողջ ֆոնդը, շերտավորելով մասհանումների նորմատիվները, ելնելով սարքավորման տարիքային կազմից: Հնացած տեխնիկայի տեր ձեռնարկությունների համար նորմատիվներն, ըստ երևույթին, ավելի բարձր պիտի լինեն:

Արտադրության զարգացման ֆոնդի ձևավորումն ու օգտագործումը պետք է կատարելագործվի տնտեսական միավորումների, մինիստրությունների գլխավոր վարչությունների դերի բարձրացմանը զուգընթաց, որոնք կըստանձնեն ենթակա ձեռնարկությունների արտադրության զարգացման ֆոնդի միջոցների կենտրոնացումը, որպեսզի այդ ձեռնարկությունների ղեկավարների համաձայնությամբ կենտրոնացված օգտագործեն տվյալ միջոցները, առաջին հերթին իրականացնելով առավել արդյունավետ միջոցառումներ:

Բարձրորակ և ստեղծագործական լարված, բարդ աշխատանք է տեխնիկական նոր գաղափարների մշակումը, արտադրանքի նոր նմուշների ստեղծումը և տեխնոլոգիական ավելի կատարելագործված պրոցեսների արմատավորումը: Այդ աշխատանքը պետք է խրախուսել: Այդ նպատակով ձևավորվում են նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման համար պարգևատրման ֆոնդեր: Դրանք ըստեղծվում են արտադրանքի ինքնարժեքից կատարվող մասհանումներից, որոնք դիֆերենցված են ըստ ճյուղերի՝ աշխատավարձի ֆոնդի նկատմամբ 0,2-ից մինչև 1 տոկոսի չափով: Ձեռնարկությունը մինիստրությանը կամ գերատեսչությանն է տալիս մասհանումների $^{1}/_{2}$—$^{3}/_{4}$-ը՝ պարգևատրման կենտրոնացված ֆոնդի ստեղծման համար, իսկ $^{1}/_{4}$—$^{1}/_{2}$-ը թողնում է իր տնօրինությանը՝ նույն նպատակների համար: Ձեռնարկությունների տնօրինությանը թողնվող միջոցների չափերը վերադաս կազմակերպությունները որոշում են նոր տեխնիկայի գծով տարվող աշխատանքների ծավալի, բարդության ու նշանակության համապատասխան:

Մինիստրությունը կամ գերատեսչությունը կենտրոնացված ֆոնդի միջոցներն օգտագործում է ճյուղի տեխնիկական զարգացման պլանով նախատեսված կարևորագույն աշխատանքների կատարման համար աշխատողներին պարգևատրելու նպատակով: Ձեռնարկության նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման համար նախատեսված պարգևատրման միջոցները ծախսվում են նոր տեխնիկայի պլանով սահմանված աշխատանքներն իրականացնողներին խրախուսելու նպատակով, ելնելով տվյալ ձեռնարկության մեջ դըրանց տնտեսական արդյունավետությունից:

Տեխնիկական առաջընթացին մեծ ուշադրություն նվիրող ձեռնարկություններում շատ փոքր է նոր տեխնիկայի համար գործադրված աշխատանքների համար սահմանված պարգևատրման ֆոնդը, մանավանդ, երբ խոշոր մշակումներին մասնակցում են մեծ թվով աշխատողներ: Տնտեսավարման նոր սիստեմի անցնելուն զուգընթաց, ձեռնարկության աշխատողների թվի կրճատման տենդենցի պայմաններում նվազում է աշխատավարձի ֆոնդը, ավտոմատ կերպով կրճատվում նաև նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման համար պարգևատրումների գումարը: Բայց չէ որ այդ նպատակների համար պարգևատրման ֆոնդը կարող է կազմել աշխատավարձի ֆոնդի ամենաշատը 1 տոկոսը: Տվյալ ձեռնարկությունում նոր տեխնիկայի համար պարգևատրումների գումարի պայմանավորվածությունն աշխատավարձի ֆոնդով հակասում է նոր տեխնիկայի կարևորագույն խնդիրներից մեկին, այն է՝ արտադրատեսակի մեկ միավորին ընկնող արտադրական ծախքերի, ինչպես և աշխատանքային ծախքերի իջեցմանը:

Ինքնարժեքի հաշվին պարգևատրման ֆոնդի գոյացման գործող սիստեմը և պարգևաչափի սահմանումն անմիջականորեն կապված չեն տեխնիկայի արմատավորման տնտեսական արդյունքների հետ: Այդ կարող է արգելակել դրա արդյունավետության բարձրացումը: Այսպես, Խարկովի «Կոնդիցիոներ» մեքենաշինական գործարանում նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տնտեսական արդյունքը 1967 թվականին կազմեց 342,9 հազար ռուբլի, պարգևատրման համար նրան հատկացվեց 20 հազար ռուբլի, որը կազմում է ստացված խնայողության մոտ 6 տոկոսը: Նույն թվականին Կրյուկովսկի վագոնաշինական գործարանում, երբ նոր տեխնիկայի արդյունավետությունը 108,6 հազար ռուբլի էր, պարգևատրման ֆոնդը կազմեց 46,8 հազար ռուբլի, այսինքն՝ արդյունքի գրեթե կեսը: Խարկովի ագրեգատային հաստոցների գործարանում «ԽՍ—4.142» ագրեգատային հաստոցի նախա-

գծման, պատրաստման ու հանձնման համար, երբ տնտեսական արդյունքը 31,2 հազար ռուբլի էր, պարգևատրումը սահմանվեց 1.870 հազար ռուբլի: Խարկովի մի այլ ձեռնարկությունում՝ «Էլեկտրամաշինա» գործարանում, մետաղէ մասնիկների փոխարեն պլաստմասսայե մասնիկներ արմատավորելու համար, որն ապահովել էր տարեկան 19.300 ռուբլու խնայողություն, աշխատողների խրախուսմանը հատկացվեց 3.378 ռուբլու պարգևատրում: Այսպիսով, ավելի փոքր տնտեսական արդյունքի համար վճարվել է զգալիորեն ավելի շատ պարգևատրում:

Աշխատավարձի ֆոնդի տոկոսներից ինքնարժեքի հաշվին առաջացող պարգևատրման ֆոնդը լրիվ չի համապատասխանում առանձին ձեռնարկությունների՝ արտադրության նորացման պահանջներին և չի համաձայնեցվում դրանց կոլեկտիվների գործունեության արդյունքների հետ: Նոր տեխնիկայի համար պարգևատրումը կենտրոնացված ֆոնդից, որի չափերը չեն առնչվում իրական նվաճումների հետ, հակասում է տնտեսական ռեֆորմի ոգուն: Ուստի անհրաժեշտ է կատարելագործել նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման համար պարգևատրման ֆոնդի միջոցների գոյացման ու օգտագործման կարգը: Այդ ֆոնդի գոյացման աղբյուրը պետք է լինի շահույթը, իսկ նրա հաշվարկումը՝ առնչվի ո՛չ թե աշխատավարձի ֆոնդի, այլ նոր տեխնիկայից ստացվող արդյունքի հետ:

Նյութական խրախուսման ֆոնդերի միջոցները ամենևին լրիվ չեն ծախսվում արտադրանքի մշակման ու թողարկման համար պարգևատրման նպատակով: Շահույթից ընտացվող այդ ֆոնդերը ավելի մեծ չափով պետք է օգտագործվեն նաև տեխնիկական առաջադիմության խթանման նպատակով, մանավանդ որ նյութական խրախուսման ֆոնդերի միջոցները լրիվ չեն օգտագործվում: Կիրովի մարզի ձեռնարկություններում, օրինակ, ծախսվել է նյութական խրախուսման ֆոնդերի միջոցների միայն 82 տոկոսը: Պարգևատրման համար նախատեսված միջոցների մնացորդը ավելացել է 10 միլիոն ռուբլով: Դրա պատճառներից մեկը հատկապես կարևոր արտադրական առաջադրանքների կատարման համար աշխատողների խրախուսման արդյունավետ ձևերի բացակայությունն է: Որոշ տնտեսագետներ առաջարկում են խրախուսել նոր արտադրանք ստեղծող ու յուրացնող աշխատողներին, նյութական խրախուսման ֆոնդի միջոցները օգտագործել առանձնապես կարևոր արտադրական առաջադրանքների կատարման համար միանվագ պարգևներ վճարելու նպատակով: Կազմակերպա-տեխնիկական միջոցառումների պլանի մեջ մտցված աշխատանքների համար պարգևները նպատակահարմար է վճարել նույնպես նյութական խրախուսման ֆոնդից: Պետք է լուծվեն նաև ձեռնարկություններում գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման ու տնտեսական խթանման այլ հարցեր:

* * *

Գիտահետազոտական, նախագծման ու կոնստրուկտորական կազմակերպությունների աշխատողների խրախուսման կարգը տարբեր է արդյունաբերության մեջ սահմանվածից: Նոր տեխնիկայի մշակման ու արմատավորման առաջադրանքներ կատարող աշխատողների պարգևատրման միջոցները նախատեսվում են տարեկան նախահաշիվներում աշխատավարձի տարեկան ֆոնդի 4—8, իսկ քիմիական արդյունաբերության և քիմիական մեքենաշինության գիտահետազոտական, նախագծման ու կոնստրուկտորական կազմակերպությունների նախահաշիվներում՝ աշխատավարձի տարեկան ֆոնդի 6—10 տոկոսի չափով:

Սոցիալիստական հասարակարգի առավելությունների բանիմաց օգտագործումն արտադրության մեջ կապահովի գիտության ու տեխնիկայի բոլոր նվաճումների լայն արմատավորումը, հնարավորություն կընձեռի հաջողությամբ պաշտպանելու հանրային արտադրության արդյունավետության բարձրացման՝ կուսակցության մշակած կուրսը:

«Вопросы экономики», № 10, 1970 г.

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Միասնական տնտեսական պլանի մասին, *Երկեր, հ. 32, էջ 158—169*:

Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ. *Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի թեզիսները, «Հայաստան» հրատ., 1970*:

*Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ*— Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին: *Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1965 թվականի սեպտեմբերի 27-ին. «Հայաստան» հրատ., 1965*:

